ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ — ԹԻՒ 12



# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

ԳՐԵՑ
ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

ԳԱՀԻՐԷ
ՏՊ. ՆՈՐ - ԱՍՏՂ
1950

# ՑԱՆԿ

Զ.



Է.



Ը.



Թ.



Բ.



Ա.



Բ.



Գ.



Դ.



Էջ

Գ.



Ա.



Ա.



Բ.



Գ.



Դ.



Ե.



Զ.



Բ.



Գ.



Ա.

Էջ

## Զ.

-տինի արշաւանքին թափը, եւ տիրել վերստին 1229—30ին Խլաթի եւ Մուշի (1)։

Ճէլալէտտին դարձաւ Մուղանի դաշտը հոն ձմեռելու համար, բայց Թաթարներէն հալածուած Ամիթ գնաց եւ հոն մեռաւ 16 Օգոստոս 1231ին, (*Խաղբակեանք*. էջ 87—88)։

Մուշ եւ Խլաթ որոնք վերագրաւուած էին Էյուպեաններէն մնացին անոնց ձեռքը մինչեւ Մոնկոլներու գալը (2)։

Խլաթի իշխանութիւնը 1244ին ինկաւ, երբ Մուզաֆֆար Ղազիի ատեն եւ Մոնկոլները գրաւեցին բոլոր երկիրը։

# Դ.

# ՄՈՆԿՈԼԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1220—1380)

## Ա.

## ՀԱՅԱՍՏԱՆ ՄՈՆԿՈԼ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՏԱԿ

Մոնկոլները, որոնք Կեդրոնական Ասիոյ տափաստաններէն դէպի արեւմուտք, արեւելք, հարաւ եւ հիւսիս արշաւեցին եւ տակնուվրայ ըրին գրեթէ բոլոր ծանօթ աշխարհը, Հայաստանն ալ գրաւեցին (տես. վերը, էջ 70—75)։ Անոնք համեմատաբար կարճ ժամանակի մը մէջ կրցան հսկայ տէրութիւն մը հիմնել, որ կը պարունակէր իր մէջ Խիվայի մեծ իշխանութիւնը եւ Սիբերիայէն մինչեւ Հնդկաց Ովկիանոս տարածուող երկիրները, Աֆղանիստանը, Խուարէզմի մեծ պետութիւնը, Իրանը, Պաղտատի Աբբասեան խալիֆայութիւնը, Հայաստանը ու Փոքր Ասիան, Վրաստանը եւ Կովկասեան միւս երկիրները, Հարաւային եւ Կեդրոնական Ռուսիան մինչեւ Նովկորոտի հասարակապետութիւնը եւ մինչեւ Լեհաստան եւ Հունգարիա։ Այսպէս, այս վիթխարի տէրութիւնը, կը տիրէր ԺԳ. դարուն վերջերը եւ ԺԴ. դարուն սկիզբները գրեթէ բոլոր ծանօթ աշխարհի մեծագոյն մասին (հմտ. Գ. Ալբունեան *Թաթարների արշաւանքը*, ԱՐԱՐԱՏ 1912 էջ 663)։

Մոնկոլները ոչ միայն տիրեցին շատ մը երկիրներու, այլ անոնց մէջ բնակեցուցին տուն-կառքերով իրենց բանակներուն հետեւող ցեղակիցները եւ այսպէս շատ մը երկիրներու, ինչ այլոց Հայաստանի, բնակչութեան ցեղային բաղկացութիւնը այլափոխեցին։

Նոյնպէս Հայաստանի, Հայ, արաբ, քիւրտ, թուրք եւ թուրքմէն բազմաթիւ անկախ եւ կէս անկախ իշխանութիւններէն ոմանք ջնջուեցան եւ ուրիշներ իրենց ինքնավարութիւնը պահելով, մտան Մոնկոլ գերիշխանութեան տակ եւ երկիրը ենթարկուեցաւ Մոնկոլներու միահեծան տիրապետութեան։

Հազիւ մի քանի Հայ եւ Վրացի իշխանութիւններ պահեցին իրենց տանուտիրական իշխանութիւնները տուրք եւ զինուոր տալու պայմանով, մինչ ջնջուեցան — ինչպէս տեսնուեցաւ — մահմետական բոլոր իշխանութիւնները, ինչպէս, Գանձակի էմիրութիւնը (1236), Աթաբէկեանց իշխանութիւնը (1231), Կարնոյ Սուլտոքեան Սուլթանութիւնը (1242), Կարսի էմիրութիւնը (1239), Որթոքեանց Հասան Քէֆի (1231), Խարբերդի (1231) եւ Ամիթի (1227) իշխանութիւնները, որոնք կը գրաւուէին Մոնկոլներէն։ Նոյնպէս անոնք Հայաստանէն կը վանէին Գոնիայի Սելջուկ Ռումի Սուլթանները (1243) որոնք մինչեւ Երզնկա եւ Կարին առաջացած էին եւ Եգիպտոսի Էյուպեանները (1245)՝ որոնք թափանցած էին մինչեւ Խլաթ, Հայաստանի սիրտը։

Մասնաւորապէս Մահմետականներու դէմ ցոյց տրուած այս անողոք խստութիւնը կրնայ մեկնուիլ այն ատելութեամբ որ մահմետականներ ցոյց տուած են հանդէպ Թաթարներու, երբ անոնք տակաւին ո՛չ քրիստոնէութեան եւ ո՛չ ալ իսլամութեան յարած էին, եւ իրենց առաջին յարձակումներուն առարկայ կ'ընէին Ասիոյ իսլամ պետութիւնները։ Արդարեւ, Մոնկոլները Պարսկաստանի իսլամ իշխանութիւնները ոտնակոխ ընելէ վերջ, գրաւեցին Աբբասեան խալիֆայութեան մայրաքաղաքը՝ Պաղտատը եւ անողոք պայքարով մը մաքառեցան Եգիպտոսի Մեմլուքներուն դէմ, որոնք իսլամութեան պաշտպան կը կանգնէին։

Ընդհակառակը աւելի թոյլատու եղան հանդէպ քրիստոնէից, վասնզի աւելի համակիր էին ա-

(1) *Կիրակոս (էջ 133—135) Աշրաֆը կը յիշատակէ 1225ին «Սուլթան Եզնունեանց» տիտղոսով։*

(2) *Իպն Խալլիքան (էջ 347), Խլաթի պաշարումին Թուականը եւ Ռումի Սուլթանին հետ անոր գրաւումը կը դնէ 1229—1230 Թուականին, ինչ որ համաձայն չէ Սամուէլ Անեցիի (էջ 149), որուն համաձայն 1227 պէտք է ըլլայ։ Գարեգին Կաթողիկոս (Խաղբակեանք, էջ 92), 1228—9ին Ճէլալէտտինի կողմէ Խլաթը պաշարուած եւ գրաւուած ցոյց կու տայ, որով 1229—30ին ալ բնական կը դառնայ Աշրաֆ վերագրաւումը։*

նոնց շնորհիւ Նեստորական քարոզիչներու, որոնք իրենց մէջ մուտք գործած եւ նոյնիսկ թափանցած էին Մեծ Մոնկոլին արքունիքը։

Թերեւս քրիստոնեաները, իբր երկիրին բնիկները. սիրաշահելու հաշիւն ալ տեղ մը ունէր ասոր մէջ։

Մոնկոլները պաշտպանեցին նաեւ Կիլիկիոյ Հայոց թագաւորութիւնը, հասարակաց թշնամիին՝ Եգիպտոսի Մեմլուքներուն դէմ, որոնք Սուրիան նուաճելէ վերջ, կը ջանային տիրել նաեւ Կիլիկիոյ։

Մոնկոլները կարճ ժամանակի մը մէջ Հայաստանի մեծագոյն մասին տիրեցին եւ անկէ հեռացուցին Սելջուկները եւ անոնցմէ հովանաւորեալ իսլամ իշխանութիւնները, բայց մեր երկիրին մէջ չհաստատեցին Հայաստանի յատուկ վարչութիւն մը, իշխանի մը կամ կուսակալի մը հրամանին տակ, այլ երկար ատեն Հայաստանը կառավարեցին ուղղակի պետութեան կեդրոնէն, նախ Մեծ Մոնկոլին մայրաքաղաքէն Ղարաղրումէն (կամ Գարագորում) եւ ապա Իլխանեան խանութեան կեդրոնէն՝ Պաղտատէն, մինչեւ որ Մոնկոլ պետութիւնը քայքայուեցաւ։

## Ա. ՀԱՅԱՍՏԱՆ ՈՒՂՂԱԿԻ ՄԵԾ ՄՈՆԿՈԼԻՆ ԵՆԹԱԿԱՅ

## (1236—1251)

Մոնկոլները առաջին անգամ ընդհարուեցան Վրաց հետ, 1220ին, եւ կռուեցան Հայ զօրքերուն հետ, որոնք Իւանէի հրամանատարութեան տակ կը գտնուէին (*Խաղբակեանք Ա.* էջ 89)։ Յետոյ քաշուեցան։ 1231ին կրկին երեւցին, Ջալալէտտինը հալածելու պատրուակով եւ կործանեցին Գանձակը 1232—1233ին։ Իսկ կանոնաւոր արշաւանքը դէպի Հայաստան սկսաւ 1236ին (*նոյն*)։

Ժամանակակից յիշատակագիր մը 1236ին կը գրէ թէ *«յարեաւ ազգ մի գազանաբարոյ եւ անողորմ եւ եհեղ բազում արիւն... բնական անուն նորա խարա Թաթար... ոչ կարեմ պատմել զանցս չարչարանացս որ ետ ըմպել զբաժակն բարկութեան Այրարատեան գաւառին եւ Անւոյ եւս առաւել, զոր իմ է տեսեալ զանհնարին ողբն...»* (*Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի.* էջ 443)։

Մոնկոլները արդէն 1240ին ամբողջ երկրին տիրած էին (*Վարդան.* էջ 181. հմմտ. Գ. Ալթունեան *Արարատ.* 1912 էջ 683), առանց մեծ դժուարութեան, «*խուռ ժամանակս անվաստակ եւ առանց աշխատութեանց*» (*Վարդան.* էջ 109) «*զի ոչ ոք էր, որ ընդդէմ կայր նոցա կամ պատերազմէր ընդ նոսա* (*Կիրակոս.* էջ 136)։

Հայ իշխանները անպատրաստ էին եւ առանձին առանձին միայն իրենց անձին եւ ստացուածքին վրայ կը մտածէին։ Ուստի Մոնկոլներու դէմ ոչ մէկ զանգուածային դիմադրութիւն ցոյց կուտային հակառակ անոր որ ժողովուրդը տրամադիր էր կռուելու իր երկիրը պաշտպանելու համար։ Մասնաւորապէս պակսեցաւ կեդրոնական դէմք մը որ հզօր բազուկով մը դիմադրութիւնը կազմակերպէր։ Հետեւաբար Հայ իշխանները *«ոչ էին կարող զդէմ ունել անհնարին փքոյն եկելոյ, վասն այսորիկ անձնապահք եղեն»* (*Կիրակոս* էջ 126), եւ տեսնելով որ անոնք որ կը հնազանդէին, շնորհ կը գտնէին, իրենք ալ հպատակութիւն յայտնեցին, հարկ եւ զինուոր տալով։

Մոնկոլները զինուորական գրաւման ենթարկելով Հայաստանը, այս երկրին համար յատուկ քաղաքային (civil) վարչութիւն մը չհաստատեցին։ Երկիրը զինուորականապէս գրաւուած էին եւ կը կառավարէին զօրավարներով (1) որոնք ուղղակի կախում ունէին Գարաղրում նստող Մեծ Մոնկոլներէն մինչեւ 1251։

Եւ որովհետեւ Մոնկոլ տիրապետութեան գրեթէ միակ նպատակակէտը հարկահանութիւնն էր, նման արաբականին, անոնք ալ Արաբներուն պէս հանդուրժեցին իրենց հպատակութիւն յայտնող իշխաններու գոյութեան, իրենց գերիշխանութեան տակ, եւ նոյնիսկ անոնց իրարու հետ գործակցութեան աչք գոցեցին։

Եւ ինչպէս որ Արաբներու ատեն Ոստիկանին քով Հայ պատրիկ մը կամ իշխանաց իշխան մը կար, Մոնկոլներու ատեն ալ Հայ պատրիկ մը (առանց այս կոչումին) գոյութիւն ունէր, իբր միջնորդ կամ ներկայացուցիչ միւս իշխաններուն։

Այսպէս, Մոնկոլ գրոհին սկիզբը Զաքարէ ամիր սպասալարին (✝ 1212) եղբայրը՝ Իւանէ գլխաւորն էր Հայ իշխաններուն։

Երբ ան մեռաւ 1227ին, իրեն յաջորդեց Աւագ իշխան (✝ 1250) որ ինչպէս պիտի տեսնուի, Վրաստանի շահերուն առանց դաւաճանելու, կրցաւ շահիլ Մոնկոլներուն վստահութիւնը եւ Մոնկոլ Մեծ խաներուն Հայաստանի եւ Վրաստանի ներկայացուցիչին դերը կատարեց եւ կրցաւ պաշտպանել Վրաստանի եւ Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող իշխանութիւններու ինքնավարութիւնը, ինքն կատարելով առանց տիտղոսի իշխանապետի դերը, Մոնկոլ զօրավարներու քով, Հայաստանի եւ Վրաստանի վերաբերեալ հարցերու համար մինչեւ Ղարաղրում ալ երթալով երբեմն։

Իսկ բուն Մոնկոլ իշխանութիւնը կը խորհրդանշէր Մոնկոլ զօրավարը, որուն քաղաքային օժանդակն էր հարկահանը։ Այս ամենազդեցիկ պաշտօնատարը Մոնկոլ տիրապետութեան համար ամենակենսական գործ մը ունէր։ Արաբ տիրապետութեան շրջանին Դուինի նստող ոստիկանին պէս, որուն գործն էր Հայաստանի հարկը հաւաքել եւ Դամասկոս կամ Պաղտատ ղրկել, Մոնկոլ հարկահանն ալ Հայաստանի հարկը կը հաւաքէր եւ Ղարաղրում կը ղրկէր։

Ասոր համար Վարդան եւ Կիրակոս ժամանակակից պատմագիրները Մոնկոլ հարկահանները *Ոստիկան* կը կոչեն։

Առաջին յիշուած հարկահանն էր Գարապուղան որ 1246—1247ին, (2) Հայաստան, Վրաստան եւ Աղուա-

(1) *Այսպէս Հայաստանը նուաճած եւ կառավարած է 1236էն 1242 Չարմաղան, որուն մահէն ետք եկած է Բաչու* (1242—1255) *եւ Հուլաղու* (1255—1259)։

(2) *Ըստ Ջամչեանի* (Գ. 213) 1239*ին, Թաթարները Անիի եւ Կարսի գրաւումէն վերջ, երբ Մուղան քաշուեցան Գարապուղան կուսակալ կամ իշխան (իմա հարկահան) դրին։*

նից աշխարհ ղրկուած էր Մեծ Մոնկոլ Քիուք խա-նէն (1242—1248):

Գարապուղայի դաժան եւ անտանելի հարկա-հանութիւնը պատճառ եղաւ որ հազիւ թէ Մոնկոլ տիրապետութիւնը հաստատուած Հայաստանի մէջ, 1248—1249ին խմորուի ապստամբութեան գաղափարը, Հայաստանի եւ Վրաստանի աւատական իշ-խաններու մէջ, եւ Հայ ու Վրացի իշխաններ իրենց զօրքերով հաւաքուին Թիֆլիզ՝ Վրաց Դաւիթ թա-գաւորին քով։

Արդէն բաւական թուով զինուած պատ-րաստ ոյժեր հաւաքուած էին եւ որոշած ապստամբիլ, երբ Բուղա, որ նախորոք տեղեկութիւն ստացած էր, ձերբակալեց հաւաքուած Հայ եւ Վրացի իշխանները եւ անգլուխ ձգեց ապստամբները:

Հակառակ ասոր սակայն Հայ եւ Վրացի զինուած ուժեր Թիֆլիզի եւ Լոռիի շրջակայքը, կարգ մը վայրեր, ըմբոստացան, մասնակցութեամբ Հայ եւ Վրացի գիւղացիութեան, *(Հայ ժողովուրդի պատ-մութիւն* էջ 211*)*:

Մոնկոլները մեծ խստութեամբ այս ըմբոս-տութիւնը ընկճեցին, եւ աւելի անողոք եղան:

## Բ․ ՀԱՅԱՍՏԱՆ՝ ՄԱՍ ԻԼԽԱՆԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

## (1251—1335)

1251ին Մոնկոլ պետութիւնը ստորաբաժանուե-ցաւ մասերու: Այս մասերէն մէկն էր Պարսկաստանի ճիւղը, որուն առաջին վեհապետն եղաւ Մանգոյ կամ Մանկու խան (1251—1259), որ պետութեան ամէն մասերուն մէջ աշխարհագիր կատարելու եւ հարկերու գանձումը կարգաւորելու համար 1254ին Արղուն անուն խելացի եւ ճարպիկ մարդ մը (*Կիրակոս* էջ 161 եւ 162. եւ վերը, էջ 72) ղրկեց Հայաստան, Վրաստան եւ Աղուանից աշխարհ, երբ Հայաստանի զինուորական կառավարիչն էր, իր կողմէ ղրկուած Բաչու եւ Գազան հաստատուած Բաթուի բանակները Հայաստանէն անցնելով մինչեւ Միջագետք եւ Դա-մասկոս առաջացած էին: Այսպէս, Մանգոյ եւ Բա-թու, փոխադարձ համաձայնութեամբ անուանեցին Ար-ղունը որ իրեն օգնական ունէր Բաթուի կողմէ ղըր-կուած Թուրա աղան։ Անոնք իրենց պաշտօնը կատա-րեցին խստութեամբ, ինչպէս կը հաստատեն Կիրակոս Գանձակեցին *(*էջ 209*)* եւ Վարդան վարդապետ *(*էջ 148*)* պատմիչները (տես. վերը, էջ 73*)*:

Արղունի առաջին գործը եղաւ մարդահամա-րը զոր կատարելու համար շրջեցաւ երկիրին ամէն կողմերը բնակչութեան, մանաւորապէս աշխատող ձեռքերու, ինչպէս անասուններու թիւը ճշդելու եւ հողային ստացուածքները արձանագրելու եւ ապա տուրքերու նոր սակեր սահմանելու համար:

Չամչեան *(*Գ. 221*)* եւ Գ. Ալթունեան *(Արա-րատ.* 1912 էջ 813*)*, կ՛ըսեն թէ Արղուն գործած է Հայաստանի մէջ օգնական ունենալով Գարապուղան, որ հաւանօրէն նախապէս իր հարկահան պաշտօնա-վարող անձն է։

Համաձայն Արղունի հաստատած նոր դրու-թեան, 15էն 60 տարեկան ամէն այր մարդ պէտք էր վճարէր գլխահարկ դրամով, նոյնպէս արդիւնա-բերութեան հարկ տալ՝ բերքով։

Ասով չէր վերջանար հարկերու ցուցակը:

Մոնկոլները կ՛ստիպէին որ իւրաքանչիւր գիւղէն մէկէն մինչեւ երեք հոգի տուէր ճամբաներու վրայ աշխատելու: Մոնկոլ պաշտօնեաները պէտք էր կերակրել եւ անոնց պէտքերը հոգալ: Տուրքեր դրուած էին նաեւ արհեստաւորներու եւ վաճառականներու վրայ, ինչպէս նաեւ ձկնորսութեան, հանքերու, արօ-տավայրերու եւ անտառներու վրայ: Տուրքէ ազատ էին միայն եկեղեցիները եւ կղերականները։

Նուաճուած Հայաստանի բոլոր գաւառները եւ քաղաքները ունէին կառավարիչներ եւ հարկա-հաններ, որոնց գլխաւոր պարտականութիւնն էր տուրք հաւաքել եւ բնակչութիւնը հնազանդութեան մէջ պահել:

Մոնկոլ պաշտօնատարները կը գործէին կա-մայական կերպով, դաժան ճնշումներ եւ հալածանքներ գործադրելով եւ չարաչար կեղեքելով ժողովուրդը:

Աւատապետները եւ ազնուականներն ալ զերծ չէին այս հարստահարութիւններէն, վասնզի անոնցմէ ալ կը պահանջէին ոսկի, արծաթ, թանկագին քեհեզ-ներ եւ կը բռնագրաւէին անոնց ձիերը եւ կը հարկա-դրէին զինուորական ծառայութեան *(Հայ ժողովուր-դի պատմութիւն* էջ 210—1):

Ասկէ զատ հողային հարստութենէն կը զըր-կէին կալուածատէրերը, իբր վարձատրութիւն Մոնկոլ պաշտօնատարներու եւ զինուորականներու, տալով հողի ընդարձակ տարածութիւններ, իբրեւ կալուած կամ սեփականութիւն: Այս հողերը կը կոչուէին *ինջու*: ԺԳ. դարուն վերջերը *ինջու*ները վերածուե-ցան ժառանգական հողատիրութիւններու, որոնց մէջ ապրող գիւղացիութիւնը պարզապէս հողին կապ-ուած եւ հողատէրերէն կախում ունեցող մշակներ դարձան:

Մոնկոլները իրենց հաստատած տուրքերով, բնիկ հողատէրերը ճնշելով եւ հալածելով, հետզհե-տէ ոչնչացուցին, եւ գաղթելու հարկադրեցին հայ հնօրեայ ազնուականները կամ նախարարական տուն-ներու անդամները, որոնք գրեթէ բոլորովին անհետա-ցան: Մոնկոլներու հարկերը այնքան ծանր եւ զա-նոնք գանձելու եղանակը այնքան դաժան էր որ Կի-լիկիոյ Հեթում թագաւորը Հայաստանի Հայերուն վի-ճակը բարւոքելու, ինչպէս նաեւ Թաթարնե-րու պաշտպանութիւնը ապահովելու համար իր երկ-րին, 1246ին, իր եղբայրը՝ Սմբատ Գունդստաբլը, ղըր-կեց Քիուք խանին եւ 1253—1256ի երկար ուղե-ւորութեամբ մը ինքն գնաց Մոնկոլ խանին մինչեւ Փեքին, եւ կրցաւ հարկերու թեթեւացում ձեռք բերել:

Բայց Արղուն վերստին ծանրացուց հարկերը այնքան որ բողոքներ եղան: Նաեւ իր քաղաքական թշնամիներէն, որոնք զինք կ՛ուզէին հեռացնել պաշ-տօնէ: Արղուն մեծ խանին արքունիքը կոչուեցաւ բացատրութիւն տալու համար եւ բանտարկուեցաւ *(*Չամ. Գ. 249*)*։

Մանկու խան, 1255ին, իր եղբայրը Հուլա-ղուն անուանեց *«Արեւմտից խան»* եւ իրեն երկրորդ-

անոր պաշտօն տալով նուաճել մինչեւ Միջերկրական տարածուող հողերը։

Այսպէս, Հայաստան, Պարսկաստանի տիրող Մոնկոլ հարստութեան ստորադրեալ իշխանութեան մը մաս կազմեց, առանց մասնաւոր վարչութեան։

Հուլաղուն տիրեց Իրանի, Միջագետքի, Հայաստանի, Աղուանից երկրին, ու Փայտակարանի, ինչպէս նաեւ Փոքր Ասիոյ արեւելեան մասերուն։

Իր պետութիւնը կոչուեցաւ *Արեւմտեան* կամ *Հուլաղուի Իլղանութիւն* կամ *Իլղանեան Մոնկոլ խանութիւն*, որ շարունակեց իր գոյութիւնը մինչեւ ԺԴ. դարուն կէսերը։

Այս նոր պետութեան մայրաքաղաքը եղաւ նախ Դաւրէժ եւ ապա Պաղտատ։

Հուլաղուի իշխանութեան ժամանակամիջոցին, Հայաստան մնալով հանդերձ ուղղակի կապուած Իլխանեան իշխանութեան կեդրոնին, կարճ ատեն մը ունեցաւ փոխարքայ մը։

Հուլաղու, որուն առաջին գործերէն մէկը եղաւ ամբողջ Իրանը եւ Իրաքը սարսափի մէջ պահող Իսմայիլեանց կեդրոնը՝ Ալամուտը կործանել, հոն գացած ատեն, 1256ին, Հայաստանի եւ Աղուանից աշխարհին համար փոխանորդ նշանակեց իր երեւելի իշխաններէն Ղուլ խանը, որ հպարտ եւ անողորմ մարդ մըն էր։

Իր զօրքը աւելի անագորոյն քան ինքն, տարածուեցան գիւղերն ու վանքերը, եւ չարաչար կեղեքեցին անտէր ժողովուրդը, կողոպտեցին անոնց ինչքերը եւ ընդդիմացողները զանակոծեցին։ Նոյնպէս կրօնական հալածանք ալ գործադրեցին, խաչերը խորտակելով եւ այրելով (*Ջամ.* Գ. էջ 254)։

Ղուլ խանի (1256 †) յաջորդեց, իր որդին *Միզան*, որ հազիւ պաշտօնի ձեռնարկած էր, երբ Հուլաղու դարձաւ Մուղան, եւ ինքն ձեռք առաւ Հայաստանի կառավարութիւնը եւ մեղմութեամբ վարուեցաւ Հայոց եւ Վրաց հետ ու Հայ եւ Վրացի զօրքին եւ անոնց իշխաններու հետ դէպի Միջագետք եւ Պաղտատ արշաւեց, Հայաստանի մէջ ձգելով իբր վերակացու խաղաղասէր մարդիկ։

Ըստ Օրբէլեանի (*էջ 159—160*), այդ միջոցին (*1256*) Հայաստան կը դառնար կրկին Արղունը, որ ինչպէս տեսնուեցաւ բանտարկուած էր Մեծ Մոնկոլ Մանգոյ խանին քով, ուր էր նաեւ Սմբատ Օրբէլեան։ Ասիկա ի նպաստ Արղունի վկայութիւն տուաւ եւ փրկեց անոր կեանքը, եւ հետը առնելով եկաւ Հայաստան եւ Վրաստան (*Ջամ. Գ.* 250)։

Արղուն, շնորհապարտ, թեթեւցուց հարկերը եւ եկեղեցական կալուածները ազատ կացոյց տուրքէ սակայն դարձեալ գործադրեց կեղեքումներ, հարստահարութիւններ եւ ոճիրներ, մանաւանդ անոնց դէմ որոնք իրեն հակառակորդ էին կամ Մանգոյ խանին առջեւ զինքն ամբաստանած կամ իր մասին դժգոհութիւն յայտնած էին։

Հաւանօրէն աւելի ազատօրէն գործել սկսաւ 1259էն վերջ, երբ Պարսկաստանի գահը բարձրացաւ, Հուլաղու եւ Հայաստանէն հեռացաւ։

Հուլաղու, ամբողջովին նուաճեց Հայաստանը, տակաւին իսլամական տիրապետութեան տակ մնացած Մուֆարղինը, 1259ին գրաւել հրամայելով իր կրտսեր որդւոյն՝ Իսմուտին։ Իսլամութեան այս վերջին պատուարը երկար ատեն տոկաց Մոնկոլ յարձակումներուն, շնորհիւ իր ամուր պարիսպներուն եւ բնակիչներուն արիութեան, բայց վերջապէս 1260ին սովէն նեղուած ստիպուեցաւ անձնատուր ըլլալ Մոնկոլներուն որոնք անխնայ վարուեցան այս քաղաքին հետ. (Գ. Ալթունեան. *Արարատ*. 1912 էջ 816*)*։

Հայաստանի ամբողջական գրաւումէն վերջ, հարկահանութիւնները կը շարունակուէին խստութեամբ։

Հարկերը այնքան ծանր էին, որ ժողովուրդը չէր կրնար վճարել։ Այդ պարագային տուրքին տեղ կ'առնէին հարկատուին զաւակները, աղջիկ կամ մանչ։

Ազատելու համար գիւղացիք յաճախ կ'ապաստանէին լեռները եւ անտառները, սակայն երբ բռնուէին սոսկալի տանջանքներու կ'ենթարկուէին եւ նոյնիսկ կ'սպաննուէին։

Ժողովուրդը չէր կրնար տոկալ եւ մեծ զայրոյթ կար։ Այս պատճառով Հայաստանի եւ Վրաստանի մէջ կը պատահէին զինեալ ըմբոստութիւններու դէպքեր, որոնք 1261ին վերածուեցան ընդհանուր ապստամբութեան, որուն կեդրոնը դարձեալ արեւելեան Վրաստանն էր։

Վրաստանի Դաւիթ թագաւորը ուզեց օգտագործել ժողովուրդին դժգոհութիւնը եւ ապստամբեցաւ Հուլաղուի դէմ եւ ամրացաւ անառիկ վայրեր։

Վրաստանէն եւ Հայաստանէն Դաւիթի մօտ հաւաքուեցան մեծ թուով զինուած խումբեր եւ զանազան շրջաններու հողատէրեր, եւ ոտքի հանեցին բնակչութիւնը։

Այս ապստամբութեան մասնակցեցան Շիրակի, Լոռիի, Սեւանայ եւ մասնաւորապէս Խաչէնի շրջաններու բնակիչները։ Ապստամբները ամրացան լեռնային վայրերու մէջ եւ յաճախակի յարձակումներ գործեցին Մոնկոլ զօրքերուն վրայ եւ մեծ վնաս պատճառեցին։

Բայց որովհետեւ ապստամբները կը գործէին անջատ անջատ, առանց համակարգուած եւ միահամուռ ոյժերու, չկրցան վանել Մոնկոլ նուաճողները։

Մոնկոլները խիստ դաժան եղանակով մը ճնշեցին այս ըմբոստութիւնը, ընդհանուր սարսափի ենթարկելով բնակչութիւնը (*Հայ ժողովրդի պատմ.* 1943. Երեւան, էջ 212—213*)*։

Ապստամբութիւնը ընկճելէ վերջ Հուլաղուն ա՛լ աւելի խստութեամբ վարուեցաւ եւ մահապատիժի ենթարկեց ապստամբութեան մասնակցողները, որոնց մէջ էին Շիրակի եւ Լոռիի՝ Զաքարէ եւ Խաչէնի՝ Հասան Ջալալ իշխանները։

Այս ապստամբութեան նուաճումէն վերջ, Հայաստանի մէջ նոր փորձեր չկատարուեցան ապստամբութեան եւ կատարեալ համակերպութեան շրջան մը սկսաւ։

Արղուն, իբր հարկահան, մեծ հեղինակութեամբ իր պաշտօնը շարունակեց Հուլաղուի (1259—1265) եւ անոր որդւոյն Ապաղայի (1265—1283) իշ-

խանութիւններու ատեն, (1) մնալով իր պաշտօնին վրայ, մինչեւ իր մահը՝ 1275 (Գ. Ալբունեան. *Արարատ.* 1912 էջ 1123):

Արղունի վարչութեան տակ Հայաստան ենթարկուեցաւ տնտեսական քայքայումի, ինչ որ ընդհանուր երեւոյթ մըն էր Իլխանեան պետութեան մէջ, բայց գոնէ խաղաղ մնաց եւ արիւնահեղութիւններ չպատահեցան մօտաւորապէս կէս դար:

Հուղալու խան եւ իր որդին Ապաղա խան թէեւ իրենց պաշտօնեաներով կը կեղեքէին Հայաստանը, բայց աւելի կամ նուազ չափով քրիստոնեաներուն բարեկամ էին, իրենց քրիստոնեայ կիներուն կամ մայրերուն ազդեցութեան տակ (տես. վերը էջ 73), ուստի կրօնական հալածանքներ չգործադրեցին եւ ատոր համար Հայերը երախտապարտ մնացին։

Ժամանակակից գրիչներ, ձեռագրաց յիշատակարաններու մէջ, ինչպէս 1273ին Որմի մայրաքաղաքը գրուած Աւետարանի մը գրիչը՝ Ասոմ քհ. (տես. *Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Վասպուրականի*, էջ 97) աղօթքներ ունի Աստուծոյ «*զի տացէ թագաւորիս մերոյ Ապաղայ ղանիս՝ զաւրութիւն եւ յաղթութիւն սմա իվերա թշնամեաց Խաչին, սուրբ թշնամեաց սորա մացեն խփրտս իւրեանց եւ մի կարասցեն կեալ ընդդէմ սորայ հակառակորդք սորայ, այլ եղեցին թշնամիք սորայ կոխան ամենայն ազգաց քրիստոնէից*»։

Մոնկոլ վայրագութիւնները որոշ չափով մը մեղմելու նպաստած է նաեւ իմաստութիւնը Կիլիկիոյ Հեթում թագաւորին (1219—1270) որ իրատես քաղաքականութեամբ Բաչու զօրավարին հետ դաշինք կնքեց (1243) եւ յանձն առաւ իր զօրքերով օգնել Թաթարներուն, պայմանով որ անոնք պաշտպանեն Կիլիկիոյ Հայոց թագաւորութիւնը:

Հեթում իբր զինակից Հուղալու խանի, անոր հետ 1259ին գործակցեցաւ, երբ ան դէպի հարաւ կ'արշաւէր:

Որչափ ատեն որ Մոնկոլները բարեկամ էին քրիստոնէից եւ պաշտպան՝ Կիլիկիոյ Հայ թագաւորութեան, քիչ շատ Հայերը լեզու մը գտած էին Մոնկոլներուն հետ ապրելու, սակայն դժբախտաբար մահմետականութիւնը մեծ յառաջդիմութիւններ կ'ընէր Թաթարներու մէջ եւ կրօնական ատելութեամբ կը լեցնէր զանոնք: Հետեւաբար Ղազան Մահմուտ (1289—1304) երբ վերջապէս Իսլամութիւնը ընդունեց 1303ին, Հայերու վիճակը շատ վատթարացաւ:

Մինչեւ այն ատեն Մոնկոլները քիչ շատ գոհացում տուած էին Հայոց եւ լամծ՝ անոնց բողոքները, թէեւ անողոք եղած՝ մասնաւորապէս հարկապահանջութեան մէջ որ իրենց քաղաքային վարչութեան հիմն էր:

Իլխանեանները, նոր կարգեր չէին հաստատած Հայաստանի մէջ, այլ հին դրութեամբ կը կառավարէին, Հայ իշխանապետ մըն ալ պահելով իբր ներկայացուցիչ: Անոնց առաջինը եղաւ Աւագ (✝1250), որ անզաւակ ըլլալով իրեն յաջորդեց Աթաբէկ Սադուն (✝1248), որ Աւագի պէս գրաւած էր Մոնկոլներու վստահութիւնը. (*Խաղբակեանք Ա.* էջ 6 եւ 97) եւ մօտաւորապէս 25 տարի (1275—1275) Հայաստանը կառավարեց իբր աթաբէկ (*Նոյն. Բ.* 38):

Այս միջոցներուն է որ Զաքարեանց եւ Օրբէլեանց հին հակառակութիւնը նորէն կ'արծարծուէր եւ Օրբէլեանք կը յաջողէին Մոնկոլ խաներու սիրելի դառնալ եւ իրենք գրաւել այն տեղը զոր Զաքարեանք ունէին Հայաստանի մէջ: Այսպէս, Սմբատ Օրբէլեան պիտի ստանար ուղղակի թաթար գերիշխանութեան տակ աւելի լայն ազատութիւններ եւ իր եղբայրը Տարսայիճ՝ Սիւնեաց նահանգին մէջ «արքայաշուք» իշխանութիւն մը, որ իր հովանին պիտի տարածէր միւս Հայ իշխանութիւններուն վրայ: Դժբախտաբար այս իշխանութիւնը կարճ պիտի տեւէր, վասնզի Մոնկոլ պետութիւնը պիտի քայքայուէր (տես. վերը, էջ 73—75):

Ինչպէս, բոլոր աշխարհակալ պետութիւններու նախատագրուած է, մանաւանդ երբ անոնք յանկարծական զարգացմամբ բազմաթիւ երկիրներ գրաւած են, Մոնկոլ մեծ պետութիւնն ալ չկրցաւ ամբողջութիւն մը կազմել, եւ շուտով սկսաւ քայքայուիլ: Ապստամբութիւններ եւ խռովութիւններ պակաս չեղան այս ընդարձակածաւալ պետութեան մէջ, ուր ոյժը կը թագաւորէր եւ բռնութիւնն ու կեղեքումը պետական վարչութեան գլխաւոր նպատակն էր:

Երբ Հայերը Հայաստանի մէջ ուժասպառ համակերպած էին եւ չէին խորհեր ըմբոստանալու վրայ, մահմետականները, որոնք կորսնցուցած էին, իրենց անկախ իշխանութիւնները, զանոնք վերականգնելու համար առիթի կ'սպասէին, քանի որ հոն՝ երկիրին մէջ էին: Մասնաւորապէս ծայրագաւառները, որոնք դրացի ունէին իսլամ իշխանութիւններ, այս տեսակ խմորումներու յարմար գետին կը ներկայացնէին:

Այսպէս, 1275—76ին, Կապադովկիոյ եւ Իկոնիոյ բնակիչները Եգիպտոսի Մեմլուքներուն հետ համաձայնելով ապստամբութեան մը կը պատրաստուէին, երբ Կիլիկիոյ Լեւոն թագաւոր (1270—1289) անոնց թղթակցութիւնը բռնելով յայտնեց Թաթարներուն: Դաւադիրները չարաչար պատժուեցան (Չամ. Գ. 279): Որովհետեւ Լեւոն 1276ին Ապաղայի տուած այցելութենէն դարձին Կիլիկիոյ վրայ յարձակող Սելջուկներուն յաղթած էր (1277), Ապաղա առաջարկեց Հայոց թագաւորին իրեն թողուլ Կապադովկիոյ եւ Միջագետքի այն մասերը, որոնց Թաթարները կը տիրէին, պայմանով, որ անոնց հարկը իրեն ղրկէ: Լեւոն այս առաջարկը մերժեց, անշուշտ իր գործը չդժուարացնելու եւ մշտատեւ կերպով պատերազմելու հարկադրուած չըլլալու համար եւ խորհուրդ տուաւ այդ շրջաններու վրայ կարգել կուսակալներ որպէսզի դիւրաւ կառավարուին (*Հեթում* էջ 54. Չամ. Գ. 279):

Ապաղա՝ Լեւոնի խորհուրդին անսաց եւ կառավարիչներ նշանակեց այդ շրջաններուն, սակայն

(1) *Աւետարանի մը յիշատակարանին մէջ՝ գրիչը Ռոմանոս Վրդ. կ'ըսէ թէ գրուած է 1276ին* «ի տիեզերակալութեան ղուպիլա ղանին եւ յոստաննիութեան (*կարդա՝ յոստիկանութեան*) Ապաղա Ղանին որդոյ եղբա(ւ)ր նորին» (Ցուցակ Վենետիկի ձեռագրաց Ա, 425)։ *Ասկէ որոշ կը հասկցուի թէ Հուլաղու եւ Ապաղա Մեծ Մոնկոլին ստորադրեալ էին։*

անիկա իրական դարման մը չեղաւ, քանի որ անտանելի հարկերու տակ կը ճնշուէր երկիրը:

Այնպէս որ 1278ին վերստին ապստամբեցան Կապադովկիոյ բնակիչները եւ ջարդեցին Թաթարները եւ առաջացան մինչեւ Եկեղեաց գաւառը եւ Երզնկան գրաւեցին եւ քաղաքին Շահապ նշանակուած Յովհաննէս իշխանը եւ պարոնը սպաննեցին իր հօրը Եկեղեաց գաւառին հոգեւոր պետին՝ Սարգիս Արքեպիսկոպոսի հետ:

Սարգիս Արքեպիսկոպոս «Մարհասիա» (1266—1279) (Տաշեան. *Մայր-ցուցակ* էջ 552. *Բիւզանդիոն.* Թ. 1446., Ֆ. Մուրատ. *Յայտ. Յովհ.* էջ յխա. Գ. Խալաթեան. *Մնաց.* էջ Գ.Ե. ՀԱ. 1924. էջ 514. *Ազգապատում.* էջ 1798, Աճառեան. *Հայ Անձնանունների Բառարան.* Գ. էջ 594) եւ իր որդին «պարոն» Յովհաննէս նահատակուեցան 38 ուրիշ անձերու հետ բոլորովին անպարտ:

Ապաղա ապստամբներուն դէմ ղրկեց իր եղբայրը՝ Արու Մանգստէմուրը (կամ Մանգտան) եւ զօրավար մը՝ Քրնքըշ անունով: Ասոնք գրաւեցին Երզընկան 1279ին: Ապաղա ինքն ալ եկաւ Երզնկա (Ձամ. Գ. 280). եւ Սարգիս Եպս.ի թոռները (1) պատուեց (*նոյն*):

Հետեւաբար, Հայաստանի մէջ Մոնկոլ միահեծան տիրապետութիւնը շարունակուեցաւ մինչեւ ԺԴ. դարուն վերջերը, երբ քայքայման նշաններ երեւան գալ սկսան Մոնկոլ կայսրութեան մէջ, կուսակալներու, ցոյց տուած անջատողական ձգտումներով:

1292ին պահ մը, Մոնկոլ պետութեան մէջ անդորրութիւնը խանգարուեցաւ Քեղաթուի (Գանճխաթու կամ Ռէզայիտ, Էրնշի-Թուրնշի ալ կոչուած, (տես. վերը, էջ 74), Բաթուի եւ Ղազան խանի կուսակիցներու միջեւ մղուած պայքարներով, բայց Հայաստան մնաց խաղաղ այդ պառակտումներու ժամանակ (2):

Ղազան Մահմուտ խանի (1295—1304) գահակալութեամբ խաղաղեցաւ երկիրը, եւ Հայաստան մնաց խաղաղ մինչեւ Ղազանի մահը, ժողովուրդը երախտապարտ ձգելով, վասնզի երբ 1304ին *«ինքնակալն Խազանն վճարեցաւ իկենացս... սուգ մեծ եհաս ամենայն տանս արեւելից, մանաւանդ նեղել ազգացս քրիստոնէից, որոյ յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի եւ ընդ սրբոց թագաւորացն զահակալեսցի, վասնզի խորա ժամանակս խաղաղացաւ երկիր իբրեւ զդրախտ Աստուծոյ»*: (Յիշ. ձեռ. Էջմիածին թ. 3722. 353 Բ., *Խաչիկեան.* Ա. էջ 187): (3).

Այս տողերը շատ պերճախօս են եւ ցոյց կուտան թէ Ղազան խան որքան զբաղած էր իր նպատակներուն բարօրութեամբ: Ան կասեցնելու համար պետութեան տնտեսական եւ նիւթական նիւծումը, տուրքերու ծանրութեան տակ, կը սահմանէ նոր օրէնքներ, որոնք նպատակ ունէին տուրքերու գանձման եղանակը կանոնաւորել, հարկերու հաստատուն սակ մը սահմանել եւ հարկահաւաքներու կամայականութիւններուն վերջ տալ: Ղազան խան հաստատեց չափերու եւ կշիռներու միօրինակութիւնը ամբողջ Իլխանեան պետութեան մէջ, եւ քաջալերեց առեւտուրն ու վաճառականութիւնը եւ գիւղատնտեսութեան զարգացումը: Սակայն այս մասնակի բարեկարգութիւններով կարելի չէր փրկել պետութիւնը, որուն անկումը շարունակեց, վասնզի միայն վեհապետին բարեացակամութիւնը բաւական չէր:

Պաշտօնեաները, զօրավար կամ հարկահան ըստ սովորութեան կը կեղեքէին եւ կը կողոպտէին:

Նոյն Ղազան խանի ժամանակ Հայաստանի մէջ կը պաշտօնավարէր *Նէվրուզ* անուն անգութ զօրավար մը, որ շատ անգթութեամբ կը վարուէր Հայոց հետ, վասնզի սաստիկ կ'ատէր քրիստոնեաները: Նէվրուզ՝ Ղազանի հակառակորդ Պայտունը վանելու օգնած ըլլալով, սանձարձակ կը գործէր եւ կը քանդէր եկեղեցիները եւ կը հալածէր քրիստոնեաները:

Հեթում Բ. (1289—1297), որ նոր խանին՝ Ղազանի հնազանդութիւն յայտնած եւ պատուուած էր անկէ, Ստեփաննոս Եպս.ի հետ յաջողեցաւ պաշտօնանկ ընել տալ Նէվրուզը, որուն տեղ Հայաստան ղրկեց Ղազան իր քեռայրը Խութլուշահ զօրավարը *«Օգնական Քրիստոնէից» (Օրբէլ. Բ.*228. *Ազգապատում* էջ 1727—8):

Ձեռագիրի մը յիշատակարանը (տես. *Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի* էջ 119—120), Սուրբ կը կոչէ Հեթումը *«որում ոչ ոք համեմատ իթագաւորս, բայց Քրիստոս միայն»*, վասնզի անիկա 1296-ին եկած էր *«ի Կիլիկիոյ յարեւելեայս, առ ազգն նետողաց, եւ հանդիպեալ Ղազանին, որ էր այր ժանդ եւ ունէր արբանեակք չարք Իսմայելականք, վասնզի Տէր էր ընդ Հեթում, յոյժ սիրեցին զնա եւ պատուեցին՝ կատաղի ժողովուրդքն: Եւ վասնզի սպանեալ էր Ղազանն զՊայիտուն, վասն սպանման հաւրեղբաւրն իւրոյ, եւ վասնզի քրիստոնեայ էր Պայիտուն, ետուն վճիռ քակել զեկեղեցիս Քրիստոսի եւ յանորդի* (հարնորդի) *ազգն Իսմայելի յարեաւ իվերա...: Քակէին զեկեղեցիսն եւ երկուս այլեւս զաղաւթանոցսն հրէից եւ հեթանոսաց: Եւ յորժամ սկսան, իբազում տեղիս քակեցին զեկեղեցիսն եւ ըմբռնէին զհաւատացեալս յամենայն ազգաց, վասն որոյ զայսպիսի անցս կրեցին, զի Տէր պատերազմէր ընդ մեր, եւ նոքա յանկարծաւրէն յարեան իվերայ միմեանց, հայր զորդի եւ եղբայր զեղբայր՝ սրախողխող եւ դիաթաւալ արարեալ եղեն անթիւք եւ եղիցին եւ յառաջակայն բարի եղիցի: Ապա իմէջ անցեալ արի եւ արթուն*

(1) *Ասոնցմէ մին էր Ներսէս Եպս. որ* 1302*ին առաջնորդ էր Եկեղեաց (տես.* ՀԱ. 1924 *էջ* 315).

(2) *Սուրմալու գրուած ձեռագրի մը յիշատակարանը կ'ակնարկէ այն խառնակութեանց գրելով թէ* «եղեւ գրութիւն սորա իթվականութեանս Հայոց ՉԽԵ. (=1296) յաւուրս բռնակալութեան ազգին նետողական, յորում ամի թագաւորք երեք փոխեցին յաթոռն իւրեանց, Քեղաթուն, Պայիտուն եւ Ղազանն, եւ յաւարտի աւետարանիս, էր սաստկացեալ խռովութիւն իմիջի իւրեանց, զիրեարս զիշատէին, եւ վերջ նորա յայտնի է Աստուծոյ միայն»: (Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Վասպուրականի, էջ 119):

(3) «Թագաւոր իմաստուն եւ բարեխոհ եւ անկելոց կանգնող» *որակուած է (տես.* Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի էջ 142.):

*Ասոր յաջորդին՝ Ալաճաթուի* (1304—1317) *համար, որ ձեռագիրը Աղչատու կը կոչէ նոյն գովեստը ունի նոյն բառերով Տուրուբերան, Բերդակ գրուած ձեռագիր մը* (Նոյն *էջ* 149):

*թագաւորն Հայոց Հեթում համաւզեաց ի խաղաղութիւն զաղմկեալ աշխարհս ամենայն, քրիստոսաբար ազատեաց զեկեղեցիս եւ զամենայն ուխտն, զորոյ փոխարէնն՝ Տէր հատուցէ զարիտուր՝ իւրն եւ իւրայոցն, աստ եւ ի հանդերձեալսն...»*։ (հմմտ. Գաբ. *Սամուէլ Անեցի* էջ 164)։

Խուրլուտահի բանակին մէջ էին Լիպարիտ Օրբէլեան եւ Նաչի Պռօշեան հայ իշխանները, որոնք հաւանօրէն իրենց կարգին դեր մը կատարած պէտք է ըլլան։

Ղազան մեծ բարեկամն էր Հայոց թագաւորին, եւ Դամասկոսի դաշտին մէջ Հայ եւ Մոնկոլ բանակներու կրած պարտութեան վրէժը լուծել կ'ուզէր։ Ան Պաղտատի մէջ գրկաբաց ընդունեց Հեթում Բ. թագաւորը եւ կրկնեց իր խոստումները։ Սկսան մեծ պատրաստութիւններ։ Սակայն Ղազանի շուրջինները, Եգիպտոսի Մեմլուքներէն կաշառուած, ինչպէս նաեւ նոր զօրացած Իսլամութեան կուսակիցներէն թելադրուած, ամէն միջոց իգործ դրին արշաւանքը ձախողեցնելու համար, բայց որովհետեւ Ղազան հաստատ կը մնար իր որոշումին վրայ թունաւորեցին զայն (հմմտ. *Մաքրիզի, Հեթում* էջ 67)։

Ղազան Մահմուտ խանի մահէն (1304) վերջ Ղարբանտա կամ Օլջայպաու կամ Ալանաքտու խանը, որ Խուտաբանտ ալ կոչուած է, կը յաջորդէ իրեն Խորասանէն գալով (1)։ Ղարբանտա (1304—1309) որ միականի էր, նախ բարեացակամութեամբ վարուեցաւ քրիստոնէից հետ բայց վերջը թշնամացաւ եւ սկսաւ հալածել, նոյնիսկ հրամայելով որ բռնի իսլամանան բոլոր քրիստոնեաները, Հայաստանի, Վրաստանի եւ Աղուանից աշխարհին մէջ, եւ ծանր հարկերու տակ ճնշեց ժողովուրդը եւ ուրիշ այս կարգի չարիքներ գործադրեց (Չամ. Գ. 299)։

Ղարբանտային կը յաջորդէ Ապու Սայիտ կամ Պուսայիտ (1315—1335 Նոյեմ. 30 ✝), որուն Լեւոն Դ. Կիլիկիոյ թագաւորը (1320—1342) օգնութիւն տուած է 30,000 զօրք։ Ապուսայիտ, վերջին Մոնկոլ վեհապետն է, որուն ժամանակ տակաւին կը պահուէր պետութեան միութիւնը, թէեւ ոչ կատարեալ անդորրութեան մէջ եւ խաղաղ։

Պուսայիտի յաջորդեց Արփա խան (1335) որ սպաննուեցաւ եւ Մուսին (1335—1336) գահը յափշտակեց եւ քրիստոնեաները հալածել սկսաւ։

Զաքարիա Սէֆէտտինեան, Աղթամարի Կաթողիկոսը, 1335ին անձամբ գնաց Պաղտատ, խնդրելու համար որ Քրիստոնէից հալածանքը դադրի եւ յաջողեցաւ կարգ մը թոյլտուութիւններ ստանալ, սակայն պետութեան վարիչը Ալի փաշա 1336ին սպաննուելով խալիթ աղայէն, որ ձեւանալով Հասան խան, Պուսայիտի որդի, գահը յափշտակեց եւ հռչակուեցաւ Մեծ խան։

Ապուսայիտի մահէն ետք, Մոնկոլ կայսրութեան քայքայումը եւ անիշխանութեան շրջանը կ'սկսէր։

Այս վիճակէն օգտուելով կարգ մը կուսակալներ եւ բռնաւորներ աստ անդ ինքնիշխան եղան եւ Մոնկոլ տէրութիւնը բաժնեցին զանազան մասերու։

Այլեւս այդ հսկայ պետութիւնը սկսած էր ապրիլ իր հոգեվարքի օրերը։

Հայաստան ալ չկրցաւ ազատ մնալ այս խառնակութեանց հետեւանքներէն եւ կարգ մը բախտախնդիրներու շահատակութեանց ասպարէզ դարձաւ։

## Գ. ԱՆԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԽԱՌՆԱԿՈՒԹԵԱՆՑ ՇՐՋԱՆ

## (1335—1380)

Իսկական անիշխանութիւնը կ'սկսի Ապուսայիտի սպաննութենէն (1336) վերջ, վասնզի այս վեհապետը արու զաւակ չունենալով, Իլխանեան հարստութեան մայր ճիւղը վերջ գտաւ։

Մոնկոլ խաներու գահը իրարու ձեռք յափշտակեցին (տես. վերը, էջ 74—75) բազմաթիւ իշխաններ (էմիր), որոնց մեծ մասն Մոնկոլ կողմնակի իշխանական տուներու շառաւիղներն էին։

Անոնք գահ բարձրացան, բայց ընդհանուր կերպով, պետութեան բոլոր մասերուն մէջ չճանչցուեցան (հմմտ. *Իսլամական Համայնագիտարան*), եւ զանազան վայրերու մէջ կուսակալ նշանակուած խաները ինքնիշխան եղան։

Հայաստան ալ բացառութիւն չկազմեց։ Երկիրին զանազան մասերուն մէջ երեւան եկան անկախ իշխանութիւններ որոնք Հայաստանի կեդրոնին, ինչպէս անոր ծայրագաւառներուն տիրացան եւ երբ ոչ երկար ատեն, գոնէ որոշ ժամանակ մը— մօտաւորապէս կէս դար— կառավարեցին երկիրը, անոր դժբախտութիւնը աւելի ծանրացնելով, վասնզի իրենց գոյութիւնը պահելու եւ իշխանութիւնները ամրապնդելու համար, իրարու հետ անդադար կռուեցան եւ աւերածութեան եւ թշուառութեան պատճառ եղան։

Արդէն տեսնուեցաւ թէ Մոնկոլ տիրապետութիւնը յանկարծ ինչպիսի ընդարձակութիւն մը ստացած եւ ինչպէս Եգիպտոսի Մեմլուքներուն եւ Փոքր Ասիոյ Սելջուկներուն հետ իր մղած երկարատեւ կռիւներով պարտասած էր։

Տեսնուեցաւ, (տես. վերը, էջ 330) թէ ինչպէս Ապաղա խան (1265—1283) առաջարկեց 1277ին, Կապադովկիոյ եւ Միջագետքի այն մասերը որոնք Մոնկոլ գրաւման տակ կը գտնուէին, թողուլ Հայոց Լեւոն թագաւորին, տուրքերը իրեն վերապահելու պայմանով եւ Լեւոն խոհեմութիւն համարեց մերժել, գիտնալով թէ ինչ դժուարութիւններ կային եւ խորհուրդ տուաւ կուսակալներ նշանակել։

Յայտնի է թէ Մոնկոլները, Սելջուկ Ռումի Սուլթաններուն հետ մաքառելով նախ այս պետութիւնը տկարացուցին եւ ապա, գրաւեցին այդ պետութեան արեւելեան մասերը, ԺԴ. դարուն սկիզբը

(1) *Հեթում Բ. ասոր տեսութեան գացած է Դաւրէժ եւ անոր բարեկամութիւնը ապահոված է 1308ին*, (Ազգապատում, *էջ* 1811)։

եւ զանոնք կուսակալութեան մը վերածեցին:

Այսպէս, նախ Սեբաստիան եւ ապա Կեսարիան գրաւեցին: Մոնկոլները Անատոլեան բազմաթիւ քաղաքներ աւերակի վերածեցին եւ գրաւեցին Անատոլուի մեծ կարեւոր մասը: Սելջուկ Ռումի Սուլթանութիւնը Մոնկոլ տիրապետութեան ենթարկուեցաւ, եւ Սելջուկ Ռումի վերջին Սուլթանը՝ Ալայէտտին Գ. Քայ Խոպատի Մոնկոլներու կողմէն սպաննուելէն (1307) վերջ Անատոլուն կառավարուիլ սկսաւ Իլխանեան Մոնկոլ խաներու կողմէ նշանակուած կուսակալներով:

Այս միջոցին, Սելջուկներու ենթակայ պէյերը իրենց կարգին անկախութիւն հռչակեցին, սակայն Ապուսայիտ Պահատուր խանի (1315—1336), վէզիրը Էմիր Չօպան այս ապստամբ իշխաններէն մեծ մասը Իլխանեան իշխանութեան հպատակեցուց, (Քէմալէտտին, *Արգէոսեան Կեսարիոյ պատմութեան վրայ ակնարկ մը*. թրքերէն. 1934. Կեսարիա, էջ 234): Ապուսայիտի այս իմաստուն վէզիրը, որ Հայ ձեռագիրի մը մէջ *զօրապետ* կոչուած է 1321ին (տես. Հրաչեայ Աճառեան, *Ցուցակ Ձեռագրաց Թաւրիզի* էջ 30), Ապուսայիտի իշխանութեան առաջին տարիներուն, 1316էն 1323 կռուելով եւ իմաստութեամբ կառավարած է Անատոլուն եւ 1323ին հաշտութեամբ, Մեմլուքներու դէմ մղուած դժբախտ պատերազմին վերջ տուած: Էմիր Չօպան, կրցած է Մոնկոլներու հեղինակութիւնը հաստատել այս երկիրին վրայ, մրցակից Յոյներու եւ Թուրքերու դէմ (տես. *Իսլամ Համայնագիտարան*):

Ինչպէս բռնեցաւ Էմիր Չօպան պարտաւորուած էր նուաճելու շատ մը ապստամբ բռնակալներ: Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 167) «*Երընչի եւ Ղուռումչին նստան*„ կ'ըսէ, անոնց թողլով թէ որո՞նք էին անոնք: Սակայն 1319—1320ին գրուած ձեռագիրի մը (Երեւանի թանգարան թ. 88) յիշատակարանը կը բացատրէ շատ բան: Հոն գրուած է թէ «*յարեաւ ամիրայ անաւրէն Ղուռումչի, որ պատերազմեցաւ ընդ պարոն Չաւպանի, եւ արար փախըստական*»: Յետոյ կը պատմէ թէ «անօրէն» Ղուռումչին, ինչպէս երկիրը, եկեղեցիները, գիրքերը եւ սպասները կը կողոպտէ, գերի կը տանի, տղայ եւ ծեր: Ան կ'ըսէ թէ "*բնակութիւն աշխարհիս թողին չինչս իւրեանց եւ իծերպս վիմաց ապաւինէին... իբրեւ զնուէ* (!!) *էրէրէր երկիր իյանէ անիծեալ Ղուռումչոյ, մինչեւ քաղցրացաւ Աստուած եւ առաքեաց զԲուսաիտ խանն եւ կոտորեաց զՂուռումչի եւ զաւրսն իւր, եւ եղեւ խաղաղութիւն ամենայն աշխարհի եւ դարձաւ աշխարհս ի բնակութիւն իւր... եւ Չաւպանն կրկին հաստատուեցաւ իպարոնութիւն Բուսաիտ ղանի*" (Խաղբակեանք Ա., էջ 205):

Էմիր Չօպանի որդին Թիմուրթաշ հաւանօրէն այս թուականէն վերջն է որ Ռումի կամ Հոռոմ երկիրներու կուսակալ կը նշանակուի եւ ասիկա սկիզբը Կեսարիա կը հաստատուի իբր Իլխանեան իշխանութեան ներկայացուցիչ, սակայն վերջը կ'ապստամբի Իլխանեաններէն, (Քէմալէտտին, *նոյն.*)։

Սմբատ Գունդստապլ (էջ 129) Թիմուրթաշը կը յիշատակէ «*Հոռոմոց պարոն*» տիտղոսով, եւ Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 167) զայն կ'որակէ «*չարն Տամուրտաշ*»: Ասիկա կը մտնէ Կիլիկիա «*առ ի բառնալ զքրիստոնէութիւն* (*Սմբատ.* էջ 129) եւ «*տիրելու ազագաւ*„ (*Սամուէլ* էջ 167) եւ մինչեւ Սիս կ'արշաւէ, սակայն իր բանակը կը պառակտի եւ կը պարտաւորուի նահանջել 1321ին դէպի Հայաստան (1) (տես. Յ. Մանանդեան եւ Հ. Աճառեան *Հայոց նոր վկաներ* էջ 122) շատ մը գերիներով (համմտ. *Սամուէլ*, էջ 167 եւ *Սմբատ*, էջ 129)։

Թիմուրտաշ, ինչպէս կ'երեւի դէպի Կիլիկիա իր կատարած արշաւանքին ատեն իսկ այլեւս չէր ճանաչեր կեդրոնական իշխանութեան, այսինքն Ապուսայիտ խանի, որ Կիլիկիոյ Հայոց թագաւորութեան պաշտպանն էր:

Ապուսայիտ (1316—1336) իր վէզիրը՝ Չօպանը՝ կը ղրկէ իր որդւոյն Թիմուրտաշի դէմ. «*Եկն Չօպանն ի Հոռոմք ի խնդիր Տամուրտաշին*„ բայց ինչպէս կը հասկցուի այս ապստամութեան մասնակից Դմշխ Խոճան կը բռնուի եւ կը տարուի Ապուսայիտ խանին, որ զայն մահուամբ կը պատժէ, սակայն Թիմուրթաշը կը փախի (*Սամուէլ Անեցի* էջ 167)։

Անշուշտ Չօպանի կողմէ իր որդւոյն հանդէպ կողմնակալութիւն մը վերագրուելով, պաշտօնանկ կ'ըլլայ. «*վերացոյց Պուսայիտն զՉօպանն՝ որ զաշխարհս իձեռն ունէր, եւ մեռաւ իփախչելն*" (*Սամուէլ* էջ 167):

Այսպէս, 1326ին Ապուսայիտի զայրոյթէն ազատելու համար փախած ատեն Էմիր Չօպան կը մեռնի:

Ասոր վրայ իր որդին Թիմուրթաշ, անշուշտ վրէժխնդրութեան համար եկաւ Երզնկայի վրայ (*Սամուէլ*, էջ 167), սակայն «*ամբարիշտ պարոն Հոռոմոց Տամուրտաշն*„, երբ իմացաւ թէ Մոնկոլներու խանը կուգայ, «*փախեաւ եւ գնաց առ Սուլտանն Միսրայ Մելիք Նասրն* (Մուհամմէտ 1293—1341) *եւ կամէր նովաւ կռուիլ ընդ ազգն իւր եւ ընդ թագաւորն Հայոց Լեւոն: Նա Աստուած խափանեաց զինքն եւ զհամախոհք իւր: Եւ յետ ութ ամսոյ եսպան զինքն Սուլտանն եւ զգլուխն յուղարկեաց առ Պուսայիտ խանն*» (*Սմբատ.* էջ 131. համմտ. *Սամուէլ*, էջ 167 որ *դարձեալ* Եգիպտոս երթալը կը շեշտէ) (2)։

Քիչ վերջը Պուսայիտ խան կ'սպաննուի (1336) եւ ասիկա սկիզբը կ'ըլլայ Մոնկոլ պետութեան քայքայման:

Ամէն կողմ ինքնիշխան էմիրներ երեւան կուգան, եւ Մոնկոլ կայսրութիւնը կը քայքայուի եւ կը խառնակի:

Այս կացութենէն օգտուելով նոյն 1336, տարւոյն մէջ, Շէխ Հասան, (որ պատմութեան ծանօթ է

(1) *Բայց կ'երեւի թէ Թիմուրթաշ Եգիպտոս փախած է, վասնզի 1326ին Սամուէլ Անեցիի շարունակողը անոր Եգիպտոս փախուստը գրած ատեն* «դարձեալ փախաւ իՄսր» (*էջ* 167) *կ'ըսէ, ինչ որ ցոյց կուտայ թէ անգամ մը արդէն հոն գացած էր։*

(2) *Քէմալէտտին,* (նոյն *էջ* 234) *կը հաստատէ Թիմուրթաշի Եգիպտոսի մէջ գլխատուած ըլլալը սակայն իր նշանակած* 1321 *թուականը սխալ է։*

«փոքր» ածականով», Թիմուրթաշի որդին, կը փորձէ իր հօրը իշխանութիւնը ստանալ եւ դրամներ բնել: Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 168) որ արդէն Թիմուրթաշի գլխատումը 1325 թուականով գրած էր, 1336ին կ'ըսէ թէ *«յայն ամի խասրեցին զնզնկան Թամուրտաշ՝ եւ որդի նորա փոքր Չէխ Հասանն»*, բայց ասիկա սխալ մը պիտի ըլլայ:

Հաւանօրէն շփոթութիւն մը կայ եւ աւելի ճիշդն է 1338 թուականով Սամուէլի շարունակողին գրածը (էջ 168), ուր կ'ըսէ թէ *«եկն Չէխ Հասանն որդի Տամուրտաշին ի վերայ Եզնկին եւ համբաւ հանին թէ Տամուրթաշն ելեր է ի Մսրայ եւ իշխե-տէ նստան ՂԸ. (98) օր:»* Սակայն Թիմուրթաշի համբաւը տարածելու այս փորձը չէ յաջողած: Չէխ Հասան, ինչպէս կ'երեւի բնաւ չէ յուսահատած եւ անընդհատ մաքառած է: Հակառակ անոր որ Սամուէլ Անեցիի անանուն շարունակողը Չէխ Հասանի իր կնոջ կողմէ սպաննութիւնը 1338 թուականին տակ գրած է, սակայն հաւանօրէն սխալ է, վասնզի 1341ին *«եկին, կ'ըսէ, հրամանաւ Փոքր Հասանին՝ Հաշիտօնն եւ Թօտօնն ի վերայ Եչընկին եւ նստան ԺԲ. (12) օր»* (*Սամուէլ* էջ 168) եւ 1346ին կը գրէ թէ *«սպանանէ Ցելականն զՍօրխանն որդի Ջօպանին եւ զԻշտօնն, եւ այլ բազում գլխաւորք»* (*Սամուէլ* էջ 169): Թէեւ շատ յստակ չէ բայց կը թուի թէ զօրավար մը (Ցելականն ?) Ջօպանին ուրիշ մէկ որդին (*Սօրխան*) — որ հետն էր կ'երեւի իր եղբօր որդւոյն Փոքր Հասանի — եւ ուրիշ զօրավարներ եւ պետեր (ինչպէս Հաշիտօնն=Իշտօնն) սպանած է ապըստամբութիւնը ընկճելու համար:

Չէխ Հասան նոյն տարին սպաննուած է իր կնոջ կողմէն (*Սամուէլ* էջ 168), եւ իրեն յաջորդած է իր եղբայրը՝ Մելիք Աշրաֆ (*Նոյն*), որ ժամանակ մը յաջողած է տիրել Ատրպատականի եւ Հայաստանի կարեւոր մէկ մասին, Դաւրէժը մայրաքաղաք ունենալով: Հաւանօրէն իր ստորադրեալներէն մին պիտի ըլլայ Բայբուղայն որ 1351ին կը գրաւէ Խլաթը եւ կ'երթայ Մարտին, եւ տեղւոյն Սուլթանին աղջիկը կը տանի Դաւրէժ Աշրաֆին (*Սամուէլ Անեցի*, էջ 169):

Աշրաֆ կ'սպաննուի 1358ին Ջանի բէկի կողմէն, որ կարճ իշխանութիւն մը ունեցաւ, վասնզի Ջալայիրեան Հասան Մեծի (1335–1356), ժառանգները իրենք իշխանութիւնը յափշտակեցին:

Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 169) կը խօսի Աշրաֆի սպաննութեան վրայ, բայց իր տողերը կը կարօտին լուսաբանութեան, վասնզի կը յիշատակէ Ցահին մը որ կը նստի եւ սաստիկ պատերազմով կռուողներ ցոյց կուտայ Սուլտանոյին !! եւ Ախին, եւ կը յարէ թէ *«ձերբակալ արարին զԱխին եւ ածին առաջի Սուլտանին !! եւ նա ետ սպանանել զնա եւ ինքն նստաւ խան՝ ամս է»*:

Նոյնպէս ծանօթ չէ Ամիրադինը որ 1365ին կուգայ Արծկէի վրայ (*Սամուէլ* էջ 169) 15,000 հեծեալ եւ հետեւակ զօրքով:

Նոյն թուականին, Թիմուրթաշի որդին Աշրաֆ ալ կ'ըսուի թէ *«եկն ի վերայ երկրիս, որ գայր տիրէր Թախտին եւ եկեալ յԱրծկէ սպանաւ»* (*Սամուէլ էջ* 169):

Նոյն ժամանակագիրը, Սամուէլ (էջ 170) կը յիշատակէ 1370ին Մէյիս Խոռօնը, որ 25 մարդով Արծկէի բերդին վրայ կուգայ եւ հոն կ'սպաննուի, ինչպէս 1372ին կ'սպաննուին Ամիր Հանն (?) եւ Բաղէշի տէրը՝ Դիադինը:

Ինչպէս կը տեսնուի Արեւելեան Անատոլուի եւ մասամբ Արեւմտեան Հայաստանի մէջ կազմուած է Թաթար անկախ իշխանութիւն մը, որուն ձգտումն եղած է առաջանալ դէպի Արեւելք: Ան աշխատած է տիրել Արեւելեան Հայաստանի եւ մինչեւ Արծկէ եւ Վասպուրական տարածել իր տիրապետութիւնը, սակայն կորսնցուցած է կարգ մը շրջանակներ որոնք իրեն կը պատկանէին:

⁂

Ապուսայիտ Պահատուր խանի սպանութենէն (1336) վերջ, միայն Մոնկոլ կայսրութեան արեւմտեան ծայրագաւառը հանդիսացող Անատոլուն յուզումի եւ խառնակութեան չմատնուեցաւ, այլ ինչպէս արդէն ըսուեցաւ, ամբողջ երկիրն խռովեցաւ եւ շատ մը կուսակալներ ըմբոստացան:

Առաջին ըմբոստացողներէն մէկը եղաւ ՄՈՒՀԱՄՄԷՏ ԽԱՆԸ, որ 1335ին Կարնոյ մէջ ապստամբեցաւ եւ տիրեց Հայաստանի գրեթէ մեծագոյն մասին, Բարձր Հայքի, Տուրուբերանի, Վասպուրականի եւ Աղուանից աշխարհին:

Անիկա դէպի արեւմուտք մինչեւ Փոքր Հայք (*Սեբաստիա*) նուաճումներ ըրաւ եւ իրեն հնազանդեցուց:

Բայց Մուհամմէտ խանը միշտ չկրցաւ իշխել, վասնզի իրեն դէմ կանգնեցան, իբր մրցակիցներ Հայաստանի տիրապետութեան:

ՍԱԹԻ ՊԷՅ ԻՇԽԱՆՈՒՀԻՆ (1337—1340) քոյրը՝ Ապու Սայիտ Պահատուր խանի,

ԹԱՂԱ-ԹԻՄՈՒՐ (1338—1341),

ԱԶԶԷՏՏԻՆ ՋԷՀԱՆ ԹԻՄՈՒՐ (1338—1340),

ՍՈՒԼԷՅՄԱՆ ԽԱՆ (1339—1350),

Որոնք Հայաստանի զանազան մասերուն մէջ բռնակալեցին եւ երկիրը իրարու ձեռքէ յափշտակեցին: Այնպէս որ Հայաստանի մէջ քաոս մը ստեղծուեցաւ:

Իր մրցակիցներէն Սաթի պէյ, Աղուանից աշխարհին (*Պարտաւ*), Խլաթի, Փայտակարանի, Խոյի, Կարինի, Բաբերդի եւ Արծնի տիրակալած էր: Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 168) 1339ին, *«եկն Սաթի բէկն»* կ'ըսէ, առանց ճշդելու թէ ուր եկաւ, հաւանօրէն Անի ըսել կ'ուզէ: Իսկ 1346 թուականին տակ կը նշանակէ անոր մահը (*Նոյն*. էջ 169):

Ինչպէս Սաթի պէյի տիրակալած վայրերը ցոյց կուտան, Մուհամմէտ խան եւ Սաթի պէյ Հայաստանը իրարու ձեռքէ յափշտակած են: Թաղա-Թիմուր եւ Ազզ-էտտին Ջէհան Թիմուր (1). կրցած են Երզնկայի եւ Խլաթի կողմերը տիրակալել:

(1) *Այս երկու Թիմուրներէն մին պէտք է ըլլայ, Բասեն Մընծընկերտ գիւղաքաղաքը, 1336ին գրուած Աւետարանի մը յիշատակարանին Թամուրը, որ բազում եկեղեցիներ եւ վանքեր աւերած է* «տարաշխարհիկ» *ընելով կրօնաւորները* «յերկիւղէ անօրինաց» (Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի էջ 190):

Իսկ Սիւլէյման խան կը թուի թէ ամէնէն յաջողակը եղած է, վասնզի 1339—1350, տասը տարուան ընթացքին Հայաստանի ամէնէն կարեւոր շրջաններուն տիրակալած է, եւ շատ ընդարձակ տարածութեամբ երկիր մը ունեցած է իր իշխանութեան տակ: Ան կը տիրէր Անիի, Նախիջեւանի, Կարնոյ, Խլաթի, Սեբաստիոյ, Կեսարիոյ, Երզնկայի, Բաբերդի, Մարաղայի, Խոյի, Պարտաւի, Սալմաստի, թէեւ ոչ առանց հակառակութեան եւ անվրդով, քանի որ իր իշխանութեան շրջանին ուրիշ մը՝ Նաւշիրուան կամ Անուշիրուան, 1344—1349ի ատենները, անկէ պարբերաբար կը յափշտակէր իր հողերը եւ կը ջանար անոր երկիրներուն տիրանալ: Սիւլէյման խան ինչպէս Շարակնոցի մը յիշատակարանէն կը հասկցուի 1343ին, Երզնկայէն անցնելով գացած է Սեբաստիա եւ Արաթինա խանի վրայ յարձակած եւ յաղթած է անոր եւ փախուստի մատնած: (Տաշեան. *Մայր-Ցուցակ* էջ 489):

Այսպէս, Հայաստան մասնուած է կատարեալ անիշխանութեան, վասնզի երեւան եկած են քանի մը իշխաններ, որոնք տիրակալելու համար իրարու դէմ կը կռուէին:

***

Այս շրջանին կը հանդիպինք վերոգրեալներէն զատ ուրիշ իշխանութիւններու եւս, որոնք կը խառնուին տիրակալութեան այս պայքարներուն:

Ասոնցմէ մին էր Արեւելեան Հայաստանի մէջ հաստատուած այն իշխանութիւնը, որուն պետերը կը պատկանէին Ջէլայիրեան ընտանիքին:

Պատմագիրներէն ոմանք Իլխանեաններու յաջորդութիւնը կը համարեն Ջէլայիրեանները, բայց իրականին մէջ ասոնք իգական գիծով միայն կապ ունէին Իլխանեաններու հետ, որովհետեւ այդ գերդաստանին հիմնադիրը Շէխ Հասան, «մեծ» մականուանեալը, մօր կողմէն Արղունի (1254—1289) թոռն էր:

Շէխ Հասան նոյնպէս ինքնիշխան դարձած է 1336ին, Պաղտատի մէջ, Ապուսայիտ Պահատուր խանի սպաննութեանտարին, կամ աւելի կանուխ, վասնզի Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 167) զայն կը յիշէ, շատ անորոշ եւ անհասկնալի եղանակով մը *«եկն շէխ Հասանն Ուլուսբէկն ի Կամախ»*։ Նոյնպէս 1339ին նոյն ժամանակագիրը (էջ 169) կը յիշէ Ուսլուբէկ մը որ Շէխ Հասանին վրայ կ'երթայ: Կամ պէտք է ընդունիլ թէ Ուլուս բէկը (Ուլու= մեծ բառէն ածանցուած) ածական մըն է տրուած Շէխ Հասանին կամ նոյնացնել Ուսլու բէկին հետ եւ ընդունիլ թէ այս երկուքը իրարու դէմ մաքառած են։

Նոյնպէս 1333ին գրուած յիշատակարանի մը մէջ (տես *Խաղբակեանք*, Բ. էջ 178) կան տողեր որոնք հաւանօրէն այս Հասանին կը վերաբերին. *«եւ աշխարհակալութեան Հասան բակին, որ յաղթեաց Ջհանշային եւ եկեալ ի դաշտն Խուայ եւ փախըստական արար զՀասան Ալի եւ երթեալ ի Ղարապաղն եւ անդ եւս զպարակաց բռնաւորն զզսուլտան...»* (դժբախտաբար կիսատ):

Մեծ Շէխ Հասան ինքզինքը կը ներկայացնէր Ապուսայիտի որդին: Ոմանք զայն կը նոյնացնեն Խալիտ աղայի հետ որ Ալի փաշայի հակառակորդն էր եւ զայն սպանեց Հերի կողմերը 1336ին (տես. վերը, էջ 75): Շէխ Հասան (1336—1356), որ իր իշխանութեան տակ ունեցած էր Ատրպատականը եւ Աղուանից աշխարհը, կրցած էր իր պետութիւնը տեւականացնել: Իրեն յաջորդած են իր որդին՝ Շէխ Օվէյս Պահատուր (1356—1373), եւ թոռը՝ Ջէլալէտտին Հուսէյն Ա. (1374—1382), որոնք Հայաստանի մէջ տիրող անիշխանութենէն օգտուելով իրենց պետութիւնը ընդարձակած են դէպի Վասպուրական (Վան) եւ դէպի Այրարատ (Անի) (1):

Հուսէյնի յաջորդած է Ղայասէտտին Ահմէտ Պահատուր (1382—1385 եւ 1404—1409, որուն համար Սամուէլ Անեցի (էջ 170) կը գրէ թէ 1382ին *«Սուլտան Ահմատն զերկու եղբարսն սպանեաց՝ եւ ինքն նստաւ. սպան զմեծամեծս հօր իւրոյ, եւ կորոյս զամենեսեան: Եւ միւս եղբայրն շարժեցաւ ընդ նմա ի պատերազմ Շահզատայ անուն, եւ զօրապետ նորա Փիրալիպատիկ (2) եւ եկեալ մեծաւ զօրաւ ի վերայ Սուլդան Ահմատին, եւ կոտորեցին երկոքին զօրքն ի դաշտին Արտազու՝ եւ ցըրուեցան զօրքն»*։

Սուլթան Ահմէտ իր նախորդներուն տիրակալած երկիրները աւելի ընդարձակած է եւ մինչեւ Երզնկա հասած է, բայց միշտ խռովեալ վիճակ մը ունեցած է երկիրը ուր իբր առաջապահը Լէնկթիմուրի եւ կարծես նշանակ մը տալու համար, Թօխամիշ կամ Թօխթամիշ խան Խրիմէն բանակ մը կը ղրկէր, որ Կովկասի լեռներէն անցնելով կը հասնէր մինչեւ Դաւրէժ, աւերելով եւ գերելով աւելի քան 20,000 այր եւ կին եւ ապա անցնելով Նախիջեւանէն եւ Սիւնիքէն, կը դառնար իր տեղը *(Սամուէլ Անեցի* էջ 171*)*։

Այս պետութիւնը մինչեւ Լէնկթիմուրի ժամանակ շարունակուած է: Մեծոփեցի զայն կը յիշէ (էջ 13—14), պարզապէս զայն կոչելով *«Սուլթան Ահմատ... որդի Օախսին»*, որ ապահովաբար Օվէյս բառին աղաւաղումն է։

Ահմէտ Լէնկ Թիմուրի ձեռք չիյնալու համար Պաղտատ խոյս տուաւ 1385ին եւ անոր մահէն վերջ 1404ին դարձաւ Հայաստան եւ Գարա Եուսուֆի բացակայութենէն օգտուելով Դաւրէժը գրաւեց, սակայն Եուսուֆ երբ դարձաւ, գրաւեց Դաւրէժը եւ սպաննեց Ահմէտը (1409):

Այսպէս, վերջ գտաւ Շէխ Հասան Մեծի հիմնարկած պետութիւնը որ գրեթէ 80 տարուան տեւողութիւն մը ունեցած է:

**

Չոպանի որդին Թիմուրթաշ երբ ապստամբեցաւ 1326ին, Ապուսայիտ, ինչպէս տեսնուեցաւ, անոր դէմ ղրկեց Չոպանը, բռնի ուժով զայն վանելու համար:

(1) *Սամուէլ Անեցիի շարունակողը* (էջ 170) 1375 *Թուականին կը յիշատակէ անշուք կերպով* «Վայիսի որդին Հիւսային նստաւ» *գրելով*.

(2) *Թերեւս է Փիր-Ալի պատրիկ*.

Միեւնոյն ատեն Թիմուրթաշի տեղ *«Պարոն Հռոմոց»* կամ թաթարական ռումի հողերուն կուսակալ կարգեց, Ալայէտտին Արթինա պէյը:

Ապուսայիտի սպանութենէն (1336) վերջ, երբ Մոնկոլ պետութիւնը քայքայումի մատնուեցաւ Արթինա պէյ ինքզինքը ձերբազատելու համար իրարու դէմ մաքառող թաթար խաներու իշխանութենէն, մտաւ Եգիպտոսի Նասըր Մուհամմէտ Սուլթանին (1293-1341) հովանաւորութեան տակ (Քէմալէտտին *նոյն.* էջ 234) եւ օգտուելով առիթէն հետզհետէ ընդարձակեց իր հողերը դէպի Երզնկա եւ Բաբերդ եւ այսպէս Ալիսէն մինչեւ Ճորոխ բաւական ընդարձակ պետութիւն մը կազմեց, իր սահմաններուն մէջ ունենալով, նաեւ Սեբաստիան, Եւդոկիան եւ Կեսարիան։ Սամուէլ Անեցիի շարայարողներէն մին կը յիշատակէ (էջ 168) թէ 1339ին *«Յարաթանանն* (Արթինայի աղաւաղումը) *խաւարեաց զՍեւաստ, մինչ խռովաւ նեղեալ տուին զքաղաքն»*:

Իսկ երբ Եգիպտոսի Սուլթանը մեռաւ (1341) Արթինա անկախութիւն հռչակեց եւ կազմեց իշխանութիւն մը որուն մայրաքաղաքն էր Կեսարիա: Ինչպէս վերը տեսնուեցաւ, 1343ին Սիւլէյման խան (1339—1350) որ Հայաստանի տիրակալութեան համար մաքառող խաներէն մին էր, արշաւեց մինչեւ Սեբաստիա, բայց Արթինա պէյէն պարտուեցաւ եւ խոյս տուաւ (տես. Տաշեան *Մայր-ցուցակ* էջ 489):

Արթինա պէյ, զոր ժողովուրդը կը կոչէր *Քէօսէ Բէյղամպէր* (Գոշ Մարգարէ), արդար մէկը կ'երեւի ըլլալ: Իր իշխանութիւնը մեծ գոհունակութեամբ ընդունուած է իր հպատակներէն։

Արթինա մեռած է 1351ին Կեսարիոյ մէջ:

Իր մահէն վերջ երկիրը կառավարած է կինը՝ Սուլի Սուլթան իր որդւոյն Մէհմէտ Պէնի Արթինայի հետ: Ասոնց մահէն վերջ երկրին տիրեց 1381ին Դատը Ահմէտ Պուրհանէտտին կամ Պուրհան Ղազի որ Փոքր Հայքէն զատ կը տիրէր Հայաստանի Դ. Հայք եւ Բարձր Հայք նահանգներէն մասերու, ինչպէս Մալաթիոյ, Կամախի, Երզնկայի եւ Պայպուրդի (Համմէր. *Օսմ. պատմութիւն Զ.* գիրք):

Դատը Ահմէտ Պուրհանէտտինի կը յաջորդէ իր որդին Ապուլ Աբբաս Պուրհանէտտին որ 1392ին սպանուեցաւ ըստ ոմանց Օսմանեան Սուլթան Պայազիտէն Խարբերդի կողմերը (Չամ. Գ. 432), ըստ այլոց Գարա Եուլուք Գարա-Գոյունլուէն (Հանի խալիֆէ ի Համմէր գիրք ԺԵ.), կամ Գարա Օսման Աք-Գոյունլուէն (Քէմալէտտին, *նոյն.* էջ 234, Այվազովսքի *Օսմ. պատմ. Ա.* 54):

Ըսողներ ալ կան թէ Ապուլ Աբբաս իր իշխանութիւնը շարունակած է մինչեւ 1402 եւ Լէնկթիմուրի չկրնալով դիմադրել Սուլթան Եըլտըրըմ Պայազիտի քով ապաստանած է իր երկիրը Օսմ. Սուլթանին թողլով։

Ինչ ձեւով որ ալ ըլլայ իրողութիւնը այն է որ Լէնկ Թիմուր այս քշխարութեան վերջ տուած է:

*
* *

Այս անիշխանութեան ժամանակամիջոցին Հայաստանի վիճակին վրայ բաւական յստակ գաղափար մը կուտայ յիշատակարանի մը սա տողերը:

*«Ի թագաւորութիւն զոր ոչ գոյ, այլ բարձեալ է թագաւորութիւն քանզի իշխանք են խռովարարք եւ տատանեալք, ի վերայ միմեանց աղմըկեալք, զոր ոչ կարէ բերան պատմել, զոր յայսմ ամի տեսին աչք մեր զաղէտ տարակուսանաց, զորս էրեսուն հազար մարդադէմ գազանաց ի վերայ երկրիս մերում յարձակեալք զնետս արեալ եւ զաղեղն լարեալ եւ զթիւրս (զթոյնս?) իւրեանց թափեալ, յարեան ի վերայ երկրիս մերում... քանզի բազում զաւառս գերեցին եւ աւերելով կործանեցին եւ զինչ արդիւնեաց զամենայնն յափշտակեցին եւ զամենեսեան զքրիստոնեայք կողոպուտ արարին, մերկ եւ բոկ եւ ոչ թողին ոչ մի ինչ ի վերա անձանց քրիստոնէից, այլ զանասունս տաւարաց ջոկս ջոկս առեալ տարան, զոչխարաց եւ զեզանց, զկովուց եւ զցլուց, զիշուց եւ զերիվարաց, զհանդերձս իյանձնէ մերկացուցին... որ յերէկ տան տանուտէր եւ ամենայն իրաւք լի եւ այսաւր... մերկ ի վերա մոխրոյ նստեալ»* (տես. *Խաղբակեանք*, էջ 227):

Մոնկոլ պետութեան այս հոգեվարքի օրերուն, սովը տիրեց ամէն կողմ, իբր հետեւանք անապահովութեան եւ հարուստ երկիրը աղքատացաւ, այն աստիճան որ շուները անօթութենէն կը սատկէին:

Այնքան դառն էր վիճակը որ ողջերը երանի կուտային մեռեալներուն, ըստ յիշատակարաններու վկայութեան:

Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 169), 1348 թուականին տակ կը գրէ թէ *«եղեւ սով սաստիկ իվերայ Հայոց աշխարհիս զամս Գ. եւ գայլք յարձակեցան ի մարդիկ եւ ապա անկաւ մահ տարաժամն եւ անապատ արար զբազմամարդ երկիրս Հայոց եւ շատոց գերեզմանք փոր գազանացն եղեն, շատք անթաղ մնացին եւ անծնունդ ժամանակի»*:

Ասիկա իբր թէ բաւական չըլլար Մոնկոլները կը շարունակէին տակաւին իրենց անողոք հարկապահանջութիւնը: Նոյն այդ ժամանակագիրը կը գրէ *«յայսմ ամի* (1348) *Ալփին* (!) *եկն ի Կարնոյ քաղաք, եւ հարկապահանջութեամբ նեղեաց, մինչ զի ամենայն երկիրն ի սպառ աւերեցաւ»*: Այսպէս *«յաւուրս անիշխանութեան, յորում բարձեալ էր տէրութիւն հոգեւոր եւ մարմնաւոր՝ ազգիս հայկազեան զի բռնացեալ կալան զՄիջերկրեացս ամենայն, ազգատոհմ Կարապետի Նեռինն սասցեալ եւ նեղեն յոյժ զազգս քրիստոնէից՝ մինչեւ յելս ոգւոյ մերոյ»* (*Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի* էջ 203—4):

Այսպէս, 1340ական թուականներէն սկսեալ, Իլխանեան իշխանութիւնը, որուն ենթարկուած էր Հայաստան, ինչպէս բացատրուեցաւ (տես. նաեւ վերը, էջ 74), բաժնուեցաւ այլեւայլ մեծ ու փոքր իշխանութիւններու, Ֆարսիստանի, Խորասանի, Իրաքի եւ Հիւսիսային Միջագետքի մէջ, այդ իշխանութեան զանազան գաւառները գրաւելով, Պաղտատի Իլխանեան խանին հարկատու կամ բոլորովին անկախ կառավարելով այդ երկիրները:

Այս կերպով կազմալուծուեցաւ Մոնկոլ

կայսրութիւնը եւ քայքայուեցաւ այդ ընդարձակածաւալ պետութիւնը, Հայաստանն ալ մատնելով խառնակութեան եւ անապահովութեան.

Ինչպէս պետութեան միւս մասերուն, նոյնպէս Հայաստանի մէջ— ինչպէս Սելջուկներու ատեն պատահած էր— տեղաշարժ ընող վաչկատուն եւ վրանաբնակ ցեղեր, որոնք Մոնկոլ բանակներուն կը հետեւէին, թէեւ եկւոր եւ օտար, կը հաստատուէին Հոյ հողին վրայ եւ կը հաստատէին իշխանապետութիւններ եւ կը կառավարէին երկրին զանազան մասերը իբր նօրտական կամ բոլորովին անկախ իշխանութիւններ։

Ասոնց մէջ ամենէն աւելի կարեւորներն էին Թիւրքմէն Ազգոյունլուներու եւ Գարագոյունլուներու իշխանութիւնները, որոնք բոլոր Հայաստանի տիրեցին, քիչ ժամանակի մէջ։

## Բ.

## ՎՐԱ-ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Մոնկոլ արշաւանքները երբ սկսան Վրաց եւ Հայոց միութիւնը կը պահէր տակաւին իր գոյութիւնը եւ թաթարական առաջին յարձակումներուն կը փորձէր դիմադրել, Վրաստանի Բագրատունի թագաւորներու գլխաւորութեամբ եւ Զաքարեան Հայ իշխաններու ղեկավարութեամբ։

Դժբախտաբար ան չկրցաւ տոկալ Մոնկոլ արշաւանքներու փորձութեան, եւ այդ գործակցութիւնը, որ ոյժ մըն էր եւ պատկառելի դարձուած էր թէ՛ Վրացիները եւ թէ՛ Հայերը, քայքայուեցաւ, վասնզի Մոնկոլները գրաւեցին այն հողերը զորս հայ իշխանները Վրաստանի անուանական հովանաւորութեան տակ գրեթէ անկախօրէն կը կառավարէին։ Վրաստան անկարող հանդիսացաւ զանոնք պաշտպանելու, եւ ինքն ալ հարկադրուեցաւ հնազանդիլ Մոնկոլներուն, իր ներքին ինքնավարութիւնը պահելու պայմանով։ Իրեն ստորադրեալ հայ իշխանութիւններն ալ նոյնպէս, հարկ եւ զինուոր տալու պայմանով, հնազանդեցան թաթարներուն։

Այսպէս, Վրա-Հայկական միութիւնը որ այնքան օգտակար եղած էր երկու ազգերուն, իր ոյժը կորսնցուց, Մոնկոլ տիրապետութեան շրջանին, մանաւանդ վերջերը, վասնզի Մոնկոլներու յարուցած փոթորիկը եւ թոհուբոհը Վրաստանը եւ իր հովանիին տակ գտնուող հայ իշխանութիւնները անշքացուց եւ տկարացուց։ Անոնցմէ ոմանք նոյնիսկ պատմութեան ասպարէզէն անհետացան, եւ ուրիշներ նոր ստորաբաժանումներու ենթարկուեցան։

Եւ որովհետեւ Մոնկոլ արշաւանքները, Հայաստանի մէջ. իրենց դէմ գտան Վրա-Հայկական միացեալ ոյժերը, հարկադրուած եմ կրկին գալ իր բոլոր մասերով ներկայացնելու, սկսելով այդ դաշնակցութեան գլուխ Վրաստանէն։

## Ա. ՎՐԱՍՏԱՆ

Մոնկոլ արշաւանքները խանգարեցին Հայ Վրացի երկպետութիւնը, որ աւատական կարգերու վրայ հիմնուած էր, Վրաց թագաւորներուն գլխաւորութեամբ։ Նախկին յարաբերութիւնները եւ սերտ միութիւնը կարելի չեղաւ պահել։ Եղան ժամանակներ ուր նոյնիսկ դերերը շրջուեցան եւ Հայ իշխանները Մոնկոլներուն մասնաւոր վստահութիւնը գրաւելով, աւելի ազդեցիկ դիրք ունեցան քան Վրաստանի թագաւորը եւ Վրաստանի գործերը— մինչեւ իսկ անոր գահուն յաջորդութեան խնդիրները— կարգադրեցին, իրենց հայեցողութեան համաձայն։

Մոնկոլ արշաւանքին սկիզբը Վրաստան կը ներկայացնէր միակ պետութիւնը որ իր Վրացի եւ Հայ աւատներով կրնար դիմադրութիւն մը կազմակերպել, բայց դեռ քիչ առաջ այնքան հզօր ու աշխարհակալական ձգտումներ ցոյց տուող այս տէրութիւնը, զուրկ էր այլեւս հռչակաւոր Թամար թագուհիի (1184—1212 Յունուար 18 ✝) ժամանակի ոյժը ունենալէ։

Վրաստանի բազմաթիւ գաւառները, որոնք այս փառաւոր թագուհիին Հայ զօրավարները նուաճեր եւ երկրին կցեր էին, անցած էին Սելջուկ իշխաններուն։

Վրաց թագաւորները հազիւ թէ կրնային պաշտպանել երկրին հին սահմանները անհանդարտ տարրերու դէմ, որոնք շարունակ յարձակումներով զիրենք անհանգիստ կ'ընէին, երբ արքայական տան ոյժը արդէն ջլատուած էր, վասնզի իշխաններէն ոմանք այնքան զօրաւոր կ'զգային ինքզինքնին որ անոր դէմ կ'ելլէին։ Այլեւս, իշխաններուն եւ թագաւորին միջեւ գործակցութիւնը դադրած էր եւ իշխանները կը հետապնդէին իրենց մասնաւոր շահերը, անտեսելով երկրին ընդհանուր օգուտը (հմմտ. Գ. Ալթունեան. *Արարատ* 1912 էջ 480).

Այս պատճառով Վրաստան չկրցաւ տոկալ Մոնկոլ յարձակումներուն։

1220—21ին, Գէորգի Լաշա թագաւորը (1212—1243) եւ Իւանէ Սպասալարը թէեւ յաջողեցան Հայ եւ Վրացի զօրքերով վանել Մոնկոլները,— որոնք մօտաւորապէս 20,000 էին եւ մտեր էին Գուգարք եւ կոտորեր բնակիչները,— բայց յետոյ Կոտման գետին մօտ Խունանի դաշտին մէջ պարտուեցան (տես. վերը, էջ 70 եւ 327.) եւ հազիւ կրցան իրենց կեանքը փրկել փախչելով (*Վարդան.* էջ 142)։

Միայն պատերազմին մասնակցող Տամքորի տէր՝ Վահրամ իշխան. անտեղեակ Վրա-Հայկական բանակին կրած պարտութեան, քաջութեամբ կռուեցաւ եւ կրցաւ Մոնկոլները հալածել մինչեւ Գարդմանի սահմանները, մինչ թշնամին կ'առաջանար մինչեւ Տամշուլտէ, հուրի եւ սուրի մատնելով (M. Brosset. Histoire de Géorgie depuis l'antiquite jusqu'au XIX siècle. Ա. էջ 493։

1223ին Վրաստան նոր պարտութիւն մը կրեց Զփղախներէն (տես. վերը, էջ 70, եւ Ջամ. Գ. 202),

սակայն Իւանէ, ասոր վրէժը լուծեց յանկարծակի յարձակումով մը, Վարդանաշատի մօտերը սաստիկ ջարդ մը տալով եւ մեծ թուով գերիներ առնելով (տես. վերը, էջ 71, *Կիրակոս.* էջ 105—106. Չամ. Գ. 202):

Այս յաղթանակը սակայն Վրաստանը եւ անոր կապուած Հայ իշխանութիւնները չփրկեց, վասնզի նոյն տարին (1224) Վրաստան դէմ առ դէմ գտնուեցաւ Ջէլալէտտինի զօրապետ՝ Իլէկ խանի բանակին: Իւանէ, Հայ եւ Վրացի 40,000 զօրքով կռուեցաւ եւ Սեւանայ լիճին մօտ յաղթութիւն մը տանելէ վերջ պարտուեցաւ:

Լօռին պաշարուեցաւ բայց կրցաւ դիմադրել (Իպն էլ-Աթիր ի Brosset. Hist. de la Georgle Ա. էջ 513):

Երբ Ջէլալէտտին անձամբ եկաւ, Իւանէ, Գառնիի մէջ պարտուած նահանջեց եւ թոյլ տուաւ որ գրաւուի Թիֆլիսը եւ սրածութեան ենթարկուին Վրաստանի եւ Գուգարքի բնակիչները. (Երուանդ Լալայեանց. Բորչալուի գաւառ (ԱԶԳԱԳՐ. ՀԱՆԴԷՍ Է.—Ը., էջ 331—332):

Իւանէ մեռաւ 1227ին եւ իրեն յաջորդեց իբր ամիր Սպասալար իր որդին Աւագ, որ աւելի բախտաւոր չեղաւ քան հայրը, վասնզի թէեւ Ջէլալէտտին, հալածուած Մոնկոլներէն մինչեւ Ամիթ փախաւ եւ հոն մեռաւ (1231). (տես. վերը, էջ 326), սակայն այս անգամ Մոնկոլները մարախի պէս տարածուեցան Վրաստանի, Թրիալէթի, Գուգարքի (=Սոմխէթ), Շաւշէթի, Ջաւախքի, Կղարջքի, Կարսի, Անիի եւ Դուինի շրջանները:

*«Ամէն տեղ լի էր դիակներով, քաղաքները, գիւղերը, դաշտերը, անտառները, լեռները, ձորերը, բոլորը, բացի բերդերէն, որոնք կրցած էին խուսափիլ: Ամէն տեղ կը տիրէր ողբն ու կոծը... հայրերը եւ մայրերը կը տեսնէին իրենց որդիները՝ ջարդուած, որդիները՝ իրենց ծնողներուն դիակները փռուած, ուրիշներ իրենց եղբայրները, իրենց ծնողները, իրենց քոյրերը, որս տարուած, իրենց կիները, իրենց որդիները, իրենց բոլոր հարստութիւնը ցրուած իրենց աչքերուն առջեւ»* (Brosset. Hist. de la Géorgie էջ 515, *Ազգագր. Հանդէս* Է.—Ը. էջ 322):

Ուխատա խանի (1229—1241) զանազան ուղղութեամբ ղրկած բանակներէն մին, Չարմաղանի հրամանատարութեամբ Հայաստանէն անցաւ Վրաստան, 1236ին:

Գէորգ Լաշա ապաստանեցաւ Աֆխազաց կողմերը, Ուսանեթի ամրոցը, թողլով իր երկիրը գրեթէ անպաշտպան:

1237ին, Թիֆլիսը գրաւուեցաւ Չաղատա զօրավարէն (Չամ. Գ. 211): Գէորգ Լաշա ընկճուած, համակերպեցաւ ենթարկուելու Մոնկոլ գերիշխանութեան, իր սպասալարին՝ Աւագին եւ անոր Շահնշահ զարմիկին խորհուրդով, որոնք նախապէս արդէն հնազանդած էին Մոնկոլներուն եւ իրենց իշխանութիւններուն մէջ վերահաստատուած:

Վրաստան — ինչպէս Մոնկոլներու հնազանդող ուրիշ իշխանութիւններ — պահեց իր ներքին ինքնավարութիւնը եւ օգտուելով իր լեռնային դիրքէն եւ դեռ բաւական ոյժ ունենալէն, արհամարհել սկսաւ Մոնկոլները եւ անկախութիւն ձեռք բերել աշխատեցաւ, մանաւանդ օգտուելով Մոնկոլներու զօրաւոր թշնամիներու դէմ մաքառելէն:

1242ին, երբ Հայաստան եւ Վրաստան արշաւող Մոնկոլ բանակներու հրամանատար՝ Չարմաղանին յաջորդեց Բաչու, ասիկա Գոնիայի Սելջուկ Սուլթանութիւնը հարուածելէ եւ 1243ին Կիլիկիոյ Հեթում թագաւորին հետ «սիրոյ եւ խաղաղութեան» դաշինք կնքելէ (տես. վերը, էջ 72.) վերջ, մտաւ Վրաստան, կրկին նուաճելու համար այս երկիրը որ Չարմաղանի ձեռքին տակ գործող զօրավարներէն Չաղատա արդէն անգամ մը նուաճած էր:

Ռուսուդան թագուհին (1243—1247), որ իր եղբօր՝ Գէորգ Լաշայի գահը յափշտակած էր, յաջորդութիւնը ապահովելու համար իր որդւոյն Դաւիթի (1) օրինաւոր ժառանգ Դաւիթը (2), Լաշայի որդին, Գոնիա ղրկեց, Ղայաս-էտ-տին Քայ Խոսրով Բ. Սուլթանին (1237—1247), իր աղջիկը — որ կնութեան տուած էր Սուլթանին — Գոնիա տանելու համար, գաղտնի համաձայնելով որ Սուլթանը զայն արգելափակէ իր քով *(*Չամ. Գ. 223*)*:

Բաչու, որ բնական է լաւ աչքով չէր դիտեր Ռուսուդանի եւ Սուլթանին բարեկամութիւնը, խորտակելու համար Վրաստանի ոյժը եւ քանդելու համար այս գործակցութիւնը, նոխ նուէրներով պատգամաւորներ կը ղրկէ Ռուսուդան թագուհիին, հրաւիրելով զայն որ գայ իր մօտ բարեկամութեան դաշինք կնքելու համար: Նոյն ատեն «խանն հիւսիսոյ» Բաթու, Ճինկիզխանի թոռը, իր կարգին կը ղրկէ պատգամաւորներ եւ յարգանքով թագուհին կը հրաւիրէ իր քով (Չամ. Գ. 222—3): Սակայն Ռուսուդան յանձն չ'առներ երթալ, քանզի գիտէր թէ անոնց նպատակը ցանկութիւնն էր, իր գեղեցկութիւնը համբաւուած ըլլալով (Չամ. Գ. 223):

Ռուսուդան, որուն բարոյականին մասին ժամանակակից Կիրակոս պատմագիր, շատ մեծ համարում մը չունէր, քանի որ զայն կը ներկայացնէր *«վաւաշ եւ կաթոտ որպէս զՇամիրամ» (Կիրակոս* էջ 126), օգտագործեց առիթը, իր ծրագիրը յաջողցնելու համար եւ Աւագ իշխանը եւ Շահնշահը իբր պատգամաւոր Չարմաղանին ղրկեց եւ իբր հաւաստիք հաւատարմութեան, Մոնկոլ բանակատեղին՝ նաեւ իր Դաւիթ որդին, իբր պատանդ, պայմանով որ իր մահէն վերջ Մոնկոլները Վրաստանի թագաւոր նշանակէին զայն. (Brosset. Hist. Ա. էջ 521) (3): Աւագ եւ Շահնշահ, որոնք *«շատ յարգուած էին թաթարներէն»*, Դաւիթը ներկայացուցին Չարմաղանին որ յարգանօք ընդունելով զայն ղրկեց Բաչու խանին, որ երկու տարի պատուով իր քով պահելէ վերջ, Քիուք խանին (1242–1248) ղրկեց:

(1) *Դաւիթ Դ. մականուանեալ «փոքր», որ* 1247—1259 *կամ* 1261 *գահակալած է,*

(2) *Դաւիթ Ե. մականուանեալն «մեծ» որ* 1243—1272 *գահակալած է ըստ ոմանց:*

(3) *Չամչեան* (Գ. 225) *այս գործը սոսկ Աւագին կը վերագրէ:*

Դաւիթ հինգ տարի պատանդ մնաց, Աւագին հետ: Այս կերպով Վրաստան հպատակեցաւ Մոնկոլներուն, որոնք Ռուսուդանի դարձուցին, ամբողջ Վրաստանը եւ Շամշուլդէն, զորս Իօզէր Նոյին ու Անչուրդան գրաւած էին, Աւագին գործակցութեամբ (Brosset. նոյն, 521. *Ազգագր. Հանդէս.* Է—Ը էջ 323–4):

Ռուսուդան թագուհին 1247ին կամ 1248ին մեռած ատեն (1), յանձնարարեց Աւագ իշխանին, որ որդւոյն օգնէ երբ ան Մեծ Մոնկոլին քով էն գայ, գահուն տիրանալու. քանի որ կար ուրիշ թեկնածու մը, Լաշայի որդին Դաւիթը, որ նոյնպէս Վրաստան չէր, այլ Կեսարիոյ մէջ արգելափակուած Իկոնիոյ Սուլթանէն։

Բաչու առիթը օգտագործեց, Վրաստանը տկարացնելու համար, ներքին պառակտումներով, ուստի Գագայ եւ Շամքորի տէր Վահրամ իշխանը, որդի Բլու Զաքարէին. ղրկեց Կեսարիա Դաւիթ Լաշեանը փախցնելու եւ իրեն բերելու համար, ինչ որ Վահրամ յաջողեցաւ (Զամ. Գ. 223):

Բաչու այն ատեն Դաւիթը ղրկեց Մեծ Մոնկոլին՝ Քիուքին, եւ զայն ներկայացուց իբրեւ Վրաց թագաւորութեան օրինաւոր ժառանգ (2):

Այսպէս, Մեծ Մոնկոլին՝ Քիուք խանի քով կը հաւաքուին Վրաստանի գահուն երկու թեկնածուներ. իրենց կողմնակիցներով։

Աւագ կը բարեխօսէր ի նպաստ Ռուսուդանի որդւոյն եւ Վահրամ՝ Լաշայի որդւոյն:

Քիուք խան, երկու Հայ ազդեցիկ իշխաններուն խնդրանքները նկատի առնելով, երկու Դաւիթներն ալ թագաւոր հռչակեց եւ ղրկեց Վրաստան (Brosset. Hist. Ա. էջ 512)։

Վահրամ բերաւ Լաշայի որդին Դաւիթը, Մծխեթա եւ օծել տուաւ: Վրացի եւ Հայ բազմաթիւ իշխաններ զայն ճանչցան թագաւոր եւ առաջնորդեցին Թիֆլիս: Դաւիթ կոչուեցաւ «Վահրամուլ», այսինքն «Վահրամէն դրուած»։

Իսկ Ռուսուդանի որդին, եկաւ Վրաստան, Աւագի հետ եւ իր մօրը նախասիրած Ուսանէթ ամրոցին մէջ հաստատուեցաւ (Զամ. Գ. 224):

Վրաստան այսպէս բաժնուեցաւ երկուքի, համանուն երկու Դաւիթ թագաւորներու իշխանութեան տակ:

Երկիրը՝ պառակտուած, նուաճուած եւ տկարացած, կ'ենթարկուէր սոսկալի հարկապահանջութիւններու եւ ասպատականութիւններու, որոնք պատճառ կ'ըլլան 1249ին ապստամբութեան (տես. վերը, էջ 328 նաեւ Զամ. Գ. էջ 224—5 եւ *Հայ ժողովրդի պատմութիւն* էջ 210–211. Գ. Ալբունեան *Արարատ* 1912 էջ 812):

Աւագ հակառակ էր այս ապստամբութեան, ուստի աշխատեցաւ հանդարտեցնել այս գաղափարը յղացողները, որոնք մատնուեցան, տագնապի ենթարկելով Հայաստանը եւ մանաւանդ Վրաստանը: Եւ որովհետեւ *«կարծիս առին Բաչու եւ այլ աւագանին, ամբարտաւանութեան եւ ապստամբութեան թագաւորին եւ իշխանացն Վրաց» (Վարդան* էջ 148. համմտ. *Կիրակոս* էջ 179–180), ձերբակալեցին Դաւիթ թագաւորը եւ մեծամեծները, եւ *«հատին վճիռ մահու, այլ ի խնամոց վերնոյն արձակեցին ի մահուանէ, սակայն անթիւս կոտորեցին, գերեցին գիւղս եւ ագարակս, գործեցին խայտառականս ի կանայս» (Վարդան* էջ 148*)*:

Իշխաններու մահավճիռը, չգործադրուեցաւ մանաւանդ Աւագի բարեկամ Չաղատա զօրավարին շնորհիւ, որ կրցաւ այս որոշումը անգործադրելի թողուլ *(*համմտ. *Կիրակոս* էջ 180*)*:

Աւագ Սպասալար մեծ դժուարութեամբ աղէտը մասամբ մեղմեց եւ թոյլ չտուաւ որ աւելի մեծ համեմատութիւններ առնէ *(*Զամ. Գ. 225*)*:

Յաջորդ տարին (1250) մեռաւ Աւագ եւ քիչ վերջը, Լաշայի որդին Դաւիթ որ ձերբակալուելով Հուլաղու խանին տարուած էր, արձակուեցաւ եւ Վրաստան դարձաւ, ճամբու վրայ հանդիպելով Բջնի, այցելելու համար Աւագի գերեզմանին:

Հոն կը տեսնէ Աւագի այրին՝ Վարդոյշ Գոնցա *(*Սաղաբերիձէն*)*, որ Ռազշայի էրիսթաւ Կախաբերի գերդաստանէն էր եւ շատ գեղեցիկ (Զամ. Գ. 225): Կը սիրէ զայն, անոր հետ կ'ամուսնանայ, (Brosset. Ա. 551): Գունցայէն կը ծնի Դեմետրէն որ յետոյ կը յաջորդէ իրեն:

Դաւիթ հակառակ անոր որ անգամ մը ձախողած էր Վրաստանի ապստամբութիւնը, երբ 1261ին Արղուն ոստիկանին հաստատած նոր տուրքերուն հետեւանօք արեւելեան Վրաստանի մէջ կրկին ըմբոստութիւն առաջ եկաւ, աշխատեցաւ օգտագործել ժողովուրդին դժգոհութիւնը, եւ ապստամբեցաւ ու ամրացաւ անառիկ վայրեր։ Բայց ինչպէս տեսնուեցաւ (տես. վերը, էջ 329), Հուլաղու զսպեց այս ըմբոստութիւնը անողոք խստութեամբ:

Այս առթիւ, Հուլաղու որ իր Պարսկաստանէն եկած ատեն հետը բերած էր Զանբայ (Զաղաքայ) ցեղէն Թէքուտար անուն էմիր մը, Վրաստանի մէկ մասին վրայ նորտ իշխան նշանակեց զայն: *(Իսլամ. Համայնագիտարան)*: Այսպէս Վրաստան բոլորովին ընկճուեցաւ:

Դաւիթ Վահրամուլ, մասնաւորապէս Օրբէլեան Հայ իշխաններու աջակցութեամբ կառավարեց իր երկիրը մինչեւ 1271:

Տարսայիճ Օրբէլեան, որուն խնամակալութեան տակ մեծցած էր Դեմետրէն— հակառակ ոմանց ջանքերուն որ ուրիշ մը թագաւորեցնեն,— յաջողեցաւ զայն գահ բարձրացնել եւ ինքն դառնալ Աթաբէկ կամ հազարապետ անոր թագաւորութեան (Զամ. Գ. 263)։

(1) *Ոմանք կ'ըսեն թէ անձնասպան եղած է Թոյնով, երկու Մոնկոլ զօրավարներուն զինքն հետապնդելէն տագնապելով:*

(2) *Ուրիշ պատմութեան մը համաձայն Շահնշահը եւ անոր որդին Զաքարէն, որ այդ ժամանակ սպասալար կարգուած էր, «Փիլիսոփայ եւ Հռետոր» Սարգիս Թմոկվելի եւ մի քանի ուրիշ իշխաններու հետ, Դաւիթը (Լաշայի որդին) տարին Բաթու խանին որպէսզի թագաւորեցնեն Վրաստանի։ Բաթու զանոնք պատուով կ'ընդունի, իր մօտը կը պահէ Զաքարէն, իսկ միւսները Դաւիթի հետ կը ղրկէ Քիուք խանին Ղարաղրում։*

Դեմերդէ (1272—1289) թագաւորեց, շրջապատուած Հայ իշխաններէն։

Արղուն Մեծ Մոնկոլը, (1224—1289) որ, իր հօրը Ապաղայի յափշտակուած գահը բարձրանալու համար Դեմերտէն օգնութիւն ստացած էր, (1) շատ բարեացակամութիւն ցոյց տուաւ հանդէպ անոր: Արղուն սիրեց Դեմեդրէ թագաւորը, «*եւ ետ նմա զամենայն աշխարհս Հայոց*» (*Օրբ. Բ.* 172):

Դեմեդրէ ըստ հին աւանդութեան Հայ իշխան մը, Սիւնեաց Տարսայիճ Օրբելեան իշխանը, կը դնէ «*Աթաբէգ ի վերայ ամենայն տէրութեան իւրոյ մինչեւ ի Տփղիս եւ յԱնի եւ 'ի Կարս*» (*Օրբ. Բ.* 173, *Ազգապատում*, էջ 1685 եւ 1690):

Բայց քանի մը տարիներ վերջ, Վրացի բազմաթիւ իշխաններ կ'ապստամբին Արղունէն եւ Արղուն զանոնք առանձին առանձին ձերբակալելով կ'սպանէ:

Արղուն նոյնպէս կասկածելով որ Դեմեդրէ թագաւոր եւս մեղսակից էր ապստամբներուն, զայն ալ սպաննեց Մովկանի դաշտին մէջ Կուր գետին եզերքը, 1289ին, (*Օրբ Բ.* 177. *Չամ. Դ.* 282)։

Ասիկա եղաւ մեծ հարուած մը Վրաստանի համար, որուն բարգաւաճման եւ մեծութեան համար այնքան աշխատած էին Զաքարեանք, Սելջուկեանց, շրջանին:

Մոնկոլական շրջանին սկիզբը, Զաքարեանք, հակառակ անոր որ Մոնկոլներուն հնազանդած եւ անոնց իշխանութեան ենթարկուած էին, դարձեալ չզլացան իրենց աջակցութիւնը Վրաստանի:

Աւագ Զաքարեան (1250 ✝) եւ իր յաջորդը Զաքարէ Զաքարեան, հակառակ անոր որ Մոնկոլներէն առած էին իրենց իշխանութիւնը եւ իշխանաց իշխան դարձած, պահեցին Վրաց արքունիքին մէջ էմիր սպասալարի պաշտօնը, եւ Օրբելեանք, որ վերջը իրենց սեփականեցին անոնց հողերը եւ իշխանութիւնը, նոյնպէս այս պաշտօնը վարեցին Վրաստանի մէջ եւ մեծ նեցուկ հանդիսացան անոր գահուն:

Ինչպէս տեսնուեցաւ Վրաստան Մոնկոլ բարբարոսներուն չկրնալով դիմադրել, չարաչար տուժեց:

Այս բարբարոսները քանդեցին ամէն ինչ որ Վրացիք ստեղծած էին քրիստոնէութեան Վրաստան մուտքէն սկսեալ մինչեւ իրենց պատմութեան ոսկեդարուն վախճանը։ Կործանեցաւ Վրաստանի քաղաքական անկախութիւնը, կորսուեցաւ իր սեփական մշակոյթը, իր գրականութիւնը եւ անշքացան եւ լքուեցան արուեստները:

Աննման ջարդուեցան ոչ միայն ընտրանին այլ նաեւ բնակչութեան զանգուածները եւ աւերուեցաւ երկիրը տնտեսապէս եւ բարոյապէս:

Բարբարոսներու տիրապետութիւնը տեւեց մէկ դարէն աւելի, եւ Մոնկոլներու տիրապետութենէն վերջ հին Վրաստանի ստուերն էր որ միայն ապրեցաւ:

Երկիրը բաժնուեցաւ քաղաքականապէս տկար պզտիկ իշխանութեանց եւ իջաւ ընդհանուր քաղաքակրթութեան չափանիշը: Իսկ իրենց գերիշխանութեան տակ գտնուող Հայ իշխանապետութիւնները, որոնք ուղղակի յարաբերիլ սկսած էին Մոնկոլներուն հետ, գրեթէ իրենց կապերը խզեցին Վրաստանի հետ եւ անկախ եղան:

## Բ. ԶԱՔԱՐԵԱՆՔ

Զաքարեաններու ծագումը եւ Սելջուկեանց շրջանին իրենց կատարած դերը, իբր կազմակերպողներ Վրա-Հայկական զօրաւոր տէրութեան, արդէն բացատրուած է (տես. վերը, էջ 285—289):

Երբ Մոնկոլները Հայաստան կը մտնէին երկիրին արեւելեան մասին մէջ անոնք կ'իշխէին, Իւանէի եւ Զաքարէի որդիներու իշխանութեան տակ, երկու ճիւղերու բաժնուած։

Լոռիի եւ Անիի շրջանները, Արագածոտն, մինչեւ Երասխ, Զաքարէ մեծի եւ անոր որդին Շահնշահի տիրապետորթեան եւ գերիշխանութեան տակ էին, իսկ Աղսդեւի գետէն սկսած, Բջնիի, Գեղարքունեաց, Վայոց Ձորի, Արցախի կարեւոր մէկ մասին եւ Սիւնեաց գաւառներով, մինչեւ Երասխ՝ կը գտնուէին Իւանէի տիրապետութեան եւ գերիշխանութեան տակ (տես. *Խաղբակեանք Բ.* էջ 69—70, ինչպէս նաեւ Ա. էջ 16—17):

Զաքարեանք, Հայաստանի Մոնկոլ տիրապետութեան ենթարկուելէն վերջ աւելի կամ նուազ յաջողութիւններով իրենց ստացուածքները իբր հողատիրութիւն պաշտպանեցին, միշտ գործելով իբր Վրաստանի պաշտօնատարներ, սակայն հետզհետէ ընկնուեցան եւ Հայաստանի մէջ իրենց գրաւած հողերը կորսնցուցին ու ամփոփուեցան իրենց սկզբնական կալուածին՝ Լոռիի մէջ:

Երբ Մոնկոլները Վրա-Հայկական պետութեան վրայ յարձակեցան 1221—1222ին, Վրաստանի թագաւորն էր Գէորգի Լաշա (1212—1243) եւ Իւանէ կը վարէր Աթաբէկութիւնը: Անոնք պարտուեցան թէ՛ Մոնկոլներէն եւ թէ՛ անոնց առջեւէն խոյս տալով Հայաստան եւ Վրաստան արշաւող Ջէլալէտտինէն (տես. վերը, էջ 70—71), ինչպէս նաեւ անկարող եղան դիմադրելու Մոնկոլ բանակներուն: (*Վարդան* էջ 190, *Պատ. Աղուանից* էջ 198—199. վերը էջ 71):

Իւանէ մեռաւ 1227ին եւ իր տեղը սպասալար նշանակուեցաւ իր որդին Աւագ (=Սարգիս) որ եղաւ մէկը այն Հայ իշխաններուն որոնք պարտաւորուեցան Ջարմաղանի բանակներուն դիմադրել 1236ին, առանձին, վասնզի յանկարծական այս ողողումին առջեւ ընդհանուր դիմադրութիւն մը չկրցան կազմակերպել Հայ եւ Վրացի իշխանները եւ ամէն մէկը իր գիտցած եղանակով ինքզինքն փրկել աշխատեցաւ:

Աւագ սպասալարն ալ Կայեան բերդին մէջ ամրացաւ. գաւառին բնակիչներուն հետ:

Մոնկոլ Տուշտա կամ Դոշտա զօրապետը առաջարկեց Աւագին անձնատուր ըլլալ, ապահով ըլլալով իր կեանքին համար: Աւագ իշխան, զայն բարեկամաբար հեռացնելու համար, Մոնկոլ զօրա-

(1) *Դեմեդրէ Թագաւոր Իւանէի հետ օգնեց Ապաղայի եղբօր՝ Ահմէտին երբ Խորասանի Նուէն ապստամբեցաւ* (*Brosset. նոյն. էջ* 600):

վարին կնութեան տուաւ իր աղջիկը եւ մեծ քանակու-
թեամբ դրամ:

Տուշատա աւելի խստութեամբ պահանջեց անձնատուութիւնը Աւագին, որ յուսահատ, իր տան վերակացուն խաչէնցի Գրիգոր Տղան բանագնաց ղրկեց Չարմաղանի բանակատեղին, Սեւանայ լիճին եզերքը։

Չարմաղան հրամայեց Տուշատային վերցնել բերդին պաշարումը եւ Աւագ իշխանը իրեն ղրկել:

Աւագ, 1240ին այցելեց նաեւ Մեծ Մոնկոլ Ուխաքայի (1227—1241): Ժամանակին պատմագիրը *(Կիրակոս էջ 142)*, կը պատմէ թէ Աւագ *«յանդիման լինէր մեծի արքային, եւ ցուցանէր նմա զգիրս զօրագլխոց իւրոց, եւ յիշեցուցանէր զպատճառս գալոյն առ նա. թէ ի ծառայութիւն եկեալ է նմա»*:

Մոնկոլ Մեծ խանը սիրով կ'ընդունէր զայն անոր կուտար թաթար կին մը եւ *«յուղարկէր զնա յիւր աշխարհն եւ գրէր առ զօրավարսն տալ զնա իձեռս նորա զիւր աշխարհն եւ նովաւ նուաճել զամենայն ապստամբսն, որ եւ եղեւ իսկ»* (հմմտ. Չամ. Գ. 214):

Այսպէս, Աւագ, իր ստացուածքներուն եւ իր իշխանութեան տիրացաւ Մեծ-Մոնկոլին հրամանով եւ աշխատեցաւ միւս իշխանները հնազանդեցնել Մոնկոլներուն:

Աւագի օրինակին հետեւեցան, նոյնիսկ իր խորհուրդով եւ թելադրութեամբ, միւս իշխանները, ինչպէս Վահրամ Զաքարեան (1), եւ իր որդին Աղբուղան, Շահնշահ որդի Զաքարէի (2), Խաչէնի իշխան Հասան Ջալալեան (3), Ելիկում Օրբելեան եւ *«այլք բազումք»*, *(Կիրակոս. էջ 142)*, հաստատելով իրենց իշխանութիւններուն մէջ:

Աւագի բարեխօսութեամբ իրենց ստացուածքներուն տիրացող այս իշխանները բոլորուեցան անոր շուրջը, իրեն կապուեցան եւ հնազանդեցան: Պատմագիրը կ'ըսէ *«զիւրաքանչիւր երկիր տային նոցա եւ առժամանակ մի ներում»*, այսինքն ապահարկութիւն *(Կիրակոս*, էջ 142)։

Աւագ նոյնիսկ յաջողեցաւ նոր հողամասեր ենթարկել իր իշխանութեան, եւ ստանալ իշխանապետի դիրք, զանազան ուրիշ իշխանութիւններ կամ տոհմապետութիւններ ալ իրեն ենթարկելով, վասնզի Մոնկոլները կեդրոնական եւ հարաւային Հայաստանի նոր նուաճուած մասերն ալ Հայ տանուտէրներու յանձնեցին՝ Աւագի ստորադասելով զանոնք:

Այսպէս, 1244ին Թաթարները գրաւեցին Խլաթը եւ զայն տուին Աւագ իշխանին քրոջը Թամթայի *(Կիրակոս*, 80—81. *Վարդան* 138), որ իր հայրը Իւանէ կնութեան տուած էր Նախ Բէյ խասու Սուլթանին եւ յետոյ Աշրաֆին, որմէ յետոյ ամուսնացած էր Ջէլալէտտին հետ *(Կիր.* 119):

Մեծ Մոնկոլը հովարտակով մը անոր շնորհեց *«զոր ինչ լեալ իցէ նորա՝ մինչ կին էր Մելիք Աշրաֆին»* եւ այսպէս անոր տրուեցաւ *«զԽլաթ եւ զգաւառսն որ շուրջ զնովաւ»*, *(Կիրակոս*, 161):

Այսպէս, ան ալ Աւագ իշխանաց իշխանին *(Կիր.* 176), շուրջ խմբուած հողատիրութիւններէն մէկը դարձաւ։

Աւագ հաւատարմօրէն ծառայեց Մոնկոլներուն եւ անոնց արշաւանքներուն մասնակցեցաւ ուրիշ Հայ իշխաններու հետ:

Աւագ, ինչպէս կը տեսնուի, իր խոհեմութեամբ ապահովեց թաթար տիրապետութեան տակ ոչ միայն իր սեփական հողատիրութիւնը այլ ուրիշ իշխաններուն ալ, որոնք միասնաբար կազմեցին *հայկական ինքնավար շրջան* մը, իր գլխաւորութեամբ կամ իշխանապետութեամբ, եւ իրեն ստորադաս ունենալով ուրիշ իշխաններ եւ նոյնիսկ վրացիներ՝ իրենց թագաւորով:

Այսպէս, Հայ իշխանները իբր ճորտ թաթար վեհապետներուն կը պահէին իրենց իշխանութիւնները, հողերը, եւ զինուորները:

Առանց ասոր անմեկնելի պիտի մնար Հայ իշխաններու Հայ զինուորներով մասնակցութիւնը թաթարական արշաւանքներու Աւագի գլխաւորութեամբ, 1242—1243ին դէպի Փոքր Ասիա, ինչպէս կը յիշատակուի զանազան առիթներով: Անոնք իրենց զօրքերուն գլուխը անցած անձամբ մասնակցեցան թաթարական արշաւանքներուն *(Կիրակոս* էջ 153 եւ 155) եւ մեծապէս օգտակար եղան քրիստոնեաներուն, գերիները գնելով եւ ազատագրելով, ինչպէս նաեւ փրկելով բազմաթիւ գրչագիրներ, զորս նուիրեցին զանազան եկեղեցիներու *(Կիրակոս*, 152—153. եւ *Պատմ. Հայ Կեսարիոյ* էջ 558 եւ 1841)։

Այսպէս, կը յիշատակուին Աւագէն զատ, Օրբելեան Էլիկումի որդի՝ Սմբատը, Դոփեան Գրիգորի որդին՝ Սեւադան (սպաննուած Տիգրանակերտ. տես. *Վարդան* էջ 199), Կիւրիկէ Գ.ին որդին Թաղիադինը (4), Պռօշի որդի՝ Հասանը (5), Շիրանշահեան Ուզի որդի՝ Հասանը (6), Լիպարիտի եղբօրորդին՝ Բուրթել եւ Սադունը եւայլն եւայլն, որոնք մասնակցեցած են Թաթարներու արշաւանքներուն եւ անոնց օժանդակած իրենց զինուորական ուժով:

Աւագ, իբր սպասալար կռուող Հայ բանակներուն գլխաւոր պետն էր:

Այսպէս, Աւագ իրեն համար շինեց դիրք մը եւ ինչպէս նաեւ կերպով մը, Վրաստանի վարիչը

(1) *Վահրամ իշխան Գագայ որդին էր Զաքարիա Բլուի կամ Պլուի (որդի Քարիմի) տէրն էր Շամքորի։*

(2) *Լոռիի տէրն էր եւ ամիրսպասալար Վրաց։*

(3) *Որդի Վախտանգ Բ. Տոնկիկի, մեծ իշխանին Խաչենոյ, փեսայ Բաղաց Թագաւորին: Ինքն շինած է 1240ին Գանձասարի վանքը: Նահատակուած է 1261ին ի Ղազուին։*

(4) *Մասնակցած է Հուլաղու խանի Պաղտատի արշաւանքին* (1256) *եւ Մուֆարղինի գրաւման* (1258):

(5) *Հասան կամ էմիր Հասան Ա. որդի Պռօշի և թոռ Վասակ Խաղբակեանի: Սպարապետ «տանն Աւագի», կինն է Թաճեր որ դուստրն է Ուքանի։ Հասանի որդին է Էաչի որ ամուսնացաւ Ելիկում Օրբելեանի աղջիկը՝ Մամախաթունի հետ։ Պռօշի մահէն* (1284) *վերջ յաջորդեց հօրը՝ իր եղբայր Պապաքի հետ, որ էր աւագ իշխանապետ։ Յիշատակուած է* 1268—88 *Թուականներուն։ Մեռած է* 1292*ին, իշխանութիւնը ձգելով Էաչի որդւոյն:*

(6) *Ուզի որդի, իշխան մեծ կողմանց, Շիրանշահենց տունէն։ Կեսարիայէն բերաւ Աւետարան մը եւ նուիրեց Եղիշէ Առաքեալ վանքին* 1266*ին* (Արցախ. 227), Պատմ. Աղուանից 145)։

հանդիսացաւ, եւ ապահովեց Մոնկոլներու վստահութիւնը եւ բարեացակամութիւնը իրեն եւ իրեն ստորադրեալ իշխաններուն համար:

Երբ Ռուսուդանը դժուար կացութեան մատնուած էր, Բաչուի եւ Բաթուի հրաւէրներուն պատասխանելէ խուսափելու համար, Աւագը եւ Շահնշահը ղրկեց Չաղաթային. ու Աւագը եւ 1244ին գերի բռնուած Խլաթի Սուլթանը, ղրկեց «զօրավար Հիւսիսոյ» Բաթու խանին (1242—1256*)*, որուն աթոռը Գազան էր Վոլկայի վրայ:

Աւագի հետ էր նաեւ իր *հեծունը* (սենեկապետը*)* Դաւիթ, Ախալցխայի կառավարիչ Իւանէի որդին:

Տեսնուեցաւ արդէն թէ Աւագ ինչպէս Գիւք խանին (1242—1251) (1) ալ ներկայանալով յաջողեցաւ իր պաշտպանեալ Դաւիթը՝ Ռուսուդանի որդին թագաւորեցնել (տես. վերը, էջ 339), հակառակ իր հօրեղբօրը՝ Զաքարիայի ջանքերուն որ Վրաստանի գահուն օրինաւոր ժառանգ Դաւիթ Լաշեանի կողմնակից էր եւ ինչպէս տեսնուեցաւ *(*վերը, էջ 339) յաջողեցաւ զայն թագաւորեցնել գոնէ Վրաստանի մէկ մասին վրայ:

Աւագի հեղինակութեան եւ ազդեցութեան վրայ գաղափար մը ունենալու համար կը բաւէ միայն ծանօթանալ իր եւ Եգարսլան անուն Վրացի իշխանի մը միջեւ պատահած միջադէպին:

Աւագ երբ Դաւիթ թագաւորը Վրաստան բերաւ բոլոր աւագանին դիմաւորելու եկաւ: Իմէջ այլոց եկած էր նաեւ Եգարսլան «որուն միայն թագաւորի տիտղոսը կը պակսէր» *(Ազգագր. Հանդէս. Է—Ը* էջ 325):

Եգարսլան որովհետեւ սովորական յարգանքը զլացաւ, Աւագ զայրացած մտրակով հարուածեց զայն: Եգարսլան ծաղր ու ծանակ եղած այլեւս չկրցաւ Վրաստան մնալ *(Նոյն)*:

Աւագ, այնքան զօրաւոր կ'զգար ինքզինքն որ կ'արհամարհէր Մոնկոլ երկրորդական պաշտօնատարները, որոնցմէ Ջօջբուղայի հետ խնդիր ունեցաւ (Չամ. Գ. 214*)*:

Մոնկոլ իշխաններու խորհուրդով երբ Աւագ զինուորական պատկառելի ոյժով մը ներկայացաւ Ջօջբուղայի, անիկա խոհեմութիւն համարեց անոյշ տեղը կապել խնդիրը, մտադրելով սպասել յարմար առիթին Աւագը ոչնչնելու համար, սակայն վերահաս կոկորդի հիւանդութեամբ մը մեռաւ, առանց Աւագին չարիք հասցնել կարենալու (Չամ. Գ. 222):

Որչափ ատեն որ Չաղաթա ողջ էր Աւագ յաջողեցաւ Մոնկոլ հարկապահանջութիւնը մեղմել, բայց Արղունի ժամանակները Հայ իշխանները կը նեղուէին հարկապանջութեամբ, երթեւեկութեամբ եւ զինուորութեամբ *«բայց զոր ոչ սպանանէին» (Կիրակոս* 142*)* *«կարի ժլատք էին,··· ոչ միայն ոչ բաւականային ուտելով կամ ըմպելով, այլ եւ պահանջէին երիվարս եւ հանդերձս մեծագինս, զի կարի յոյժ ծիասէրք էին» (Նոյն)*, այնպէս որ բոլոր ձիերը երկիրին առին եւ ոչ ոք կը համարձակէր պահել ձի կամ ջորի, վասնզի ուր որ կը տեսնէին կը յափշտակէին *(Կիրակոս*, 143*)*:

Աւագ դժգոհ այս կեղեքումներէն քաշուեցաւ Վրաստան Ափխազներու կողմերը: Չարմաղանի կինը, որ իշխանութիւնը կը վարէր անոր համրանալէն վերջ, երբ իմացաւ Աւագի փախուստը ոաստիկ զայրացաւ, պատճառ եղողներուն դէմ:

Ջօջբուղա պատժուեցաւ եւ պատգամաւորներ գացին Աւագը համոզելու: Աւագ դարձաւ եւ իշխանութեան մէջ վերստին հաստատուեցաւ *(Կիրակոս.* էջ 144 եւ Չամ. Գ. 214):

Եւ որովհետեւ Աւագ Մեծ Մոնկոլին մարդ ղրկելով ամէն ինչ տեղեկացուցած էր, խիստ հրամաններ եկան, որ Աւագին եւ այլ իշխաններուն ոեւէ վնաս չհասցունի, այլ միայն օրինական հարկը առնուի *(Կիրակոս.* 144*)*:

Այս առթիւ ոչ միայն Աւագին այլ նաեւ միւս Հայ իշխաններուն, շնորհներ եղան, ինչպէս նաեւ Վրաց Ռուսուդան թագուհիին, որ Աւագի միջնորդութեամբ խաղաղութեան դաշինք կնքեց Մոնկոլներուն հետ, եւ երկիրը, ժամանակ մը փրկեց ասպատակութիւններէն, թէեւ սաստիկ հարկապահիչութիւնը եւ կրօնական հալածանքը բառնալ կարելի չեղաւ:

Աւագ, շնորհիւ իր գրաւած վստահութեան, դարձաւ Հայաստանի գլխաւոր իշխանը եւ կերպով մը ներկայացուցիչի եւ միջնորդի դեր կատարեց Մոնկոլ խաներու եւ Հայ ու Վրացի իշխաններու միջեւ:

Տեսնուեցաւ թէ ինչպէս 1249ին, Հայ եւ Վրացի իշխաններ, առանց իրենց ուժերը կշռելու, անխոհեմութիւնը ունեցան, հակառակ Աւագի յորդորներուն, Վրաց թագաւորին հետ ապստամբելու եւ Աւագ ինչպէս աշխատեցաւ մեղմելու Մոնկոլներու զայրոյթը, (տես. վերը, էջ 339):

Ան անձամբ գնաց մեծ-Մոնկոլին, պատգարակով— վասնզի ծանր հիւանդ էր— իրմէն առաջ ղրկելով իր մայրը՝ Խոշաքը (կամ Խորիշահ) որ իմաստուն կին մըն էր: Ան իր զաւակին հաւատարմութեան հաւաստիքը յայտնեց եւ ըսաւ որ ան ալ կուգար հիւանդ վիճակի մէջ:

Աւագ յաջողեցաւ Մոնկոլները հանդարտեցնել (Չամ. Գ. 225): Միայն ապստամբութեան մեղսակիցները գանակոծութեան ենթարկուեցան եւ իրենց ինչքերը եւ ձիերը յափշտակուեցան եւ հողերը ասպատակութեան ենթարկուեցան, գերել քերբելով (Չամ. Գ. 225):

Աւագ մեռաւ 1250ին, (*Վարդան* էջ 148), ինչ որ դժբախտութիւն մը եղաւ Հայաստանի համար, վասնզի անիկա կրցած էր Թաթարաց վստահութիւնը գրաւել եւ դառնալ Հայաստանի եւ Վրաստանի համար կեդրոնական վարիչ դէմք մը:

Իր մահէն վերջ, որովհետեւ մանչ զաւակ չունէր (2), իր կալուածները Մոնկոլները տուին

(1) *Մանգոյ խանին ըսուած է բայց ժամանակագրապէս անկարելի է, վասնզի ան գահակալած է* 1251*ին Աւագի մահէն* (1250) *վերջ:*

(2) *Կ'ըսուի թէ ունեցած է ապօրէն որդի մը, որ իր աղջիկը՝ Խօշաք իր քովը առնելով անուցած է իբր իր հարազատ եղբայրը՝*

Շահնշահի որ Աւագի Զաքարէ հօրեղբօրը (✝ 1212) որդին էր:

Շահնշահ (✝ 1261)՝ իր հօրը Զաքարէի մեռած ատեն (✝ 1212) անչափահաս էր, եւ իր հայրենի ժառանգութեան տիրացած էր վերջը (*Կիրակոս* էջ 94—103, *Վարդան*, էջ 181—183), երբ Աւագ, իր զարմիկին խորհուրդ տուած էր որ ինքն ալ Մոնկոլներու հպատակութիւն յայտնէ: Արդարեւ, երբ Շահնշահ հնազանդութիւն յայտնելու գնաց, Մոնկոլները մեծ պատւով ընդունեցին զինքն եւ անոր դարձուցին թէ՛ Անին եւ թէ՛ իր միւս հողերը, (Brosset. Hist. de la Géorgie. Ա. էջ 517. *Ազգագր. Հանդէս* Է—Ը. էջ 323)։

Շահնշահ իսկական անունով Սարգիս, առած էր Շահնշահ տիտղոսը, «*ի պատիւ տէրութեան Անւոյ*» (*Խաղբակեանք Ա.* էջ 13) եւ իբր իշխանաց իշխան։

Ամուսնացած էր Քուրդ իշխանի որդին՝ Սադունի (✝ 1232), աղջկան Նաշուայի կամ Նազովդի հետ:

1236ին տեսանք թէ ինչպէս անիկա իր կեդրոնավայր քաղաքը Լոռին թողուց իր աներոջ Սադունին եւ ինքն փախաւ:

Սադուն, ապաւինելով քաղաքին պարիսպներուն ամրութեան, իրեններուն հետ կերուխումով ժամանակ անցուց, մինչ Մոնկոլները կրցան պարիսպը քանդելով քաղաք մտնել: Անոնք գտան Շահնշահի գանձերը, սպաննեցին Սադունը (1237 ✝) եւ սուրէ անցուցին բնակիչները: Մոնկոլները յետոյ յարձակեցան ուրիշ քաղաքներու վրայ: Շահնշահի որդին՝ Զաքարիա, Վրա-Հայ բանակին սպասալար անուանուեցաւ, իսկ ինքն մնաց առանց տանուտիրութեան ընչազուրկ:

Մոնկոլները կ'երեւի թէ սիրաշահելու համար Զաքարեանները, Աւագի մահէն (1250) վերջ, անոր կալուածները տուին Շահնշահի, բայց քիչ ժամանակ վերջը առին անկէ եւ տուին Աւագի կնոջ՝ Գոնցայի, որ ինչպէս տեսնուեցաւ, Վրաստանի Դաւիթ թագաւորին հետ ամուսնացաւ (տես վերը, էջ 339):

Գոնցայէն վերջ, Աւագի հողերուն իշխած է իր աղջիկը Խոշաքը, զոր վրաց պատմագիրը Վախուշտ (էջ 6) ոչ թէ Գոնցայէն այլ Մեծ Մոնկոլէն տրուած թաթար կնոջմէն ծնած կը կարծէ։ ինչ որ շատ հաւանական չէ:

Խոշաք (կոչուած նաեւ Խորիշահ) այսպէս տէր կը դառնայ Բջնիի, Գառնիի եւ այլ, ինչպէս կը հաստատեն 1257—1297 թուականով արձանագրութիւններ: Յիշատակարանի մը մէջ գրուած է “*յաշխարհակալութեան Ապաղղանին. իշխանութեան Խօշաքին*”, որով որոշ է որ երկրին գերագոյն իշխանը, Ապաղայէն վերջ, Խօշաքն էր, որ ժառանգած էր իր հօրը իշխանութիւնը (տես. *Խաղբակեանք Ա.* էջ 142, հմտ. Օրբէլեան Բ. էջ 165 :

1270ին Զագավանքի ժողովին կանոններու տակ ան կը յիշուի իբր «*Պարոն Արարատեան նահանգին*», Պռօշ, Սադուն եւ Սմբատ իշխաններուն հետ (*Շողակաթ Ա.* 23, եւ *Խաղբ. Ա.* էջ 97):

Խոշաք ամուսնացած էր թաթար մեծ իշխան եւ Հուլաղու խանի դիւանապետ Սահիպ Դիւանի Խոջա Շամշադինի հետ 1269ին (Աճառեան (*Անձն. բառարան.* Բ. էջ 524) (1):

Իր ամուսնոյն թելադրութեամբ կ'սպաննէ իր մայրը՝ Գոնցան (*Նոյն*)։

Ուրիշ պատմութեան մը համաձայն Զաքարեանց հակառակորդ Օրբէլեան տոհմէն Սմբատ իշխան, տիրապետելու համար Աւագի երկիրներուն, Մոնկոլներու թոյլատուութեամբ ինքն սպաննած է Գոնցան (Օրբ. Բ. էջ 165 եւ Չամ. Գ. 259), իսկ անոր աղջիկը՝ Խոշաքը կնութեան տուած է Մոնղոլ իշխանի մը (Չամ. Գ. 260. եւ 282), որով Խոշաքի կեանքը փրկուած է սակայն անոր հողերը անցած են թաթարներու ձեռքը:

Իսկ Զաքարեաններու միւս ճիւղը, այսինքն Զաքարիայի (1212 մռ.) սերունդները, որոնք տէր էին Լոռիի, Անիի եւ Անբերդի, վերստացած են Վրա-Հայ բանակին էմիր-Սպասալարի պաշտօնը, որուն կոչուած են իրենց կալուածներուն Մոնկոլներէն գրաւուելէն վերջ։ Զաքարիա (2), (Շահնշահի որդին) բացի մանր պատերազմներէն, 1257ին Հուլաւուն խանին եւ Կիւրիկեան թագաւորութեան վերջին շառաւիղ Թաղիատին իշխանին հետ արշաւեց Ասորիք եւ Միջագետք (Չամ. Գ. էջ 256 եւ 260):

Արղուն որ սաստիկ կը կեղեքէր Հայաստանը հարկերով, Զաքարիան ամբաստանեց զրպարտութիւններով Հուլաղուի առջեւ, անոր վերագրելով թշնամիներուն հետ գործակցութիւն եւ վրացիները ապստամբութեան գրգռելու յանցանքով (3) եւ հրաման ստացաւ Հուլաղուէն զայն սպաննել: Այս նպատակով զայն իր քով կոչեց եւ սպաննել տուաւ 1261ին (*Չամ. Գ.* 260— 261) (4):

Իր հայրը՝ Շահնշահ որ տակաւին ողջ էր վիշտէն մեռաւ իր որդւոյն սպանութիւնը իմացած օրը իսկ (*Վարդան*, էջ 153):

Բացի Զաքարիայէն, Շահնշահ ունէր երեք ուրիշ որդիներ, Իւանէ (✝ 1284), Արտաշիր եւ Աւագ (5): Ասոնցմէ Իւանէ տէրն էր Անբերդ եւ Արագա-

(1) Brosset. (*Hist.* Ա՛ 569), *կ'ըսէ թէ երեք անգամ անգամ ամուսնացած է, նախ Սէլի Ցարզուի-Խօճա Շէմսէտտինի հետ, յետոյ Սալթուն Մանկաբերդելի* (Brosset. *էջ* 554) *եւ ի վերջոյ Սահիպ Դիւանի հետ։* (Brosset. *էջ* 575)։ *Ամէն պարագայի մէջ որոշ է որ* Brosset. *շփոթութեան մէջ է եւ իրար խառնած անունները: Ունեցած է Զաքարիա անուն զաւակ մը որ Գէորգի Ե. փառահեղի ժամանակակից էր* (Brosset. *նոյն. էջ* 641—842), *և պարոն՝ կառայքի* 1297—1325 *թուականներուն։ Ներած է Բջնիի զանազան տուրքերը,* (*Հ. Աճառեան* Հայոց անձնանունների բառարան Բ· *էջ* 184 - 5):

(2) *Զաքարիա, նոյնանուն Զաքարեաններու երրորդը. ամուսնացած էր Օլթիի իշխան Սարգիսի աղջկան հետ՝*

(3) *Պրոսէ* (Ա· 568) *կը հաստատէ Զաքարիայի թաթարներու դէմ ապստամբելու խորհուրդը եւ կ'ըսէ թէ խայտուած էր Վրաց Նարին-Դաւիթ* (*Ռուսուդանի որդի*) *թագաւորին քով, Քութայիս։*

(4) *Պրոսէ, Զաքարիայի սպաննութիւնը ուղղակի Հուլաղուի գործը կը համարէ, ըսելով թէ ան երդում տալով որ ոչ մէկ վնաս պիտի հասցնէ իր մօտը կը հրաւիրէ եւ կ'սպաննէ այս* «նշանաւոր եւ յարգելի *և* ամէն առաքինութեամբ օժտուած մարդը»:

(5) *Չամչեան* (*Գ·* 260) *կը յիշէ ուրիշ մըն ալ՝ Սարգիս անունով։*

ծոտն գաւառներուն եւ պետը՝ մանտատորներու *(Մանտատուր-Թախուցէսի)*: Իր մօտ հաւաքուեցան վրաց թաւատները եւ ուղեկցեցան Դեմեդրէի, երթալու համար խանին, որպէսզի զայն թագաւոր ճանաչէ (1272) (Brosset. Hist. Ա. 586): Տեսնուեցաւ (վերը էջ 340) որ Իւանէն Դեմերդէին հետ գնաց Ահմետին օգնելու, երբ Ապաղա խանին մահէն վերջ Խորասանի Նուին ապստամբեցաւ: Իւանէ յաղթեց (Brosset. Նոյն. էջ 600) եւ ասով ապահովեց Մոնկոլներու բարեկամութիւնը Դեմեդրէ թագաւորին:

Արտաշիրի եւ Աւագի մասին տեղեկութիւններ կը պակսին:

Իւանէ ունէր աղջիկ մը եւ երկու որդի՝ Շահնշահ եւ Աղբուղա (1), ո՛ր էր տէր Այրարատի Թալին գաւառին:

Աղջիկը ամուսնացած էր Տարսայիճի որդի Ջալալին հետ:

Շահնշահ (Բ.) ամիրսպասալար նշանակուեցաւ: Էր նաեւ Աղիւտանդներու եւ Մանդատորներու պետ: Ամուսնացած էր Խուանդզայի (2) հետ որ դուստրն էր Շամշադին Սահիպ-Տիւանի: Շահնշահ տէրն էր Անիի: Կը յիշուի իբր «*հէճուպ եւ առաջնորդ տան մեծի աթապակ ամիր սպասալար Շահնշահին*» Զաքարիա Պահլաւունին, «*քաջ եւ ընտիր պատերազմող*», զօրականը, ըստ 1315ին գրուած յիշատակարանի մը (անտիպ. Փիրղալէմեանի ժողովածուէն տես. *Խաղբակեանք Ա.* էջ 16): Անիկա ցոյց կուտայ իր իշխանութեան փառաւոր հանգամանքը: Իր մահէն (✝ 1320) վերջ Անիի տէր եղաւ իր որդին Մըխարգրձէլ (= Երկայնաբազուկ) Զաքարէ Սպասալար որ ամուսնացած էր Սադուն աթաբէկի դուստր Վանենի հետ:

Զաքարէ Անիի տիրապետութիւնը վարած է 1320էն 1358: Իրմէն սերած էին Պալլինով Մխարգրձել վրացի իշխանները:

Այս Զաքարէին յաջորդած է 1358ին իբր Անիի տէր Շահնշահ իր որդին *(Շիրակ.* էջ 101. 62. 74): Կեռան թագուհիի համբաւոր Աւետարանին մէջ (Էջմիածին նոր ցուցակ. թ. 1804. երբեմն պահուած Գանձակի Ս. Լուսաւորիչ եկեղեցին) 1357 թուականով յիշատակարան մը, կը խօսի Անիլի վրայ «*որ է առաջնորդ եւ հիմն քաղաքին Անոյ, իրաւարար եւ արդարադատ*»:

Ուրեմն Զաքարեանք Անիի մէջ կը պահէին իրենց իշխանութիւնը մինչեւ Մոնկոլ իշխանութեան վերջերը, իրենց ձեռքին տակ ունենալով կարեւոր պաշտօնատարներ:

1357ին Անի աղէտի մը ենթարկուած է, վարնգի գրուած է թէ «*պարոն Անիլ բազում վիշտս եւ արտմութիւնս կրեաց վասն աւերման մայրաքաղաքի Անոյ. քանզի իբրեւ զողայս ծնողաբար սնուցեալ էր զնոսա եւ հաւատարիմ կացեալ իվերա տանն պատրոն Աթապակ Շահնշահին եւ ամենայն բազմութեան տան իշխանութեան նորայ ի ձեռս նորա եղեալ եւ զամենայն հոգս ըստ Աստուծոյ հաճոյիցն հոգար եւ հաւանեցուցանէր, որք ընդ ձեռամբ պատրոն Շահնշահի էին*» (տես. *Խաղբակեանք, Ա.* էջ 16):

Իսկ գաղափար մը կազմելու համար աղէտին վրայ որ նոյն թուականին (1357) կը հարուածէր Անին, Զաքարեանց ոստանը, պէտք է կարդալ յիշատակարանին սա տողերը:

«*Սատակեցին առաջի ծնողաց զողայն եւ առաջի զողայոց զծնողսն եւ զորս ընբռնեալ տանէին գերիս, բանտից եւ տանջանաց մատնեալ, եւ բարերարն Աստուած տեսեալ եւ անտեռ առնէր վասն անբաւ չարեաց մերոց: Որոց գլուխ աթապակ եւ մեծ սպասալար Շահնշահ, որ հազիւ կարաց զերծանել ի ձեռաց թշնամեացն*»: *(Խաղբակեանք, Բ.* էջ 16):

Մոնկոլ կայսրութիւնը Ապուսայիտի մահէն (1336) վերջ, անիշխանութեան երբ մատնուեցաւ, Զաքարեանք հետզհետէ կորսնցուցին իրենց ճոխութիւնը եւ իշխանութիւնը:

Նոյն տոհմէն, 1358ին Աթապակ Զազան, որդին Աթաբակ վերոյիշեալ Շահնշահի, Բջնիի մէկ արձանագրութեան մէջ կը պատմէ թէ Մելիք Աշրաֆը (3), «*զ:Մեր հայրենիքս զԲջնի քաղաք յեսնէ հաւքմով խլեր էր, զիր ճորտերն էսիր* (= գերի) *կացուցեր, եւ Հանի բէկ նիազեցավ ու զքաղաքս ի հիմանց քակեց ու շատ յանուանի մարդ ի սուր քաշեց եւ զեկեցիքս տապալեց եւ զերկիրս ի չորս դիաց անբնակ արար...*»: (*Խաղբ, Ա.* էջ 229):

Ինչպէս կը հասկցուի Մոնկոլները այդ խառնակ ժամանակամիջոցին վճիռներով *(Հուքմ,)* կը գրաւէին Հայ իշխաններու հողերը եւ զանոնք բոլորովին կը զրկէին իրենց իրաւունքներէն:

Զաքարեանք թէեւ տոկացին մինչեւ ԺԴ. դար բայց ի վերջոյ բոլորովին անհետացան:

Միայն վերջին ժամանակներուն սկսան փայլիլ նորէն եւ Արղութէ իշխանին անունով կոչուեցան Արղութեան— Երկայնաբազուկ, *(Ազգագր. Հանդէս. Է—Ը,* էջ 329):

## Գ. ՎԱՀՐԱՄԵԱՆՔ

Վահրամեանք, ինչպէս բացատրուած է, Զաքարեանց մէկ կողմնակի ճիւղը կը ներկայացնէին: Խնամիացած էին Խաչէնի իշխանական տան եւ տիրացած՝ Կիւրիկեան թագաւորներուն հողերուն:

Պլու կամ Բլու Զաքարէ որդի Քարիմի, որ կը տիրէր Գագայ, յաջողութեամբ կռուեցաւ Մոնկոլնե-

(1) *Ամուսինը Սիթի Խաթունի: Յայտնի չէ ի՞նչ եղած է:*

(2) *Իր ամուսինին՝ Շահնշահ ամիրսպասալարի մահուան տարին* (1320) *ունի մեծ արձանագրութիւն մը ուր նախ կ'ըսէ թէ իր ամուսինը* «յայսմ ամի ել յաշխարհէ եւ տրտմութիւն մեծ եղեւ մեզ եւ աշխարհիս արեւելից» *և ապա կը ջնջէ Անիի կովի և էշի հարկը, ինչպէս նաեւ մեծի և փոքրի «դանագիր» կոչուած հարկը* (Շիրակ *էջ* 62): *Հաւանօրէն իր որդին Զաքարէ անչափահաս ըլլալով խնամակալ պէտք է եղած ըլլայ:*

(3) *Մելիք Աշրաֆ, ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 334) եղբայրն էր Փոքր Շէխ Հասանի որ սպաննուեցաւ 1358ին Ջանի բէկին կողմէն:*

ռու դէմ Իւանէ աթաբէկի հրամանին տակ Կոստանի դաշտին մէջ 1214ին, (տես. Հ. Աճառեան *Հայ Անձնանունների բառարան Բ*. էջ 180):

Բլու Զաքարէ, պաշտպանութեամբ եւ օգնութեամբ իր ազգական Սպասալար Զաքարէ եւ Իւանէ եղբայրներուն, կը գրաւէ հետզհետէ Արցախի Գարդման, Քարահերձ, Երգեւանք, Տաւուշ, Տէրունական (=Դրըկեան), Կածարէթ եւ Գագ ամուր բերդերը եւ կ'իշխէ անոնց վրայ, իբր վասալ Զաքարեաններու։

Իր որդին՝ Վահրամ իշխան, կ'առնէ Շամքոր քաղաքը եւ կ'իշխէ բոլոր այդ շրջանակին վրայ:

Վահրամի գլխաւոր կայանն էր Կողբ գաւառը (Մակար եպս. Բարխուտարեան. *Պատ. Աղուանից* էջ 192)։

1220—1221ին Խունանի ճակատամարտին կը մասնակցի այս Վահրամ իշխանը եւ անտեղեակ Գէորգի Լաշա Վրաց թագաւորին եւ Իւանէ Աթաբէկին փախուստէն, ինքն քաջութեամբ կը կռուի եւ կը յաջողի Մոնկոլները հալածել մինչեւ Գարդմանի սահմանները (տես. Վարդան էջ 142: վերը, էջ 337):

1236—1238ին երբ Չարմաղանի զօրավարներէն Մոլար Նունին, դէպի Շամքոր կ'առաջանայ, Վահրամ իշխան եւ որդին Աղբուղա խոյս կուտան, եւ Մոնկոլները կը գրաւեն իրենց նստոցը՝ Շամքորը, (Կիրակոս էջ 128, Վարդան, էջ 144—145, եւ Չամ. Գ. էջ 208—9):

Բայց ինչպէս շատ մը իշխաններ, Վահրամ ալ, նոյնիսկ Աւագի խորհուրդով եւ անոր օրինակով, հնազանդութիւն կը յայտնէ Մոնկոլներուն եւ հարկ տալու յանձնառութեամբ կը դառնայ իր հողերը, (տես. *Կիրակոս* էջ 142 վերը. էջ 341):

1242—1244ին երբ Բաչու կ'արշաւէ դէպի Փոքր Ասիա եւ Միջագետք, Աղբուղա, Վահրամի որդին, Աւագի եւ այլ Հայ իշխաններու պէս, ինքն ալ Մոնկոլ բանակներու կը զօրակցի իր զինուորներով, (*Կիրակոս*. էջ 153 եւ 155):

Վահրամ իշխան կ'երեւի թէ մին էր այն Հայ իշխաններուն որոնք Մոնկոլներու վստահութիւնը գրաւած էին, վասնզի 1247ին Բաչու անոր կը յանձնարարէ երթալ Կեսարիա եւ ազատել Վրաց Գէորգի Լաշայ թագաւորին որդին Դաւիթը, որ Ռուսուդան թագուհին, Սելջուկ Սուլթանին բանտարկել տուած էր, զայն զրկելու համար իր գահակալութեան իրաւունքէն (տես. վերը, էջ 338)։

Վահրամ իր այս փափուկ պաշտօնին մէջ կը յաջողի եւ Դաւիթը ազատելով կը տանի Մեծ Մոնկոլ Քիւք խանին (1242—1248), որուն հրամանով Դաւիթ կուգայ թաթար զօրքով Վրաստան, ընկերակցութեամբ Վահրամի եւ կ'օծուի թագաւոր Վահրամի աջակցութեամբ (Կիրակոս. էջ 158—159): Այս պատճառով, ինչպէս վերը (էջ 339) յիշուեցաւ, Դաւիթը կոչուեցաւ «*Վահրամուլ արքայ*» (Չամ. Գ. 223):

Իրեն յաջորդած է իր որդին Աղբուղա, որ կը տիրէր Գագայ եւ Շամքորի։

Ունեցած է երեք զաւակներ, Վահրամ, Զաքարէ եւ Իւանէ (*Կիրակոս*. էջ 79), որոնք ԺԳ. դարուն կը յիշուին. (Հ. Աճառեան, *Հայոց Անձնանունների բառարան* էջ 401. *Հայապատում Գ*. էջ 475):

Ասոնց եւ իրենց յաջորդներու գործունէութեան մասին տեղեկութիւններ կը պակսին:

## Դ. ՎԱՉՈՒՏԵԱՆՔ

Զաքարեանց երեք ճիւղին, ենթարկուած հողատէրներէն էին Վաչուտեանք, որոնք հաստատուած էին Արագածոտն գաւառին մէջ Կարբի վիճակին Անբերդ ամրոցին շուրջը: Այս կալուածները ստացած էին Զաքարեաններէն, իբր շնորհ, Սելջուկեանց շրջանին:

Ասոնց պատմութիւնը մինչեւ 1270 արդէն ներկայացուած է (տես. էջ 290)։

Այդ թուականէն վերջ թէեւ իշխաններու շարքը անծանօթ կը մնայ սակայն անոնք պահած են իրենց գոյութիւնը մինչեւ ԺԴ. դար ինչպէս կը հաստատուի 1311 թուականով Սաղմոսավանքի Ս. Սիոն եկեղեցւոյն արեւմտեան պատին վրայ գտնուող Վաչէ իշխանի արձանագրութենէն (Մեսրոպ եպս. Մագիստրոս Մովսիսեան. (*Հայկ. երեք մեծ վանքեր*, էջ 109)։

Ամէն պարագայի մէջ Մոնղոլներու տիրապետութեան շրջանին վերջերը այս տոհմը շատ անշքացած պէտք է ըլլայ, եւ ասոր համար անյիշատակ մնացած իր անունը:

## Ե. ՄԱՀԿԱՆԱԲԵՐԴԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Այս Արծրունի իշխանութեան վրայ գրեթէ ամբողջական տեղեկութիւն տրուած է (վերը, էջ 269—270):

Ինչ որ հոս հարկ է շեշտել սա է որ Վրաց թագաւորները ասոնց վստահած էին Թիֆլիսի քաղաքապետի պաշտօնը եւ Սադուն, որ Մոնկոլներու ծառայած էր, Աւագ Զաքարեանի մահէն (1250) վերջ, կոչուեցաւ Աթաբէկութեան պաշտօնին կամ աւելի ճիշտ, ինքնավար Հայ իշխանութիւններուն իշխանապետի կամ նախաթոռի դիրքին, եւ մօտաւորապէս 25 տարի (1250—1275) Հայաստանը կառավարեց (տես. վերը, էջ 270. եւ էջ 330, նաեւ *Խաղբակեանք Բ*. 38 եւ 149)։

Սադունի մահէն (✝ 1284) վերջ, իր որդին Խութլուբուղա կամ Խութլու շահ, ԺԳ. դարուն վերջերը եւ ԺԴ. դարուն սկիզբները, ծառայած է թաթար բանակին մէջ իբր զօրավար եւ մեծ յաղթութիւններ տարած է: Դաւաճանաբար սպաննուած է 1308ին. (Աճառեան. *Հ. Անձն. Բառարան*, 557—559):

Իրմով կը թուի վերջ գտած ըլլալ այս իշխանութիւնը (*Խաղբակեանք. Բ*. 38 եւ *Հաւուց Թառ* էջ 62):

## Զ. ԴՍԵՂԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Այս իշխանութեան հողերը կը գտնուէին, ինչպէս բացատրուած է, Վետի գետի ակունքներուն շուրջը Ջղենգեօլի եւ Ճերմանիսի որաձկներով: Իրենց պատ-

մութիւնը տրուած է գրեթէ ամբողջական կերպով, նշանաւորութեան սահմանին մէջ, եւ մինչեւ ԺԳ. դար (տես, վերը, էջ 273—274)։ Հոս ոչինչ ունիմ աւելցնելու, այս Մամիկոնեան տան շառաւիղ իշխանութեան կեանքին վրայ, որ Սելջուկեան շրջանին իր խնամիական յարաբերութիւններով նշանաւոր եղած է, թէեւ իբր իշխանութիւն կամ ոյժ շատ աննշան։

## Է. ՄԱԾՆԱԲԵՐԴԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Սելջուկեանց տիրապետութեան վախճանին մօտ, իբր վերջին ոստ եւ իբր յաջորդութիւն Բագրատունի տան, Վրաստանի արքայական ընտանիքին հետ, կը տեւէր միայն Մածնաբերդի Բագրատունի թագաւորութիւնը։ Երբ Մոնկոլներու արշաւանքը կ՚սկսէր, Մածնաբերդի վրայ կ՚իշխէր Աղսարթան Ա. (1192—1232) որուն տունը, ինչպէս տեսնուեցաւ, խնամիացած էր Զաքարեանց եւ անոնց ազդեցութեան ենթարկուած (տես. վերը, էջ 261—262)։ Երբ Աւագ հպատակութիւն յայտնեց Մոնկոլներուն, Մածնաբերդի Բագրատունին ալ հպատակեցաւ եւ անոնց պէս Մոնկոլ բանակներու գործակցեցաւ։

Աղսարթան Ա.ի յաջորդին եւ որդւոյն Կիւրիկէի իշխանութեան շրջանին Մոնկոլները գրաւեցին Մածնաբերդը, Կիւրիկէ 1245—1246ին տակաւին ողջ էր, վասնզի Խորանաշատի վանքը ուխտի գացած է (*Հ. Աճառեան Անձնանունների Բառարան. Բ. հտ. 640*)։ Այս Կիւրիկէի որդիները, Թաղիաթին (1256—1259) Փահլաւան (1256—59), եւ Աղսարթան Բ., վերջին յիշատակուած թագաւորներն են (վերը, էջ 262)։ Իրենց յաջորդները անյայտ կը մնան եթէ երբեք գոյութիւն ունեցած են։

Թաղիաթին մասնակցած է Հուղալուի Պաղտատի արշաւանքին 1258ին եւ Մուֆարղինի գրաւման՝ 1251ին։ (Չամ. Գ. էջ 526—227)։ Հոն ձեռք բերած է Ս. Բարթուղիմէոսի աջը, որ փոխադրած է Հաղբատի վանքը։ (Աճառեան *Նոյն*)։

## Ը. ՇՈԹՈՌԿԱՆՑ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Գարեգին Կաթ. Յովսէփեանց կ՚ըսէ թէ «տարաբախտաբար մեր ձեռքը հասած աղբիւրները քիչ են, եղածն ալ միայն կարճ ժամանակամիջոցի համար, ուստի եւ հանգամանօրէն չենք կարող պարզել Շոթոռկանց տոհմի ծագման, կատարած դերի մասին մեր պատմութեան եւ ոչ ճշդիւ որոշել նրանց իշխանութեան սահմանները» (*Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ Ա.* էջ 30)։

Զաքարեանց շրջանի պետական կազմակերպութեան համաձայն երկիրին ընդհանուր տէրերը կամ գերագոյն իշխանները Զաքարէ եւ Իւանէ եղբայրներն էին իրենց սերունդներով։ Անոնց ենթարկուած էին կարգ մը իշխաններ, որ ըստ զինուորական կազմակերպութեան անոնց սպարապետները կամ զօրավարներն էին եւ ըստ վարչականին անոնց ստորադասեալները (*Նոյն.* էջ 30, հմմ. *Խաղբակեանք.* Ա. էջ 16—22)

Անոնք ալ իրենց կարգին իրենց ստորադաս սպարապետները եւ կալուածատէր իշխանները ունէին, որոնք «ազատ» կը կոչուէին։

Այսպէս, Շոթոռկանց իշխանները Զաքարիա մեծի զօրավարներն էին եւ ունէին իրենց կապուած ազատներ։

Անոնց կալուածները կը գտնուէին Հաղբատի եւ Սանահինի միջեւ, Խծկոնքի եւ Մրենի շրջաններուն մէջ կամ Անիի, Տեկորի կամ Բագարանի շրջաններուն մէջ։ Անոնց տոհմային դամբարանը Սանահինի մէջ էր։

Հաւանօրէն այս կալուածները տրուած պէտք է ըլլան Զաքարիայէն։

Ըստ Գարեգին Կաթողիկոսի (*Նոյն* էջ 34) տոհմին հիմնադիրը պէտք է ըլլայ *Շոթռիկ* կամ *Շոթոռիկ* որուն անմիջական սերունդը կամ սերունդներէ է *Գրիգոր* որ թաղուած է Սանահին։ Իր որդին Դաւիթ այդ գերեզմանին վրայ կանգնած է փառաւոր եւ հնագիտական-գեղարուեստական տեսակէտէն շատ հետաքրքրական խաչարձան մը (*Խաղբակեանք,* էջ 17)։

Դաւիթ իշխան իշխանաց եւ պարոն, որդի Գրիգորի Շոթոռկանց, յիշատակուած է Հաղբատի, Սանահինի եւ Խծկոնից վանքերու արձանագրութեանց մէջ 1210—1236 թուականներուն։ 1221ին նուէրներ ըրած է Բագարանի Մայր եկեղեցիին, եւ 1222ին՝ Սանահին վանքին։ Զաքարէ սպասալարի զօրավարն էր (Հ. Աճառեան *Հայոց Անձնանունների Բառարան Բ.* էջ 43)։ Անոր հետ Զաքարիա սպասալար հողերու փոխանակութիւն կ՚ընէ եւ Հաղբատին կը նուիրէ 1210-ին (*Խաղբակեանք, Ա.* 17)։

Իր եղբայրներն էին Սարգիս եւ Շէրպարիք (*Նիւթեր եւ Ուսումն. Ա.* էջ 34)։

Դաւիթի որդին եւ յաջորդն էր *Գրիգոր* որուն եղբայրն էր Գայլ-Շէրպարիք (թերեւս երկու անձ)։ Դաւիթ եւ իր որդիքը՝ Գրիգոր եւ Գայլ-Շէրպարիք Խծկոնից Ս. Սարգիսին կը նուիրեն Վանանաւին գիւղին կէսը։

Պարոնաց պարոն Գրիգոր 1240ին կը յիշուի, հաւանօրէն անկէ քիչ առաջ ինքն իշխան դարձած ըլլալով։ Գրիգոր ունեցած է երեք որդիներ, որոնք էին Սմբատ, Արշուկ եւ Արզուխաթուն, որոնք ըստ Գարեգին Կաթողիկոսի անզաւակ էին (*Նիւթեր եւ Ուսումն. Ա.*. էջ 25 եւ *Խաղբակեանք*, էջ 17—18)։

Հաւանօրէն այս կերպով վերջ գտած է այս տոհմը։

## Թ. ԱՐՑԱԽԻ ԿԱՄ ԽԱՉԷՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Արցախ Հին Հայաստանի նահանգներէն մին էր որ Հայերը, շատ հին ատեն, Աղուաններէն առած էին։

Դ. դարուն վերջերը կրկին Աղուանները գրաւեցին։ Կոչուած է նաեւ Փոքր-Սիւնիք, ինչպէս նաեւ Խաչէն, եւ ապա Ղարապաղ։

Միջնադարեան Խաչէն, տարածուած էր ոչ միայն հին Արցախի նահանգին այլ նաեւ Ուտիի որոշ մասերուն վրայ։

Վերջին ժամանակներուն մէջ այս շրջանակը

բաժնուած է մի քանի գաւառներու որոնք կը կոչ-ուէին Ղազախ, Խաչէն, Վարանդա, Ջուանշիր Դիզակ, Ջիբրայիլ անուններով:

Այս լեռնային շրջանակին մէջ որ Հայաստանի ամենէն անմատչելի վայրերէն մէկը եղած է ինչ-պէս տեսնուեցաւ, Աղուան կամ Հայ մէկէ աւելի իշ-խանութիւններ գոյութիւն ունեցած էին հինէն ի վեր:

Անշքացման շրջանէ մը վերջ Խաչէնի իշխող տուններէն ոմանք Զաքարեաններու հետ խնամութիւն-ներ հաստատեցին եւանոնց հովանաւորութիւնը կամ պաշտպանութիւնը ապահովեցին, ոմանք ալ ջնջուե-ցան, ուրիշ իշխանութիւններու միանալով եւ իրենց առանձին գոյութիւնը կորսնցնելով (տես. վերը, էջ 274—277)։

Թաթարներու արշաւանքէն առաջ Խաչէնի երկճիւղ իշխանութիւններէն Հաթերքի իշխանութիւնը վերջ գտած էր, վասնզի Իւանէ Զաքարեան զայն ստացած էր իբր ժառանգութիւն (տես. վերը, էջ 276): Եւ կը մնար Խոխանաբերդի իշխանութիւնը Արցախի Ներքին Խաչէն (Մեծ Իրանց կամ Մեծ Արանց) գաւա-ռին մէջ, ուրիշ մանր հողատէր իշխանութիւններու հետ, որոնց վրայ դժբախտաբար լիակատար տեղեկու-թիւններ կը պակսին: Այս հողատէր տոհմապետու-թիւններէն ոմանց մասին կան շատ մասնակի եւ ո-մանց մասին բաւականաչափ ծանօթութիւններ, որոնք կը ներկայացնեմ:

## 1· ՆԵՐՔԻՆ ԽԱՉԷՆԻ ՋԱԼԱԼԵԱՆՔ

Երբ Մոնկոլները Հայաստան կը մտնէին Ներ-քին Խաչէնի կամ Խոխանաբերդի իշխանութեան գը-լուխը կը գտնուէր Հասան Դոլա (տես. վերը, էջ 276), որդին Խաչէնի մեծ իշխան Վախթանգ Բ․ Տոնիկի։

1236ին այս «քաջաւոր» տիտղոսով պճնուած իշխանին հողերը աւարի տուաւ Չոլա, Չարմաղանի եղբայրը, եւ ինչպէս տեսնուեցաւ Հասան Ջալալ-Դո-լա «իմաստնաբար„ խոհեմութիւն համարեց հնազան-դիլ Մոնկոլներուն (*Կիրակոս.* էջ 146) եւ իր աղջիկը Ռուզանը կնութեան տուաւ Չարմաղանի տղուն Բու-ղանի, Չօլա զօրավարին կարգադրութեամբ։

Տեսնուեցաւ (վերը՝ էջ 276), որ այս իշխանը, ինչպէս նախ կրցաւ ստեղծել իրեն համար դիրք մը եւ յետոյ գործօն դեր մը կատարեց Բաչուի եւ Հեթում թագաւորի միջեւ միջնորդ հանդիսանալով, եւ կար-գադրելով 1245ին Հեթումի ուղեւորութիւնը, (Չամ. Գ. 219—220):

Հասան Ջալալ Դօլա յաջողեցաւ շնորհքներ ձեռք բերել Հայոց համար եւ իր իշխանութիւնը ըն-դարձակել (*Կիրակոս.* էջ 207—208) եւ Հայ եկեղե-ցիներու եւ եկեղեցականներու ապահարկութիւնը ա-պահովել եւ Աղուանից Կաթողիկոսին իշխանութիւ-նը ամրապնդել (*Կիրակոս.* 208)։ Շինած է Ս. Ստե-փանոսի տաճարը 1229ին, Գանձասարի տաճարը՝ 1242ին եւ նորոգած է 1248ին Կէչառու վանքը։

Բայց կարելի չեղաւ տեւական յաջողութիւն-ներ ունենալ:

Գարաբուղան 1246ին ձերբակալեց Հասան Ջալալը եւ կործանեց Խոյախան, Դեղ եւ Ծիրանաքար բերդերը (Չամ. Գ. էջ 222):

1251ին Հասան-Ջալալ-Դոլա կը դիմէ Բաթու հիւսիսի զօրավարին, (Չամ. Գ. 245) եւ Բաթուի մա-հէն վերջ կը բարեկամանայ անոր որդւոյն Սարդա-խի, որ քրիստոնեայ էր (*Կիրակոս.* էջ 205—207): Սարդախ 1255ին Հասան-Ջալալ Դոլան հետն առած Մոնգոյ Մեծ-Մոնկոլին կը տանի (Չամ. Գ. էջ 250), ուր Հասան կը բողոքէ Արղունի դէմ, որ սաստիկ ոխ կը պահէ եւ առիթի կը սպասէ:

Այդ առիթը կը ներկայանայ 1261ին, երբ Հայ-Վրացական ապստամբութեան (տես. վերը, էջ 329) կը մասնակցին մասնաւորապէս Խաչէնի շրջանին բնակիչները (*Հայ ժողովրդի պատմութիւն* էջ 213):

Երբ ապստամբութիւնը նուաճուեցաւ Հուլա-ղու աւելի սաստիկ հալածեց Հայերն ու Վրացիները եւ մահով պատժեց ապստամբութեան մասնակցողնե-րը, որոնց մէջ էին Շիրակի եւ Լոռիի տէրը՝ Զաքարէ իշխանը եւ Խաչէնի իշխան Հասան-Ջալալը (1) (*Նոյն.* էջ 213): Արղուն երբ զայն ձերբակալեց (Չամ. Գ. 260), իր Ռուզան աղջիկը դիմեց Տողուզ խաթու-նին (քրիստոնեայ կինը՝ Հուլաղու խանի) իր հայրը փրկելու համար, բայց Արղուն կանխեց եւ սպաննեց զայն Ղազվինի մէջ 1261ին: Որդին Աթաբէկ մարմինը փոխադրեց Գանձասար (2): Հասան-Ջալալ-Դոլա, որուն կինը Բաղաց թագաւորին աղջիկը՝ Մամքանն էր, խնամիացաւ նաեւ Սիւնեաց Տարսային իշխանին հետ, իր աղջիկը՝ Մինա խաթունը կնութեան տալով անոր (3), եւ այսպէս միութիւն մը կազմելով Սիւ-նիքի Հայ իշխանութիւններուն հետ:

Իր հօրը մահէն վերջ, իր կրտսեր որդին, պահ մը պէտք է իշխած ըլլայ, ի բացակայութեան իր երէց եղբօր Աթաբէկի, վասնզի արձանագրութիւն մը կը յիշէ «ՉԹ (=1260)... *յիշխանութեան Ուքանին*» (*Արցախ.* էջ 222):

Աթաբէկ Ա․ կը գահակալէ 1261ին (*Պատ. Աղուանից.* 205)։ Ան տակաւին կ'իշխէր 1282ին:

Աթաբէկի յաջորդած է իր որդին «պարոն» Ջալալ (Բ) որ 1293 թուականով յիշատակարանով մը ծանօթ է (*Նոյն*):

Իսկ Ջալալի յաջորդած է իր որդին Աթաբէկ Բ. որուն սերունդը կը յիշատակէ Մակար եպս. Բար-խուտարեանց (*Պատ. Աղուանից* էջ 142), Ջալալեանք անունով, իբր տանուտէրներ:

Ըստ Մակար եպս. Բարխուտարեանցի Աթաբէկ Բ.ի յաջորդած են իր որդիքը Այտին Բէկ ու Աղբաս եւ ուրիշներ, որոնց միայն անունները կը յիշուին ա-ռանց գործերը եւ անոնց ժամանակը ճշդուած ըլլալու:

Ինչ որ կարեւոր է, այս տունը իր գոյութիւնը պահած է մինչեւ Էօզպէք Թաթարներու աւերիչ ար-շաւանքները եւ աւելի ալ վերջը:

(1) *Իրարու մօտ ազգական. վասնզի Հասան-Ջալալ-Դոլայի մայրը՝ Խորիշահ քոյրն էր Զաքարէ եւ Իւանէ եղբայրներուն·*

(2) *Հասան ունէր երկու եղբայր, Իւանէ եւ Զաքարէ անունով։*

(3) *Ունէր ուրիշ աղջիկ մըն ալ Մամախաթուն անունով որ ամուսնացած էր Ումեկ իշխանին հետ։*

## Հ. ԴՈՓԵԱՆՔ

Արցախի Սիսական Ոստան գաւառին մէջ, Ծարի իշխանական տան — որ կը տիրէր Ծարի (այժմ Զար) եւ Գեղամայ երկիրին — յաջորդած էր Դոփեանց իշխանութիւնը, ինչպէս բացատրուեցաւ (տես. վերը, էջ 293):

Մոնկոլներու տիրապետութեան սկիզբները, Զաքարեանց տոհմին հետ խնամիացած էր «պարոն» Հասան, որդին Գարա Գրիգորի (1) (+ 1287), որ ամուսնացած էր Մամայի կամ Մամքանի (+ 1298) հետ որ էր *«դուստր Վաչուտեան Քուրդ իշխանի»* եւ Խորիշահ Մամիկոնեանի, որ 1274ին կը յիշուի:

Հասան մէկն է այն իշխաններուն որոնք Մանգու խանի արքունիքին մէջ պատիւ ստացած էին, եւ «ատեանի մէջ այնպէս ընդունելի՝ ինչպէս Քրիստոսի խաչը բեմի վերայ» (Գարեգին Կաթ. *Խաղբակեանք Բ.* էջ 39)։

Հասանի կրտսեր եղբայրն էր Յովհաննէս եպս. (+ 1301) որ շինած է Գետամէջի եւ Խաթրայ վանքերը, ինչպէս յիշուեցաւ (վերը, էջ 293):

Հասան ողջ էր դեռ 1274ին (*Արցախ* էջ 405)։

Հաւանական է որ ան ողջ էր նաեւ 1289ին, երբ իր որդին խաչարձան կը կանգնէր հօրը անունն ալ յիշելով: Իր մահը պատահած պէտք է ըլլայ 1289—1294ի միջոցին (2):

Խաչատուր Կեչառեցի եւս զայն կը յիշէ (*Խաղբակեանք.* էջ 186) գրելով՝

*«զՀասան յիշեմ զԽաչէնեցի*
*որ մականուամբ էր որդի Դոփի»*

Հասան կը ներկայացուի յիշատակարանի մը մէջ *«տէր Ակոնոյ, Հանդաբերդոյ, Սորից, Շաղվաքու եւ այլ բազում գաւառաց, եւս առաւել սիրէր զհայրենի գեօղն Ծար, որ են գինք արեան տուեալ եւ պարգեւք քաջութեան աշխարհակալացն Հայոց»* (Յ. Թոփչեան *Ցուցակ Ա.* էջ 89):

Հասանի յաջորդած է իր որդին Գրիգոր մականուանեալն *Բարի*, ամուսինը Ասփայի (+ 1312) որ էր դուստր Տարսայիճ Մեծ Սիւնեաց իշխանին եւ կնոջ Մինա Խաթունին:

Օրբէլեան (Բ. էջ 171), ասիկա կը հաստատէ ըսելով թէ Ասփան կնութեան տուած են *«փառաւորեալ իշխանին Խաչենոյ Գրիգորոյ, որդւոյ Հասանայ, որդւոյ Մեծին Գրիգորին, որ էր քեռորդի Աթաբէկ Իւանէի»*։

Արձանագրութեան մը մէջ երկու ամուսինները կը յիշուին այսպէս. *«Պարոնաց պարոն զԳրիգոր որդի Դոփին եւ զամենագովելի զբարեպաշտ ամուսին իւր զՊարոն Ասփայն»* (Գարեգին Կաթ. *Տարսայիճ Օրբէլեան եւ Մինա Խաթուն.* էջ 6)։

Գրիգոր ունէր երեք զաւակներ, Պարոն Վահրամ, որ յաջորդած է իրեն, Սարգիս եպս. (մռ. (1333) (3), եւ Սեւադա (4):

Պարոն Վահրամի յաջորդած է իր որդին Սարգիս, (տես. Թոփճեան *Ցուցակ* էջ 89): Վահրամ կը թուի թէ ունէր նաեւ Գրիգոր, Հասան, Պէկ, Ալթուն անուն որդիներ (տես. Մակար եպս. Բարխուտարեան *Պատմ. Աղուանից* էջ 137)։ Իսկ Սարգիս եպս. (+ 1333), Վահրամի որդի չէր այլ եղբայրը, ինչպէս կը հաստատէ Գարեգին Կաթողիկոս (տես. *Հաւուց Թառ.* 29): Վահրամի որդիներէն Հասան ամուսնացած է Փառխոսի Սենեքերիմ եւ Գրիգոր թագաւորներուն քրոջ Խանումին հետ եւ Փառխոսի այս երկու եղբայր թագաւորներուն մահէն վերջ հաստատուած է Փառխոս:

Սարգիսի յաջորդած է իր որդին՝ Հասան Ծարեցի, որ ամուսնացած էր երկու անգամ (5), մէկ կինը Խաչէնի Հասան-Ջալալ-Դոլա մեծ իշխանին քոյրը՝ Մամքան էր (*Պատ. Աղուանից* էջ 136—137) եւ միւսը՝ Խոնձա: Ունեցած է եօթն զաւակներ, Շահնշահ, Աղբուղէն, Ջհանշէ, Սարգիս, Գրիգոր եւ Տրվանի, եւ վերջապէս Վահրամ որ շատ ուշ ծնած պիտի ըլլայ եւ միակ ողջն էր 1411ին:

Հասան Ծարեցի *«Իշխան Բջնիի, որդի Սարգիսի, թոռնորդի Գրիգոր բարի իշխանի Խաչենոյ»* իր երեք զաւակներով — որոնք էին Սարգիս, Գրիգոր եւ Տրվանի — սպաննուած է 1384ին կամ 1387ին, Լենկթիմուրի արշաւանքին ատեն: Բայց այս իշխանութիւնը շարունակած են միւս երեք զաւակները, ինչպէս պիտի տեսնուի:

Դոփեանց իշխանութեան մտաւորական կեդրոնն էր Խութայ վանքը (*Խաղբակեանք* Ա. էջ 23—24)։ Դոփեանք ինչպէս նաեւ Խաչէնի այլ իշխանական տուները ըստ միջնադարեան սովորութեան գրաւած են նաեւ իրենց հողատիրութեան եպիսկոպոսական աթոռները (*Խաղբակեանք.* էջ 30, նաեւ *Արցախ.* 194. 204—6. 408), նոյնիսկ ԺԳ. դարու առաջին քառորդին, ինչպէս էր Յովհաննէս եպս. Խաչենցի, Դոփեանց տոհմէն որ կը 1221ին յիշուի (*Հայկական երեք մեծ վանքեր* էջ 125) (6):

(1) *Գրիգոր մասնակցած էր, Աւագի եւ միւս Հայ իշխաններու հետ, Մոնկոլներու արշաւանքներուն դէպի Կարին* (1242), *եւ Կեսարիա* (1244), *ինչպէս ինքն կը յիշատակագրէ 1244ին, Օրթաքիլիսէ գիւղին Աւետարանին պահպանակին մէջ, Կիրակոս Գանձակեցի երկու անգամ կը յիշէ* «Գրիգոր Դափին որդի, մօրաքուեր որդի Ջալալին» (*տես.* Խաղբակեանք *էջ* 19—20),

(2) *Իր մահին ողբ մը հրատարակուած է* (*տես.* Արարատ 1896 *էջ* 278. *կամ* Խաղբակեանք, Բ. *էջ* 39)։

(3) *Տես. իր մասին* Արցախ. *էջ.* 205—6 *և* 290 *և Գարեգին Կաթողիկոս* Հաւուց Թառ. *էջ* 29 *եւ* 60—65)։

(4) *Մուֆարղինի պաշարման* (1259—1260) *առեն մե-* *ուած է* (Վարդան, *էջ* 152)։

(5) *Հ. Աճառեան* (Անձնանուններու Բառարան Գ. *էջ* 60) *Հասանը երկու անձի վերածած է երկու կիներուն պատճառով, մինչ շատ մը ցուցումներ կան որոնք կը հաստատեն թէ այդ երկու Հասանները միեւնոյն են*։

(6) *Գարեգին Կաթողիկոս* (Խաղբակեանք Գ. *էջ* 203) *կը հաւաստէ թէ Յովհաննէս Ծարեցի ունի ընդարձակ յիշատակարանաձեւ ժամանագրութիւն: Աստ կցուած է Դոփեանց իշխաններու պատկանող մի քանի արձանագրութիւններու պատճէնները գրուած նօտր գիրով։ Այս շահեկան ձեռագիրը մաս կը կազմէր Էջմիածինի ձեռագիրներու հաւաքման* (Թ. 2776)։

### 3. ԴԻԶԱԿԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Այս իշխանութիւնը որ Արցախի նահանգի մէջ կը գտնուէր եւ որուն վրայ խօսուեցաւ (վերը, էջ 177), շարունակուած է Մոնկոլ տիրապետութեան տակ մինչեւ 1271։ Սելջուկեանց շրջանին կեանքը անծանօթ մնացած է կամ խառնուած, Խաչէնի կամ Արցախի պատմութեան։

Ժամանակ մը Տում եղած է Դիզակի իշխաններուն նստոցը եւ վերջը Դիզակ գաւառին Վելիջան Իշխանի կամ Յորայ ամրոցը (*Արցախ.* էջ 72—73) եւ երբեմն ալ Վնեսայ Ղալան։ Այս իշխանութեան սահմաններուն մէջ էր Ղարապաղի Գաչոյ վանքը (*Խաղբակեանք. Բ.* 22)։ Հաւանօրէն անշքացած այս տունը, Զաքարեաններու շնորհիւ վերստին տիրացած է հողատիրութեան մը, վասնզի Մոնկոլեան շրջանի իբր տէր կամ իշխան Դիզակի կը յիշատակուին, Իշխանի որդի Իշխանի, որ Աղուանից իշխան տիտղոսով նստած է Յորայ ամրոցը։

Աջամի ՉՂԷ= 1248 թուականին յիշուած՝
Աւան (= Յովհաննէս) մեծ իշխան
Թովմաս
Ջալալ
Ախիջան կամ Հախիջան

Իշխանէն մինչեւ Ախիջան իշխողները Դիզակի Գագիկ թագաւորին (տես. վերը, էջ 177.) սերունդներն էի՞ն թէ ուրիշ տոհմի մը կը պատկանէին, յայտնի չէ (տես. *Պատմութիւն Աղուանից* էջ 131—132)։

Այս իշխանութիւնը Մելիքութեան վերածուած եւ երկար շարունակուած է։

### 4. ԽԱՂԲԱԿԵԱՆՔ ԿԱՄ ՊՌՕՇԵԱՆՔ Ի ԽԱՉԷՆ

Խաղբակեան Վասակի 1201ի ատենները Խաչէնէն Սիւնիք տեղափոխուելէն վերջ, իրենց նախնական բնակավայրին՝ Խաչէնի Գեռաքարի շրջանին մէջ (1), ուր կը գտնուէր Հաւապտուկի վանքը, իրենց հոգեւոր կեդրոնը եւ տոհմական գերեզմանատունը, այս իշխանութիւնը շարունակած է իր գոյութիւնը պահել, իբր ճորտ կամ աւատ Խոխանաբերդի կամ Ներքին Խաչէնի մեծ իշխաններուն (*Խաղբակեանք.* էջ 33 եւ 80)։

Վասակ, Իւանէի «հրամանով եւ ուժով» նուաճած էր Հրաշեկայ բերդը, թերեւս նաեւ ամբողջ Վայոց Ձորը, մասնակցութեամբ իր Ջաջուռ եւ Գրիգոր եղբայրներուն, որոնք Խաչէնի մէջ զինուորական գործողութիւններու մասնակցելու առիթ չունէին, քանի որ Խաչէն ազատ էր Խոխանաբերդի եւ Հաթերքի իշխաններուն ղեկավարութեամբ՝ Զաքարեաններու ասպարէզ գալու ժամանակ։

Վասակ իր նոր իշխանութիւնը ստանալէն վերջ իր եղբայրները՝ Ջաջուռ եւ Գրիգոր մնացին իրենց նախկին բնակավայրը։

Ջաջուռի (մեռած 1232) որդիներէն Հասան (մեռած 1225) եւ Սմբատ (1224) իրմէն առաջ կը մեռնին եւ իրեն կը յաջորդէ Գրիգոր, որ նուէրներ կուտայ Վանառքի Ս. Ստեփանոս եկեղեցիին, զոր շինած էր 1229ին Խաչէնի տէրը՝ Հասան Ջալալ (*Խաղբակեանք,* էջ 80)։

Իսկ Ջաջուռի եղբայրը՝ *«Գրիգոր որդի Հաղբակայ»*, ինչպէս Կիրակոս (էջ 105) եւ Վարդան (էջ 143) կը վկայեն, կը մասնակցի 1220ին Գանձակ ապաստանած Խփչաղներու դէմ Իւանէի առաջնորդութեամբ մղուած պատերազմին, Վասակի որդի Պապաքի հետ։ Այս առթիւ Գրիգոր կ'ստանայ Քեղվա ձորը, թերեւս նաեւ բերդը, Աղջոց Ս. Ստեփաննոսի եւ Վանստան վանքերով, որոնք Խաղբակեանց նոր իշխանութեան մաս կը կազմէին։

Իւանէ պարտուեցաւ եւ ուրիշներու հետ գերի ինկաւ նաեւ Գրիգոր եւ իր եղբօրորդին՝ Պապաքը։

Երկուքն ալ նահատակուեցան (*Խաղբակեանք* էջ 81)։

Գրիգոր Հաղբակեան իր հոգացողութեան առարկայ ըրած է Աղջոց Ս. Ստեփանոս վանքը, զոր շինած էր 1212—1217ին, երբ արդէն հաստատուած էր Խաղբակեան կողմնապահութիւնը եւ Քեղվա ձորը Գրիգորի սեփականութիւնը դարձած էր։ Ինքն ալ Վասակի օրինակին հետեւելով իրեն համար հոգեւոր կեդրոն մը հաստատեց հոն (*Խաղբակեանք,* էջ 82—83)։

Գրիգորի կինն էր Զազա եւ ունէր Վասակ անուն զաւակ մը (1270) (*Նոյն* էջ 84), որուն որդին էր հաւանօրէն «պարոն Աշոտը»։ 1287ին խաչարձանի մը վրայ կը կարդացուի *«ի տէրութեան տեղւոյս պարոն Աշոտոյ»*, (*Շողակաթ* էջ 26. *Խաղբակեանք.* էջ 86)։

Աշոտ վերջին իշխանն է յիշատակուած Գրիգոր Խաղբակեանի սերունդէն ըստ Գարեգին Կաթողիկոսի (*Խաղբակեանք,* էջ 86) (2)։

### 5. ՄԵԾ ԿՈՂՄԱՆՑ ԿԱՄ ԿՈՒԵՆԻՑ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Այս տեղ ալ իշխանութիւն մը գոյութիւն ունեցած է։ Հին ատեն մէկ եւ անբաժան էր այս գաւառը եւ կը կոչուէր Մեծ Կողմանք, Մեծ Կուանք եւ Ջարաբերդ։

ԺԳ. դարուն վերջերը, այս շրջանակին իշխող մի քանի իշխաններ կը յիշատակուին, որոնք թաթար բանակներու մէջ ալ գործած են։ (Մակար եպս. Բարխուտարեան, *Պատ. Աղուանից* էջ 145)։

Այսպէս կը յիշատակուի Տիրանշահ։

Յեսոյ Ուզ որուն որդին էր Հասան, որ թաթար բանակներու հետ Փոքր Ասիա գացած է, եւ

(1) *Ըստ Մակար եպս. Բարխուտարեանցի* (Պատ. Աղուանից էջ 143) *Խաղբակեանց բնակավայրը եղած է Խաչէն գաւառի Համամի Ձորը։ Անոնց կը պատկանէր Հարճլունք գաւառի Խաւհայեաց մասերն եւ Խաչէնգետի ու Գարգարի միջեւ գտնուած հողերը։ Ջալալեաններու զօրանալէն վերջ, իրենց ձեռքը մնացած էր միայն Նատարի Ղալա, Կաչաղակաբերդ ամրոցներն է Հաւապտուկ ու Կօշիկ վանքերը։*

(2) *Մակար եպս.* (Պատմ. Աղուանից *էջ* 144—845) *կը յիշէ կարգ մը անուններ, ինչպէս Հասան մը* 1264 *թուականով. սակայն խառնակ են իր տեղեկութիւնները, եւ կարօտ ճշդումներու։*

կեսարիայէն բերած՝ Աւետարան մը, որ իր կնոջ Եղբիի, որդիներուն Համբերի եւ Սասնայի հետ նուիրեց իրենց դամբարանին՝ Եղիշէ Առաքեալ վանքին, 1266-ին (*Պատ. Աղուանից* էջ 145, *Արցախ* էջ 227. Անանեան. *Բառարան Գ.* էջ 57)։

Յետոյ, ինչպէս պիտի տեսնուի, այս գաւառը եղաւ որորան երկու մելիքութիւններու։

## Ժ. ԽԱՂԲԱԿԵԱՆՔ ԿԱՄ ՊՌՈՇԵԱՆՔ Ի ՍԻՒՆԻՔ

Տեսնուեցաւ թէ այս տոհմին նախնիքը կը բնակէին Խաչէնի մէջ ուրկէ Վասակ 1201ին գնաց հաստատուիլ Սիւնիք եւ հիմնեց նոր իշխանութիւն մը, աջակցելով Զաքարեաններու որ գրաւեն Սիւնիքը (տես. վերը, էջ 201)։

Նշանակուած էր նաեւ վերը (էջ 201) անոնց սեփական վայրերը։

Այս իշխանութիւնը ստորադաս էր Զաքարեաններու (*Խաղբակեանք*, էջ 72) եւ ստեղծուած Օրբէլեաններու հետ նոյն ատեն, Իւանէի կողմէն, եւ անոնց պէս կը կազմէր կողմնապահութիւն մը (տես. վերը, էջ 201)։

Խաղբակեանք Իւանէի տան կամ Աւագեաններու զօրապետները կամ սպարապետներն էին, որոնք իրենց հեծելազօրքով կը կատարէին գերագոյն իշխանին յանձնարարութիւնները եւ կը մասնակցէին անձամբ կամ իրենց մարդոցմով ընդհանուր թշնամիին դէմ մղուած պատերազմներուն։

1201ին Բջնին գրաւուելէն վերջը «*Վասակ որդի Հաղբակայ եւ երեք որդիքն իւր՝ Պապաքն, Մկտէմն եւ քաջ Պռօշ, եկեալ ի Խաչենոյ, բազում արութիւնս ցուցին յայլազգս եւ բազում բարութիւնս առ ազգս քրիստոնէից*» (*Մխիթար Այրիվանեցի*, էջ 65)

Երկու տարի վերջը Դուինն կը գրաւուի Զաքարեան եղբայրներէն։

Բջնիի արեւելեան մասը Կեչառոյք վանքով Խաղբակեաններու սեփականութիւնը կ'ըլլայ եւ նոյնիսկ Վասակ Խաղբակեանի սիրելի վայրը, ուր կը շինէ իր եկեղեցին։ Կեչառոյքն եւ Վայոց Ձորի մէկ մասը, տրուած էր Վասակի իբր վարձատրութիւն այդ երկու գաւառներուն գրաւման համար իր ընձայած գործակցութեան (*Խաղբակեանք*, էջ 35)։

Վասակ նուաճեր էր Եղեգեաց Ձորի ամրոցները, իսկ ըստ Օրբէլեանի նաեւ Հրաշակերտը։ Հոն կը հաստատուի Վասակ եւ կը գործէ իբր գործակից եւ ստորադրեալ Իւանէ Զաքարեանի տան։

1214ին «*կողմնապահ*» էր «*ի Գառնոյ մինչեւ ի Բարգուշատ*», բայց Վայոց Ձորի մէջ միակ իշխողն Վասակ չէր այլ հոն բաժին ունէին նաեւ այլ տոհմեր, ինչպէս Օրբէլեանք, Շահուռնեցիք, Մեհեւանեանք եւ Մամիկոնեանք։ Խաղբակեանց սեփական էր Արփայի հիւսիսային մեծ ճիւղէն արեւմուտք գտնուած երկիրները, ներկայ Քէշիշքեանդ, Օրթաքեանդ, Բաշքեանդ, Արկազ եւայլ գիւղերով, այսինքն Թեաքադուլսուրան լեռներուն հարաւային ստորոտները մինչեւ Արփայի բուն հովիտը (*Տարսայիճ իշխան եւ Մինա խաթուն* էջ 11)։ Իսկ Եղեգեաց Ձորը ինկած էր Թեաքադուլսուրանի միւս երեսը՝ համանուն աւանով։

Վասակի մահէն վերջ, 1223ին «*Էառ զդըրղայն որդի նորա քաջն Պռօշ*» (*Այրիվանեցի* էջ 65)։ Պռօշի իշխանութեան շրջանին (1223—1284) էր որ Մոնկոլները Հայաստան խուժեցին։ Պռօշ հաւանօրէն Իւանէի ձեռքին տակ կռուած է Ջէլալէտտինի դէմ, Գառնիի ճակատամարտին (1224—5ին) մէջ։

Պռօշ այս պարտութեան վրէժը ինքն լուծած է, վասնզի ըստ Այրիվանեցիի Գառնիի պարտութենէն անմիջապէս վերջը «*մտանէ Պռօշ ի Դուին եւ կոտորէ զԽորազմն եւ զՏաճիկն*» (1226—28)։ Ինքն ալ պէտք է վերջը, 1236—38ին, հնազանդած ըլլայ Մոնկոլներուն հետեւելով Աւագի օրինակին, քանի որ անիկա իր «պատրոնն» էր։

Մասնակցած է Մոնկոլ արշաւանքներուն, մասնաւորապէս Պաղտատի գրաւումին (1258) եւ ապա Մուֆարղինի պաշարումին (1260), ուր գլխաւորն էր «*ի քրիստոնէից իշխանն Պռօշ, զոր Հասան կոչէին*»։ Անիկա դարձած է ժողովրդական հերոս մը, որուն համար Խաչատուր Կեչառեցի կ'ըսէ

«*Զպարոն Պռաւշն զարդ հեծելի.*
*Որ զերկաթի դուռն առնէր փոշի.*
*Աջ ու բազուկ էր նոր Սիոնի,*
*Հիմըն հաստատ Հայոց հաւատի*»,

Այրիվանեցի զայն կ'անուանէ «*աշխարհաշէն իշխան*» եւ Գարեգին Կաթողիկոս կը հաստատէ փաստերով (*Խաղբակեանք Ա.* էջ 97—134) անոր շինարարութիւնը։

Պռօշի եւ կնոջ Խութլու Խաթունի զաւակներն էին Պապաք, Ամիր Հասան, Վասակ, Մկտեմ եւ Գոհար։ Անոնցմէ Մկտեմ եւ Գոհար 1268էն առաջ եւ Վասակ 1268—1273ի միջոցին մեռած են, որով իր իշխանութիւնը ժառանգեցին Պապաք (մեռած 1298—99) եւ Ամիր Հասան (մեռած 1292)։

Պապաք էր իշխանապետը, եւ ունեցաւ շինարար գործունէութիւն մը։ Պապաք, ինչպէս Ամիր Հասան Ա. եւ անոր որդին Էաչին սպարապետութեան պաշտօնը վարած են Աւագի տան (*Խաղբակեանք*, էջ 142), ինչպէս կը հաստատէ յիշատակարան մը գրելով «*յիշխանութեան մերոյ նահանգիս մեծ սպարապետացն Պապաքին եւ Էաչոյ, որդւոյ եւ թոռին մեծին Պռօշոյ, ժառանգք իշխանութեան ամենօրհնեալ ցեղին Խաղբակեանց*» (*Արարատ*, 1876 էջ 412. *Խաղբակեանք*, էջ 142)։

Պռօշի հողատիրութիւնը ինչպէս կը տեսնուի իր երկու որդիներուն մէջ բաժնուած է եւ Էմիր Հասանի սեփական էր Մարտիրոս եւ անոր կից Վերին եւ Ներքին Ալդա գիւղերուն շրջանը, որ անոր կառավարութեան կեդրոնն էր հօրը կենդանութեան վերջին տարիներուն եւ անկէ վերջն ալ (*Խաղբակեանք*, էջ 148)։

Երբ Էմիր Հասան կը մեռնի 1292ին իր սեփականութիւնը կը փոխանցուի իր որդւոյն Էաչինի կամ Եաչի, ինչպէս կը հասկցուի հետեւեալ յիշատակարանէն։

*«Բայց յայսմ ամի անվերանալի տրտմութիւն հասաւ, զի իշխանաց իշխանն մեր Ամիր Հասան մահուամբ փոխեցաւ ի Քս. եւ ամենայն աշխարհ խուռ եւ տրտմութիւն անկան, հայք եւ վիրք, ափխազք եւ հոռոմք. զի թէպէտ որ իշխանաց իշխան կոչիւր, սակայն ի թագաւորաց անբաժանելի էր, որ յամենեցուն լսելիս հասեալ էր բարի լուր եւ համբաւ նորայ, որ հեռաւորքն որպէս ի մաւտոյ կոծ եւ աշխարումն կատարեցին: Բայց եթող տեղապահ զորդի իւր, որ կոչի Էաչի, որ ամենայն յաջողութեամբ բարգաւաճեալ էր քան զհայրն, զոր տէր Յիսուս պահեսցէ զինքն յամայր ամս ժամանակաց յարգոյ եւ բարգաւաճ փառաւք ամէն»* (*Խաղբ.*, 152—153)։ Ամիր Հասան կը յիշատակուի *«մեծ սպարապետ տանն Աւագին, որդւոյ Իւանէ աթաբակին»* կամ *«սպարապետ Հայոց»* (*Խաղբակեանք*, էջ 153):

Էմիր Հասան, ինչպէս կը թուի աւելի գործօն դեր կատարած է քան իշխանապետ Պապաքը, վասնզի անիկա քաջի անուն շահեր էր *«ի բազում պատերազմունս»* եւ Հուլաղուի (1256—1265) եւ Աբաղայի (1265—1282) պալատներուն մէջ նուէրներու եւ պատիւներու արժանացեր. *«այսպէս օրհնեցեալ էր ի նոցանէ վասն արիական քաջութեան եւ խոհեմութեան իւրոյ մինչեւ զինակիր եւ յառաջադէմ լեալ յամենայն գործս արքունի: Եւ յանձնէ իւրեանց բազում անգամ զարդարեցին զնա ոսկեհուռ դիպակաւք եւ կամար ոսկեղէն ընդելուզեալ ակամբք եւ մարգարտօք կապեալ ի մէջս նորա»* (*Արարատ.* 1876 էջ 412 եւ *Խաղբ.*, էջ 153):

Ամիր Հասանի քաջութեան հռչակը տարածուած էր մինչեւ Փոքր Ասիա, հաւանօրէն այն արշաւանքներու ատեն, որոնց Թաթարները ձեռնարկեցին դէպի արեւմուտք, եւ որոնց թերեւս, մասնակից եղած էր նաեւ իր հայրը։

Էաչի Ա. կամ Եաչին (1299—1317 մեռած) ամուսնացած էր Ելիկում Օրբէլեանի Մամախաթուն աղջկան հետ:

Էաչի մասնակցած է Լիպարիտ Օրբէլեանի հետ այն արշաւանքին որ Ղազան խանի (1295—1304) զօրավարներէն Խութլու շահ կատարեց դէպի Խորասան, 1295—96 թուականներուն: Անիկա իր հօրեղբօրը՝ Պապաքի հետ մասնակցած է Գրիգոր Անաւարզեցիի դէմ գումարուած ժողովի ձեռնարկին:

Պապաքի մահէն (1298—99) վերջ Էաչին անոր իշխանութիւնն ալ ստանձնեց իբր իշխանապետ վասնզի Պապաք անզաւակ էր:

Եաչին մեռաւ 1317ին եւ իր իշխանութիւնը ժառանգեցին Ամիր Հասան Բ. իբր իշխանապետ եւ իր եղբայրները՝ բաժիններ ստացան իրենց հօր ժառանգութենէն: Այսպէս իշխեցին երեք եղբայրներ, Վասակ *«զքաջն եւ զարին հոլոմն»*, Ամիր Ասաթն *«զկորովամիտն»* եւ Ջում կամ Ջուման *«զտխավքն մանուկն՝ զխայտակն եւ զքաջազանգուրն»*, (*Խաղբակեանք*, էջ 200):

Այս իշխանութիւնը ուրեմն շարունակուած է մինչեւ Էօզպէք Թաթարներու արշաւանքը, բայց Ամիր Հասան Բ.ի մահէն (1317 մեռած) վերջ յաջորդականութիւնը ընդհատուած է, անշուշտ երկրին մէջ տիրող խառնակ վիճակին, ինչպէս նաեւ Օրբէլեանց զօրանալուն հետեւանօք:

## ԺԱ. ՕՐԲԷԼԵԱՆՔ

### 1. ՄԱՅՐ ՃԻՒՂ

Երբ Զաքարեանց տոհմը անշքացաւ, կրկին բարձրացան Օրբէլեանները, որոնք որպէս Օրբէր ամրոցին տէրերը, հին ատեն, բաւական նշանաւոր դեր էին կատարեր, մանաւորապէս Վրաստանի մէջ: Անոնք վերստին հասան իրենց նախկին բարձրութեան, եւ խլեցին սպասալարներու տոհմէն նախապատուութիւնը (*Ազգագր. Հանդէս.* Է—Ը էջ 327—8), շնորհիւ Օրբէլեան Սմբատ իշխանին եւ անոր որդւոյն՝ քաջ եւ շինարար Տարսայիճի, Սիւնիքի մէջ վերահաստատելով նոր իշխանութիւն մը:

Արդէն բացատրուած է որ այս տոհմէն ոմանք Վրաստանէն անցած էին Հայաստան (տես. վերը, էջ 290) եւ ընդ հովանաւորութեամբ Զաքարեաններու ունեցած էին հողատէր իշխանութիւն մը, որուն գլուխը կը գտնուէր Ելիկում, փեսան Մամիկոնեան Գրիգոր Մարծանեանի (տես. վերը, էջ 273 եւ 292), երբ Չարմաղանի բանակները Հայաստան մտան:

Ինչպէս ժամանակակից բազմաթիւ Հայ իշխաններ, Ելիկում ալ, 1236ին, ամրացաւ Հրաշկաբերդի մէջ, բայց ի վերջոյ, ուրիշներու պէս, ինքն ալ հնազանդեցաւ Մոնկոլ Ասլան Նուին զօրավարին եւ ժառանգեց անոր կամքով, Վայոց Ձորը եւ Եղեգիսը մինչեւ Երերոն գիւղ՝ Գառնիի հանդէպ:

Տեսանք թէ անոնք արդէն ստացած էին *«Հրաշկաբերդ իւր կերոմն, եւ այլ բազում գիւղս ի Վայոց Ձոր, ի Գեղարքունի. ի Կոտայսն եւ ի Կայէն»* Հոռս, Քարագլուխ, Աղքենդ եւայլն (*Տարսայիճ Օրբէլեանի եւ Մինա Խաթունի սերունդը, էջ 13*)։

Օրբէլեան կ'ըսէ թէ Լիպարիտը Կոտայքի մէջ ստացած էր *«զէլառն եւ այլ գիւղս յոլովս, ի Գեղարքունի, զՀամասարի եւ այլ գեղօրէս բազում, ի Կայէն զԱղստեւ իւր կերոմն։ Եւ զի նա, եղեւ առաջնորդ առման Սիւնեաց եւ այլ բերդերոյն, տայ* (Իւանէ) *եւ ի ձեռս նորա զՍիւնիս, զՈրոտն, զԲարկուշատ եւ զայլ բերդոյէսն»* (1) (*Նոյն* էջ 10):

Այսպէս, Օրբէլեանք բաւական ընդարձակ երկիրներու կը տիրանային իբր կալուած իրենց տան եւ ցեղին:

Ելիկում 1259—1260ին մասնակցեցաւ Նփրկերտի արշաւանքին եւ հոն մեռաւ իբր թէ դեղակուր Աւագի հրամանով, ինչ որ սխալ մըն է (տես Գարեգին

(1) *Ըստ այսմ Օրբէլեանց կալուածները կ'իյնային Գեղարքունիքի մէջ՝ Սեւանայ Լիճին հարաւ-արեւմտեան ափերը, բայց Գարեգին Կաթողիկոս* (Տարսայիճ Օրբէլեան *եւայլն. էջ 4), դժուել կուտայ թէ Գառնի որ Գեղարքունիքի մասն է, երբեք Օրբէլեանց սեփականութիւնը չէ եղած.*

Կաթ. *Տարսայիճ Օրբէլեանի եւ Մինա խաթունի սերունդը* էջ 9)։

Իրեն կը յաջորդէ եղբայրը Սմբատ «*որ էր հանճարով մեծ, խորհրդով ուժեղ խելօք աննման, հնարիւք բազմագէտ, բանիւ առատ եւ քաղցր, լեզուաց հմուտ եւ ճարտար, ի դատարանի դիւանի անպարտելի, զի խօսէր լեզուս հինգ, Հայ եւ Վրացի, Ուղուր եւ Փարսի եւ զՄուղալն իսկ*»։

Ուղղոյ ուղի ժառանգութեան օրէնքով, Էլիկումի յաջորդը պէտք էր ըլլար Բուրթէլ՝ իր որդին եւ ոչ թէ Սմբատ իր եղբայրը, սակայն վասնզի Բուրթէլ անչափահաս էր եւ Օրբէլեանք հալածուած էին Աւագի յաջորդներէն, Սմբատ՝ ստանձնեց իշխանութիւնը եւ պաշտպանեց Օրբէլեան տան իրաւունքները։

Ասիկա կասկածելով Աւագէն իբր նախանձորդ, գնաց Մանգոյ խանին՝ Թաթարիստան, հաճոյացաւ անոր եւ անուանուեցաւ *Ենջու* (=տէրունի)։ Ան նոյնպէս պատուեցաւ ոսկի *Փայիզայով* որ տախտակ մըն էր վրան Աստուծոյ եւ թագաւորին անունը գրուած։ Ասիկա մեծագոյն պատիւն էր որ կու տային Մոնկոլները։ Նոյնպէս տուին *եառլըխ* (հրովարտակ) որով իրեն կը շնորհուէր Աւագի նուաճած երկիրները եւ Որոտն ու Բորոտն բերդերը՝ իրենց շրջակայքով, իբրեւ արեան գին իր հօրը՝ Լիպարիտի (Օրբէլեան Բ. 157)։ Սմբատ այս կալուածները առնելէ վերջ բոլոր Վրացի եւ այլ իշխանները (դաւթարները) դուրս հանեց այդ հողերէն։

Երբ եկաւ Հայաստան Բաչու զօրավարին հաղորդեց Մեծ Մոնկոլին հրամանը եւ «*Էառ եւ թափեաց զերկիրն Որոտան բովանդակ մինչ ի սահմանն Բորոտնայ եւ Բղենոյ, յորում եւ կայր ընդաւեր աթոռն Սիւնեաց Տաթեւ։ Էառ եւ զեղեգիս եւ զամենայն գաւառն Վայոց Ձորոյ, զՓողահանսն, զՈւրծ եւ զՎէդի իւր ծործովն մինչեւ յԵրերոնս եւ ի Կոտայսն եւ ի Գեղարքունի բազում շէնս եւ աւանս*» (Օրբէլեան. Բ. 158)։

Բայց ըստ Ալիշանի (*Սիսական*, էջ 92—3) նախանձորդ Զաքարեանք՝ Արղունի ձեռամբ «*առին ի Սմբատայ բազում տեղիս եւ զմնացեալսն կեղեքէին սաստկապէս, վասն որոյ հարկ եղեւ նմա վերստին գնալ առ Մանկու խան*» 1258ին, որուն առջեւ՝ խորամանկութեամբ արդարացուց Արղունը՝ որ բանտ նետած էր խանը եւ ասիկա հաւատալով արձակեց եւ վերահաստատեց զայն Հայաստանի եւ Վրաստանի հարկահան-ոստիկանութեան պաշտօնին մէջ, յանձնարարելով բարեխօս Սմբատը, որ «*վասն մեծի երախտեացն ոչ գիտէր Արղունն՝ եթէ որով պատուեսցէ զՍմբատ… որ տիրեաց ամենայն գաւառաց եւ գիւղից իւրոց, բայց յետոյ իւր կամաւ վասն սիրոյ եւ միաբանութեան՝ ոմանց դարձոյց եւ եթող յետս աստ եւ անդ ի գիւղից եւ յագարակաց եւ զայլն հաստատեաց սեփական հայրենիք իւրոյ ազգի եւ զաւակաց…*»։

Այսպէս, երկու անգամ Մանգու խանին դիմելով եւ անոր քով երեք տարի մնալով (Օրբ. Բ. 155) ստացաւ թաթարներու պաշտպանութիւնը եւ բարեկամութիւնը (Գարեգին Կաթ. *Տարսայիճ Օրբէլեանի եւ Մինա խաթունի սերունդը* էջ 9)։

Յայտնի է թէ երբեմն Օրբէլեանք Վրացիներէն եւ Զաքարեաններէն հալածուած էին. 1183ին անոնք ջարդուած էին (տես. վերը, էջ 284) եւ իրենց ստացուածքները տրուած էին Զաքարեաններու, որոնք վերջը թէեւ հովանաւորած էին Օրբէլեանները բայց անոնք անցեալը չէին մոռցած եւ կ'ատէին թէ՛ Վրաց թագաւորները եւ թէ՛ Զաքարեանները։

Սմբատ, որ շահած էր Մոնկոլ գերիշխաններու բարեացակամութիւնը, յաջողեցաւ ելլել «*ի դուրս յամենայն դաւթարաց ի Վրաց եւ այլոց*» եւ գրուիլ տէրունի, այսինքն ուղղակի Մոնկոլներու գերիշխանութեան ենթարկուեցաւ (Օրբէլ. Բ. 157, *Խաղբակեանք*. Ա. 73)։ Հոս «*յայլոց*» խօսքը կրնայ միմիայն Զաքարեաններու վերաբերիլ, աւելի ճիշտ Իւանէի կամ Աւագի տանը (տես. *նոյնք*)։

Ուրեմն Օրբէլեան Սմբատ կը ձերբազատուէր Վրաստանի եւ Զաքարեաններու հովանաւորութենէն եւ անոնցմէ անկախ իշխանութիւն մը կը կազմէր, Մոնկոլ հովանաւորութեան տակ (*Ազգապատում* էջ 1645)։

Այսպէս, Վրա-Հայկական միութիւնը որ պահուած էր տակաւին Աւագի ատեն, կը քայքայուէր, Զաքարեանց եւ Օրբէլեանց տոհմերուն հակառակութեան եւ վերջիններուն Վրաստանի դէմ ունեցած վրէժխնդրութեան պատճառով։

Սմբատ ունեցաւ այսպէս փառաւոր իշխանութիւն մը եւ նկատուիլ սկսաւ թագաւոր, Վրաստանի իշխողին պէս։ Յիշատակարանի մը մէջ ըսուած է «*Տարսայիճի մեծ իշխանի եղբաւրն, ՍՄԲԱՏԱՅ ԱՐՔԱՅԻ եւ ամուսնոյ իւրոյ Մինայ Խաթունին, որ դուստր էր Ջալալին Աղուանից արքային*» (Գարեգին Կաթ. *նոյն*, էջ 5)։

Հայերը նպաստաւորուեցան Սմբատի իշխանութենէն, մանաւանդ Աւագի մահէն վերջ, երբ Հեթում բարւոք յարաբերութիւններ կը մշակէր Մոնգոյի եղբօրը Հուլաղու խանին հետ։

Հեթում անոր զինակիցն էր եւ Սմբատ Օրբէլեան անոր հովանաւորեալը։

Սմբատ 1273ին մեռաւ Դաւրէժի մէջ։ Իրմէն առաջ մեռած էին նաեւ իր երկու եղբայրները՝ Իւանէ եւ Փախրադուլա, եւ մեծ եղբօրը Էլիկումի որդին՝ Բուրթէլ (✝ 1261) որուն անչափահասութեան համար ինքն իշխանութիւնը ձեռք առած էր։

Իր եղբայրներէն ողջ էր միայն Տարսայիճ, որ Սմբատ իրեն օգնական առած էր 1261էն վերջ, անոր տալով Որոտան կողմերուն իշխանութիւնը։

Իսկ 1273ին, երբ եղբայրը Սմբատ մեռաւ, Տարսայիճ բոլոր իշխանապետութիւնը ինքն ձեռք առաւ (Գարեգին Կաթ. *նոյն*. էջ 9) եւ 1274ին նորոգեց Տաթեւի աւերուած վանքը եւ զայն դարձուց իր իշխանութեան մշակոյթի կեդրոնը։

Տարսայիճի այս նպաստաւորեալ իշխանութիւնը Սիւնեաց նահանգին մէջ, արեւելեան հայութեան համար կեդրոն մը դարձաւ, մանաւանդ որ Տարսայիճ փառաւոր եւ յաջող իշխանութիւն մը ունեցաւ։ Ան յաղթեց հիւսիսային ասպատակներուն, Իկոնիոնի Սելջուկեան Սուլթաններուն եւ Ասորիքի Եգիպտացիներուն, Թաթարներուն հետ իբր զինակից կռուելով (*Օրբ. Բ.* 170)։

Տարսայիճ իր առաջին կինը ողջ եղած ատեն, ամուսնացաւ Խաչէնի Հասան-Ջալալի աղջկանը եւ

Աքաբէկ իշխանին քրոջը՝ Մինա խաթունի հետ *(Նոյն.)*։

1284ին երբ Արղուն խան թագաւորեց իր սիրելիին Դեմետրէ Վրաց թագաւորին տուաւ *«զամենայն աշխարհս Հայոց, զտունն Աւագեան եւ զտունն Շահանշահեան»*, այսինքն բոլոր Զաքարեաններու ստացուածքները, այլովք հանդերձ (տես. *Օրբ. Բ.* էջ 172, Զամ. Դ. էջ 282)։

Դեմետրէ առնելով Տարսայիճը տարաւ իր հետը Աւագի երկիրները Այրարատի մէջ եւ շատ թախանձանքով զայն դրաւ *«Աթաբէգ ի վերայ ամենայն տէրութեան իւրոյ մինչեւ ի Տփղիս եւ յԱնի եւ ի Կարս» (Օրբ. Բ.* 173, *Ազգապատում.* էջ 1685 եւ 1690)։

Այսպէս, Վրաստանի թագաւորական տունը եւ Օրբէլեանք իրարու բարեկամացան։

Սադունի (✝ 1284) յաջորդեց այս կերպով իբր Հայ իշխանաց իշխան եւ իբր Հայ-Վրացի բանակներուն աթաբէկ Տարսայիճը (*Խաղբակեանք*, Ա. 134-5)։

Իրմով Օրբէլեանք նախապատիւ դիրք մը գրաւեցին Հայ իշխաններուն մէջ եւ Զաքարեանց տեղը անցան։

Տարսայիճ ինքզինքը կ'անուանէ *«իշխանաց իշխան»* ինչպէս նաեւ *«կողմնակալ յայսմ նահանգի, զոր ետ մեծ Աստուած ի Բարկուշատայ մինչ ի դաշտն Դվնայ»*, իսկ ուրիշներու կողմէն անիկա յիշուած է *«կոմս»* տիտղոսով եւ *«իշխեցող կողմանցն Սիւնեաց»* (Գարեգին Կաթ. *նոյն.* էջ 6) եւ ուրիշ տեղ մը *«Արքայաշուք իշխան»* (*նոյն.* էջ 7)։ Ասոնք ցոյց կու տան թէ որքան լայն իշխանութեան տէր դարձած էր անիկա։

Տարսայիճ, Եղեգիս աւանը՝ իր եղբօրը Սմբատի մահէն (1273) վերջը դարձուց Սիւնեաց իշխաններու նստոցը։

Տարսայիճ, որ սիրելի էր Վրաց Դեմետրէ թագաւորին, սնոյց եւ դաստիարակեց իր ձեռքին տակ անոր Դաւիթ եւ Մանուէլ որդիները, որոնցմէ վերջինին տուաւ իր Մամքան դուստրը, որ ծնած էր իր երկրորդ կնոջմէն՝ Մինա Խաթունէն (✝ 1298)։

Տարսայիճ իր առաջին կնոջմէն Արուսէն (1), ունեցած է երեք զաւակներ, Ելիկում, որ իրեն յաջորդեց, Ստեփանոս, (յետոյ եպիսկոպոս եւ Սիւնեաց պատմիչ) եւ Փախրադուլայն, իսկ Մինայէն (2) ունեցած էր Ջալալ որդին եւ Ասփա դուստրը (կին Գրիգոր Դոփեանի) եւ վերոյիշեալ Մամքանը։

Տարսայիճ մեռաւ 1290ին։

Տարսայիճի մահէն վերջ *«որդիք նորա վիճէին ի վերայ տէրութեան եւ իշխանութեան հօրն»*։

Այս վէճը կրնար յարուցած ըլլալ միայն Լիպարիտ Օրբէլեան՝ Տարսայիճի Իւանէ եղբօրը որդին, որ Սմբատին եւ Տարսայիճին ատեն, տակաւին պատանի չէր կրցած իր ժառանգական իրաւունքը պահանջել։

Ելիկումի եւ Լիպարիտի միջեւ ծագած այս վէճին համար դիմեցին Արղուն խանին, որ Ելիկումին տուաւ իրաւունքը (Գարեգին Կաթ. *նոյն.* էջ 9), սակայն բաժնեց Օրբէլեանց հողերը (*նոյն.* էջ 10)։

Իր որդիներն ալ հողաբաժինի վէճ կրնային ունենալ։

Ելիկում, ինչպէս կ'երեւի կը զոհացնէ տոհմին անդամները, եւ իր ժառանգութենէն բաժին կը հանէ իր խորթ եղբօրը Ջալալի եւ իր Իւանէ հօրեղբօրը որդւոյն՝ Լիպարիտի։

Եղեգիսը միայն մնաց Ելիկումի ստացուածք *(Տարսայիճ Օրբէլեան եւ այլ* էջ 11),

Տարսայիճի որդիները եւ եղբօրորդին՝ Լիպարիտ, *«յետեւալք սիրով միմեանս կային հանդարտութեամբ»*։

Ելիկում, Ջալալ եւ Լիպարիտ (3) *«մարմնական իշխանութեամբն պայծառանային եւ եղբայրն իւրեանց տէր Ստեփանոս՝ հոգեւոր շնորհօք եւ բարձր տիրապետութեամբ շքեղանայր»* (*Օրբ. Բ.* 179)։

Ելիկում մեռաւ 1300ին, երբ Հայ եւ Թաթար յարաբերութիւններ այլեւս չունէին նախկին բարեկամական նկարագիրը։

Թաթարներու իսլամութեան յարումը աննպաստ հետեւանքներ ունեցած էր Հայոց եւ Վրաց համար։

Արղուն (1284—1289) որ նախ այնքան բարեացակամ եղած էր, Հայոց եւ Վրաց նկատմամբ, փոխուեցաւ (տես. վերը, էջ 74), վանգի պետութեան մէջ պառակտումներ երեւան գալ սկսան։

Օրբէլեան (Բ. էջ 176) կ'ըսէ *«անկաւ շփոթումն մեծ ի մէջ մեծամեծացն գլխաւորաց»* եւ Արղուն դիմեց խիստ միջոցներու եւ նոյնիսկ Վրաց Դեմետրէ թագաւորը, զոր կը սիրէր, 1289ին սպաննեց (*Օրբ. Բ.* 177)։

Հայոց ինքնավարութիւնն ալ, կամ Հայ իշխաններէն մէկուն «իշխանաց իշխան»ի դիրքն ալ, այլեւս ոչ ոքի տրուեցաւ եւ կարգ մը տանուտիրութիւններն ալ անհետացան։

Ելիկումին մահէն տասը տարի վերջը Սիւնեաց կողմերը կ'իշխէին Ելիկումի երկու որդիները (4), Պարոն Բուրթէլ եւ Պարոն Բուղտա, ասոնց հետ Չայսար կամ Չեսար՝ Սմբատի որդին։

Բուղտայն մեռաւ 1318ին։

Իսկ Բուրթէլ կը յիշատակուի 1337ին մեծ փառքով *«յիշխանութեան տանս Սիսական մեծ սպարապետին Հայոց եւ Վրաց՝ Պարոն Բուրթելին եւ զաւակաց իւրոց Պէշքէնի եւ Իւանէի որ յՕրպելեանց»*։

Ուրիշ մէկը նոյն տարին, 1337ին, կը գրէ *«ի տէրութեան տանս Սիսական մեծի սպարապետին Հայոց եւ Վրաց՝ թագազարմ իշխանին Բուրթելին եւ լուսընծայ ծիր(ա)նածին զօրու եւ Գամեր քաջ զաւակաց նորին Պելգինի եւ Իվանէի, որ ամենայնիւ նման զօր հօրն բարեպաշտի, այսինքն խոհականութեամբ եւ մատակարարութեամբքն զաշխարհս եւ զզօրս, նա եւ յառաջադէմ յարքունիս*

(1) *Ազգով Իսմայէլացի, այսինքն արար* «դուստր տանն Սիւնեաց», *որ աւելորդ է ըսել թէ քրիստոնեայ եղած էր։*

(2) *Դուստր Խաչէնի մեծ իշխան Ջալալի, որ «Աղուանից արքայ» ալ կոչուած է։ Ամուսնութիւնը կնքուած է նոյնիսկ Արուսի կենդանութեան, ինչ որ անսովոր էր։*

(3) *Օրբէլեան (Գ. 238) կը յիշէ Մամքան անունով քոյր մըն ալ։*

(4) *Ունէր աղջիկ մըն ալ որ ամուսնացած էր Խաչէ Պռօշեան իշխանին հետ։*

*եւ մեծափառ. զի մեծարանս արար տէր երեսաց սոցա»*։

1341ին մէկը պատուանուն մըն ալ կ'աւելցնէ ստորագրութեան հետ, Բուրթելը կոչելով *հիւպատոս*։

Ասկէ յետոյ չի յիշուիր Բուրթել, այլ իր որդիքը, որոնց վրայ 1348ին կը գրուի «*յիշխանութեան եւ ի տէրութեան որ ի կայս եւ ի կոյս նահանգաց Սիւնեաց՝ Աստուծով զօրացեալ մեծ իշխանաց իշխանին Բէլքինայ եւ հարազատ եղբօրն նորին Իվանէի, որդւոց բարի պաշտմամբ փոխեցելոյն առ Քր. յոյսն ամենեցուն՝ պարոն Բիրթելին*» ուրկէ կը հասկցուի թէ Բուրթել քիչ առաջ մեռած է։

Բեղգենի յաջորդեց եղբայրը Իւանէ որ կը յիշուի 1377ին, որուն ատեն «*իշխանութիւնս հայոց, էր նուազեալ*» կը գրէ մէկը եւ միայն «*մնացեալ Իւանէ որ կոչի Ինանիկ, որդի մեծին Բուրթելին, ի մէջ այլասեռից, բազում հարկապահանջութեամբ*»։

Լենկթիմուրի արշաւանքէն առաջ կը մեռնի Իւանէ եւ իրեն կը յաջորդեն իր որդիները Սմբատ եւ Բուրթել ԺԴ. դարուն վերջը եւ ԺԵ.ի սկիզբը։

Լենկթիմուրի ատեն այս նուաղուն եւ անշքացած իշխանութիւնն ալ պիտի ջնջուէր, ինչպէս պիտի տեսնուի։

## 2. ՉԵԶԱՐԻ ՃԻՒՂ

Ինչպէս վերը տեսնուեցաւ Օրբէլեան տունը ունեցաւ կարգ մը ճիւղաւորումներ որոնցմէ մէկն էր Չեզարի ճիւղը, որուն կը պատկանէր Վարդանաբերդ եւ շրջակայքը (*Խաղբակեանք Ս.*, էջ 40—41)։

Չեսար կամ Չայսար որդին էր Սմբատ Օրբէլեան իշխանաց իշխանին եւ կնոջ՝ Անսայի, եւ քեռն Իւանէի, եղբօրը Բուրթէլի եւ Սմբատայ եւ Ելիկումի (Մեսրոպ եպս. Մագիստրոս. *Հայկական երեք մեծ վանքեր*. էջ 114)։

1332ին կը յիշատակուի Չեզար։ (*Նոյն*)։

## 3. ՋԱԼԱԼԵԱՆՔ

Տարսայիճ Օրբէլեան «իշխանաց իշխան»ին անդրանիկ որդին Ելիկում, ինչպէս տեսնուեցաւ երբ իր հօրը յաջորդեց, իր Իւանէ հօրեղբօրը որդին Լիպարիտ իրաւունք պահանջեց, եւ Արղուն (1284 - 1289), որուն վճիռին դիմեցին, իրաւունք տուաւ Ելիկումի, որ վեհանձնօրէն թէ՛ Լիպարիտի եւ թէ՛ իր խորթ եղբօրը Ջալալի իր հողերէն բաժիններ սահմանեց։

Ելիկում ծնած էր Տարսայիճի առաջին կնոջմէն՝ Արուսեակէն, իսկ, երկրորդ կնոջմէն՝ Մինա խաթունէն, ունեցած էր նաեւ մանչ զաւակ մը՝ Ջալալը, որ այսպէս կոչուած էր իր մօրը, Մինա խաթունին, հօրը անունով։

Ելիկում իր այս խորթ եղբօրը իբր ժառանգութիւն տուաւ մօտաւորապէս հին Ուրծ (հիմա Քէշիշքենդ) եւ Արած գաւառակները, Վէտի գետակին միջին հոսանքներուն մէջ, «*ընդ մէջ կալով Վայոց Ձորոյ եւ Շարուր դաշտի*» (Գարեգին Կաթ. *Տարսայիճ Օրբէլեան եւ Մինա խաթուն* էջ 12) կամ Ուրծ եւ Վէտի իր ձորով մինչեւ Երերունք իրեն սահմանուած բաժինն էր (*նոյն*.) (1)։

Ջալալի կալուածը Ջուլայի արեւմտեան կողմերը Զանախչայի ակունքներուն մօտ էր, Սարայբուլախ կամ Ջինճիրլի լեռներու հիւսիսային կողերուն վրայ։ Ջինճիրլի գիւղէն մօտ մէկ վեստ հեռու էր Ս. Կարապետի վանքը (*Տարսայիճ Օրբէլեան եւ Մինա խաթուն* էջ 12)։

Պայտուն կամ Պայրուն, որ 1292ին միայն վեց ամիս Մեծ Մոնկոլի աթոռը գրաւած է, տիպեց Ջալալը որ իրեն բերէ Ամարասի մէջ պահուած Ս. Գրիգորիսի գաւազանը եւ 36 ակերով համակ ոսկի, աստուածահրաշ խաչը, զոր վերջը Ապաղա խանի կինը Տեսպինա ձեռք ձգած եւ Պոլիս ղրկած է (*Օրբ. Բ.* 218 եւ *Պատմ. Աղուանից*, էջ 204—5)։

Ջալալ որուն կինն էր Գոնձա (2) ունեցած է չորս որդիներ, Տարսայիճ, Շահնշահ (✝ 1330), Ելիկում (3), Աղբուղա-Չեսար։

Տարսայիճ եկեղեցականութեան ասպարէզ մտնելով Ստեփանոս կոչուեցաւ եւ հովուեց Սիւնեաց թեմը, (*նոյն*, էջ 11)։ Ասիկա իր հայրը՝ Ջալալը կ'անուանէ «*իշխանաց իշխան, քաջ սպառազէն, մենամարտիկ զինուոր*» (*նոյն*, էջ 13)։

Ջալալը կը մեռնի 1314ին, եւ իրեն կը յաջորդէ Ելիկում որ կը ժառանգէ Ուրծը։

Յիշատակարաններ զայն կը յիշատակեն 1314 եւ 1331 թուականներուն։

Իր յաջորդներուն վրայ տեղեկութիւններ կը պակսին ինծի։

## 4. ԼԻՊԱՐԻՏԵԱՆՔ

Լիպարիտ Օրբէլեան, որդի Իւանէի (✝ 1260) մէկն էր անոնցմէ որ, ինչպէս տեսնուեցաւ, ժառանգական վէճ յարուցին երբ Տարսայիճ մեռաւ 1290ին, բայց Արղուն խան, իր իշխանութեան մէջ հաստատեց Ելիկումը, որ վեհանձնութեամբ ինքնաբերաբար հողեր տուաւ Լիպարիտի եւ Ջալալի եւ երեքը խաղաղութեամբ կառավարեցին Սիւնիքը։ Ուրեմն Լիպարիտ, թոռը Լիպարիտ Օրբէլեան Վրացի իշխանին, որ մօր կողմէ միայն Հայ էր *(4)* եւ Սիւնիք հաստատուած, Իւանէ Աթաբէկի հովանիին տակ (տես. վերը, էջ 291) կ'ունենար Սիւնեաց մէջ նոր իշխանութիւն մը։

Լիպարիտ Իլչիի հետ խօսուած գացած է Ղազան խանի (1295—1304) մեծ զօրապետ եւ քեռայր Խութլու շահի հետ, մասնաւորապէս բողոքելու համար Նեվրուզի դէմ որ կը կեղեքէր չարաչար երկիրը։ Անոնք «*թուք արծակեալ յերեսս Նաւռուզին, մեծ անարգանօք ծաղէին*» (*Օրբէլեան Բ.* 223)

(1) *Մոշաղբիւրը, Քալաս կամ Քլիւս, Ջալալի կը պատկանէին*. (Տարսայիճ Օրբէլեան *եւայլն էջ* 18)։

(2) *Գոնձա դուստրն էր Իւանէի եւ Թոռ մեծ Զաքարէի եւ քոյր Շահանշահի* (նոյն, *էջ* 14)։ *Շինած է* 1301*ին Ջինճիրլուի Սպիտակաւոր Աստուածածին վանքը* (նոյն, *էջ* 13—16)։

(3) *Աստ որդին էր պարոն Ջանգուլ որ կը յիշատակուի։*

(4) *Վասնզի Ելիկում վրացին ամուսնացած էր Ճաձկեցի Աբասի աղջկան Խաթունի հետ։ Իւանէ Աթաբէկէն առաջ ցած էր հողեր եւ կարգուած էր Կողմնակալ Սիւնեաց եւ իշխանաց իշխան։*

եւ կը յաջողէին Նեվրուզը պաշտօնանկ ընել տալ:

Լիպարիտ ունեցած է չորս որդի, որոնք են Ելիկում, Պածած, Սմբատ, Տէր Յովհան եւ աղջիկ մը որուն անունը ծանօթ չէ (Օրբ. Բ. 99—180)։ Լիպարիտ մեռաւ 1294ին (1):

Առնցմէ Սմբատ փեսայացած էր Սագռեաց, իսկ Յովհաննէսը Ստեփանոս Մետրոպոլիտ իրեն քով առած էր աշակերտութեան, իրեն յաջորդ պատրաստելու համար եւ ձեռնադրած էր քահանայ (*Օրբէլեան Բ.* 179):

Ելիկում յաջորդած պէտք է ըլլայ իր հօրը, իսկ իր յաջորդները անծանօթ կը մնան:

## ԺԲ. ՇԱՀՈՒՌՆԵՑԻՔ

Զաքարեանց շրջանի վերածնող Հայաստանի քաղաքական իշխանութիւններէն մէկն էր Շահուռնեանց իշխանութիւնը՝ վասալ Օրբէլեանց: Այս տոհմին պետերը սպարապետներն էին իրենց աւատապետներուն՝ Օրբէլեանց իշխանական տան, որոնց զօրքը կը բաղկանար «ազատ» եւ «ռամիկ» հեծեալներէն (*Խաղբակեանք, Ա.* էջ 21) ԺԴ. դարուն սկիզբը:

Շահուռնեցիք կը տիրէին Վայոց Ձորի մէկ մասին, միասին Խաղբակեանց, Օրբէլեաններու, Մեհեւանեանց, (*Խաղբակեանք, Ա.* էջ 36):

Սրկղունք լեռան ամբողջ հարաւային ստորոտը՝ մինչեւ Արփա գետը Պռօշեանց սեփականութիւնն էր (*նոյն.* էջ 43), իսկ Սրկղունեաց սարէն (Թեքադուլտուրան) դէպի արեւելահարաւ, Արկազէն մօտ ան վերտ հեռու գտնուող Դալիկ Թէփէն եւ անոր հարաւ-արեւմտեան փեշերը մինչեւ Արփայի գետափը Հերհեր աւանը իր շրջակայքով, արձանագրութիւններու եւ Վարդաշէն պահուած Աւետարանին յիշատակարանին համաձայն, Շահուռնեցոց սեփականութիւնն էր (տես. *Տարսայիճ իշխան եւ Մինա խաթուն*, էջ 11):

Շահուռնեցիք կ'իշխէին, ըստ յիշատակարանին, բացի Հերհերէն (Երերան) եւ նոյն տեղի վանքէն, որ կը գտնուէր գիւղէն դէպի հիւսիս, նաեւ «*Բալատակին եւ այլ հայրենեաց*»: Այս վերջին տեղերն անյայտ են եւ անորոշ ինչպէս կը թուի Շահուռնեաց կալուածը ընդարձակ չէր եւ ամփոփուած՝ Հերհերի վտակի հովիտին մէջ, այն ալ ոչ ամբողջ:

Իշխանական տոհմին կեդրոնը Վայոց Ձորի Հերհեր աւանն էր, Գնդեվանքի եւ Ս. Խաչի կամ Մալիշկայի մէջ, Դալիկ Թէփէի ստորոտը։

Իշխանութեան գլխաւոր արքավայրն ու հոգեւոր կեդրոնն էր Ս. Սիոն կոչուած անապատը զոյգ մատուռներով, Հերհերէն քիչ մը դէպի հիւսիս յորձակի մը մէջ:

Այս տոհմին ծագումը եւ իրենց հողային կալուածներու ստացութեան ժամանակամիջոցը յայտնի չէ, սակայն ԺԳ. դարու վերջին քառորդին արդէն այս իշխանական տունը յիշուիլ կ'սկսի:

Իրենց գործն է Հերհերի մատուռը, Շահուռընեաց իշխանական տոհմի սեփական, որ 1282ին կառուցուած էր (Գարեգին Կաթ. *Խաղբ. Ա.* էջ 117 եւ 178)

Առաջին ծանօթ իշխողն է Վահրամ Շահուռնեցի որ 1283—1310 թուականով յիշատակարաններու մէջ կը յիշատակուի:

Վահրամ "գեղապանծ իշխան"ին կինն էր Գոնձա եւ զաւակներն էին Թուխտին (2), Ուքան, Հասան եւ Ամադին, (Ալիշան, *Սիսական* էջ 114):

Իր մահէն (1310) վերջ իշխանութիւնը իր զաւակները միասին վարած են վասնզի 1315ին արձանագրութեան մը մէջ ըսուած է «*ի պատրոնութեան տեղւոյս Ուքանայ, Հասանայ Ամադենայ*» (*Սիսական* էջ 117)։ Ուքան, 1295—97ին կը յիշուի, ինչպէս նաեւ 1326ին կամ 1336ին, երբ կարեւոր նուիրատուութիւն մը կ'ընէ Երերանի վանքին (*Խաղբ.*, Գ. էջ 79): «*Զազնիւն յընտրեալսն եւ զքաջն ի զաւրականսն ԶՊԱՐՈՆ ՈՒՔԱՆՆ*» հաւանօրէն թաղուած է 1326ին Ցախաց Քարի մէջ (*Խաղբ. Բ.* էջ 165—171):

Հասան, ինչպէս կը տեսնուի իր Ուքան եւ Ամադին եղբայրներուն հետ իշխած է:

Այս Ամադինը «*նիզակակալ եւ կորովաձիգ սպարապետ*»ն էր «*ի դրան թագաւորաշուք իշխանաց Բուրթելին* (Օրբէլեան) եւ *Վախախին*» (*Խաղբակեանք, Ա.* էջ 21):

Ուքան եւ Ամադին դեռատի մեռած են, ինչպէս կը հետեւի 1295 թուականով Ամադինի հոգւոյն իր մօրը Գոնձայի Նորավանքի կատարած նուիրատուութեան արձանագրութենէն եւ 1345ին ուրիշ արձանագրութենէն մը, ուր երեք եղբայրներուն ալ մեռած ըլլալը կը հաստատուի:

Ամադինի կինը Թուխթենի էր «*դուստր Իւանէ թագաւորատոհմ եւ բարեպաշտ իշխեցողի Որոտան գաւառի*» եւ «*քոյր քաջ քարտուղարի եւ երջանիկ րաբունապետի Յովհաննէս վրդ.ի*» որ Որոտեցին է:

Այս իշխանուհին «*հարսն մեծ Շահուռնեցեանց, կենակից հզաւր եւ մեծ իշխանին՝ Ամադին*», ապահովաբար Օրբէլեան տոհմէն էր, ինչպէս կը հասկցուի Վարդաշէնի Աւետարանին 1349 թուականով յիշատակարանէն (Յովսեփեանցի ժողովածու. *Հաւուց Թառ.* էջ 44 եւ 62):

Ամադին եւ Թուխթենի ունեցած են միակ աղջիկ մը, Նաթել անունով: Այսպէս, սպառած է այս ցեղին արու սերունդը:

Նաթելը կ'ամուսնացնեն եւ անոր հայրենեաց ժառանգ կը դարձնեն Բուրթել Օրբէլեանի թոռը եւ Բեղքինի որդին Կուկը, տուն փեսայ բերելով:

Այսպէս, Շահուռնեանց տոհմը կը ձուլուէր Օրբէլեանց տան մէջ:

(1) *Ժամանակագրական սխալ։ Այն ատեն Խազանին գացած չկրնար ըլլալ։*

(2 *Հաւանօրէն կանուխ մեռած:*

## Գ.

## ԽԼԱԹԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Տեսնուեցաւ թէ Սելջուկեանց շրջանին երբ Վրաստան շնորհիւ Զաքարեաններու, այսինքն Հայերու, օժանդակութեան, հիւսիսային Հայաստանը նուաճեց եւ իր տիրապետութեան ենթարկեց, տեւականապէս կըռուեցաւ կեդրոնական հարաւային Հայաստանի արաբ, թուրք, քիւրդ եւ թուրքմէն մահմետական իշխանութիւններու հետ:

Ասոնց մէջ ամէնէն կարեւորն էր կեդրոնական Հայաստանի Ապահունեաց գաւառին մէջ կազմուած, Խլաթ մայրաքաղաքով, իսլամ իշխանութիւնը, որ յաւակնութիւնը ունէր ինքզինքն հռչակելու Հայաստանի թագաւորութիւն, քանի որ իշխողները կը կիրարկէին Շահի Արմէն (Հայ Թագաւոր) տիտղոսը։

Հայ եւ Վրացի բանակները փորձեցին նուաճել այս իշխանութիւնը բայց չյաջողեցան:

Ընդհակառակը 1207ին, Եգիպտոսի Էյուպեանք էին որ տիրացան Խլաթի եւ կառավարեցին այս իշխանութիւնը իրենցմէ նշանակուած էմիրներով որոնք իրենց կարգին Շահի Արմէն տիտղոսը առին (տես. վերը, էջ 314):

Թաթարները երբ Հայաստան արշաւեցին, իմէջ այլոց, 1244ին գրաւեցին Խլաթը, զոր տուին, անշուշտ ի յարգանս Աւագին, Թամթա Զաքարեան իշխանուհիին, որ ինչպէս տեսնուեցաւ իր հայրը՝ Իւանէ, կնութեան տուած էր Խլաթի Էյուպեան տիրակալ Նէճմէտտին Ահուանտի կամ ըստ ոմանց Իկոնիոյ, Քէյքաուս Սուլթանին (1): Թամթա յետոյ կինը եղած էր Սալահէտտինի որդւոյն Աշրաֆի, որ տիրացած էր Խլաթի (*Կիրակոս*, էջ 80—81, *Վարդան*, էջ 138):

Ան ի վերջոյ ամուսնացած էր, ըստ Երուանդ Լալայեանցի, Ճէլալէտտին Խուարէզմի Սուլթանին հետ՝ 1230ին, երբ անիկա Խլաթը գրաւած էր (*Կիրակոս*, էջ 119):

Թամթա՝ Ճէլալէտտինի հետ Խուարէզմ գացած եւ հոն գերի մնացած էր երկար ատեն թաթարներու ձեռքը (*Կիրակոս*, 161)։

Բայց երբ Վրաց Ռուսուդան թագուհին կը բարեկամանայ թաթարներու հետ, կը խնդրէ անոր ազատ արձակումը, ինչ որ կը շնորհուի։

Խանը հրովարտակով մը Թամթայի կը շնորհէ նաեւ *«զոր ինչ լեալ իցէ նորա՝ մինչ կին էր Մելիք Աշրաֆին»* եւ այսպէս անոր կը տրուի *«զԽլաթ եւ զգաւառսն որ շուրջ զնովաւ»* (*Կիրակոս*, էջ 161):

Եւ որովհետեւ, իր եղբայրը Աւագ, իբր իշխանաց իշխան, Հայաստանի մէջ ամէնէն ազդեցիկն էր, Խլաթն ալ դարձաւ Աւագի գլխաւորած համադաշնակցութեան մաս կազմող իշխանութիւններէն մին:

Թամթա 1243ին տակաւին ողջ էր:

Հ. Ալիշան (*Հայապատում*, Բ. էջ 174) կը հաւաստէ թէ շատ արեւելեան պատմիչներ կը յիշեն Թամթան, բայց այնքան այլայլութեամբ՝ որ կարծել կուտայ թէ Իւանէի թոռն՝ Աւագ. աղջիկ մը ունեցած է Թամթա անունով որ ուրիշ Շահի Արմէնի մը կին եղած է եւ յետ մահուան ամուսնոյն թաթարներու խանին դիմելով Խլաթի տիրացած՝ ԺԴ. դարուն կէսին:

Այս կերպով Խլաթը եւս կը մտնէր Զաքարեանց իշխանութեան տակ, սակայն երկար տեւած պէտք չէ ըլլայ հայկական տիրապետութիւնը Խլաթի վրայ:

1351 թուականին, Սամուէլ Անեցիի շարունակողը արձանագրած է թէ *«Բայրուղայն զԽլաթ էառ եւ գնաց ի Մերտին եւ տարաւ զդուստրն Սուլդանին ի Թաւրէզ Աշրաֆին»* (*Սամուէլ Անեցի* էջ 169):

Դժբախտաբար անիշխանութեան շրջանին պատահած այս դէպքը դժուար է լուսաբանել, վասնզի յայտնի չէ թէ ո՞վ է Բայրուղայն եւ ո՞ր Սուլթանին աղջիկն է որ կը տանի Դաւրէժ՝ Աշրաֆին, որ ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 334), եղբայրն էր Փոքր Շէխ Հասանի (որդի Թիմուրտաշի) եւ իշխած է Ատրպատականի եւ Հայաստանի կարեւոր մէկ մասին 1338էն 1358:

## Դ.

## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա. ԱՂԹԱՄԱՐ

Տեսնուեցաւ որ Սոկման Բ. Նասրէտտին Մոհամմէտի ժամանակ (1128—1185), 1132ին, Վասպուրականի մէջ իրենց անկախութիւնը պահող Ամիւկ՝ եւ Աղթամար իրարմէ բաժնուած եւ Շահի Արմէնին ճորտ եղած էին (2) (տես. վերը, էջ 269)։

Այս բաժանումէն վերջ Աղթամար կ՚անցնի Արծրունի տոհմէն Սէֆէտտինի, հետեւեալ կերպով:

Խեդենիկ Բ., Արքայունի որդի Ստեփանոս Ալուզի, Ամիւկի իշխանին, իր Մարիամ անուն դուստրը (տես. *Բիւզանդիոն* թ. 1193) կնութեան կուտայ Արծրունի արքայական սերունդէն Պարոն Սէֆէտտին Արքայունիի, իբր օժիտ տալով Աղթամար կղզիին կէսը, ինչպէս կը պատմէ Դանիէլ Աղթամարցի։

(1) Այս տարակոյսը անոր համար որ Կիրակոս 1210ին Իւանէի Խլաթի վրայ յարձակումը եւ գերութիւնը պատմած ատեն, «իկողմանս Դամասկոսի» նստող Սուլթաններէն մէկը «Կուզ», անծանօթ անունով կը կոչէ եւ միւսները՝ Քամալ և Աշրաֆ, որոնք յայտնի են։ Ինչպէս ըսի Գարեգին Կաթող. Նէճմէտտին Ահուանտի հետ կը նոյնացնէ Կուզը իսկ ուրիշներ Քէյքաուս Սուլթանին: Եթէ Կուզը ցեղագրական իմաստով իբր Խուզ առնենք կը յարմարի Իկոնիոյ Քէյքաուս Սուլթանին որ Թուրք էր, իսկ Ահուանտ քուրդ կամ հայորդի։ Եթէ մարմնական պակասութեան մը համար տրուած է այս կոչումը այն ատեն կարելի է թերեւս պատշաճեցնել նաեւ Նէճմէտտին Ահուանտին։

(2) Մխիթար Այրիվանեցի էջ (էջ 79, Խեդենիկը կը ներկայացնէ Ամուկի տէր եւ Ամուկը գրաւողը կը ներկայացնէ Ելտկուզ աթապէկը, 1151ին (Աճառեան, Հայոց Անձնանուններու Բառարան Բ., էջ 507)։

*«Պարոն Սեֆեդին Արքայունն... յոյժ սիրեաց Խեղենիկ Արքայուն իբրեւ յիւրմէ ծնեալ որդի եւ ետ զդուստր իւր սորա ի կնութիւն եւ յօրինաւոր ամուսնութիւն, եւ ետ սորա վարձք եւ բաժինք զկէսն Աղթամարայ, զոր յետ սակաւ ժամանակաց ի ծերանալ Խեղինկին եւ ի չքաւորութեան անձինն իւրոյ յետոյ դարձեալ ծախեաց զկէսն այլ վերստին Պարոն Սեֆեդնին եւ առեալ զգինն բազում ոսկիս ի պէտս մարմնաւոր պիտոյից իւրոց»* (*Թովմա Արծրունի*, էջ 362):

Այսպէս, Սէֆէտտին Արքայուն կը դառնայ ամբողջ կղզիին տէր, եւ Խեդենիկի ձեռքը կը մնայ միայն Ամիւկի բերդը։

Սէֆէտտինի, կղզիին տէրը դառնալէն վերջ Աղթամարի կաթողիկոսական աթոռը կը բարձրացնէ իր զաւակը, ինչպէս երբեմն ըրած էր Վասպուրականի իշխող Խեդենիկ Ա. (հմմտ. Ներսէս վրդ. Ակինեան *Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ*, էջ 38—39):

Սէֆէտտին իբր տէր եւ տիրական, կը գործէ Աղթամարի մէջ, հոն առանձին իշխանութիւն մը կազմելով ԺԴ. դարուն առաջին քառորդին։

Այդ նոր իշխանութիւնը կը կառավարեն այդ թուականէն վերջ Սէֆէտտինի զաւակները յաջորդաբար:

Սեֆետտին ունեցած է Ստեփանոս, Ամիր կամ Պարոն Կուռնի բէգ, Ամիր կամ Պարոն Գուրգէն (Գորգի), Զաքարիա, Թագուհի եւ Մարթա անուն զաւակներ (տես. *Բիւզանդիոն*, թ. 1193. Հ. Ակինեան *նոյն*, էջ 42), որոնցմէ առաջինը՝ Ստեփանոս եղած է Աղթամարի Կաթողիկոս (1272—1296). թերեւս վարելով նաեւ աշխարհական իշխանութիւն, վասնզի յիշատակարանի մը մէջ 1276 թուականով (տես. *Մատենադարան Թարգմանութեանց Նախնեաց* էջ 164—165) կը յիշատակուի *«ի Թագաւորութեան Տեառն Ստեփանոսի»* (Հ. Ակինեան, *նոյն*. էջ 43)։

Ստեփանոսի կը յաջորդէ իր եղբայրը Զաքարիա Ա. Սէֆետինեան (1296—1336) որուն Սամուէլ Անեցիի շարունակողը (էջ 159) կուտայ *«պայազատ եւ արքայազարմն»* կոչումները (Հ. Ակինեան *նոյն*, էջ 42):

1336ին գրուած է ձեռագիր մը *«ի կաթողիկոսութեան հայկազանց սեռի, Տեառն Զաքարեայ Աղթամարեցւոյն եւ ի թագաւորութեան նստեալ ի գահն... զոր տէր Աստուած պահեսցէ անսասանելի զաթոռ հայրապետական եւ զթագաւորական»* (Ե. Լալայեանց, *Ցուցակ Վասպուրականի Ձեռագրաց*, էջ 195):

1338ին գրուած ձեռագիրի մը յիշատակարանը կը յիշէ Զաքարիա Ա.ի յաջորդը՝ Ստեփանոս Գ. Կաթողիկոսը (1336—1346) նախորդ յիշատակարանին բառերովը, տառական նմանութեամբ եւ միայն անունի փոփոխութեամբ (տես. *նոյն*. էջ 197):

Քիչ յետոյ Աղթամարի կաթողիկոսներուն այս աշխարհական հողատէր իշխանութիւնը դադրած կը թուի, բայց կաթողիկոսները՝ մնացած են սեփականատէր կղզիին:

## Բ. ԱՄԻՒԿ

Խեդենիկ Բ. Արքայուն, ինչպէս տեսնուեցաւ, Աղթամար կղզին ձեռքէ հանելէ վերջ իշխած է սոսկ Ամիւկի:

Այս իշխանութիւնը շատ նկուն եւ ընկճուած, պէտք է շարունակուած ըլլայ Խեդերնիկէն վերջ:

Ըստ Աճառեանի անիկա 1185 թուականին իր կնոջ Մարջանի հետ Թեզանոյ Շամբ կոչուած կալուածը նուիրած է Հոռոմոսի վանքին:

Հ. Ակինեան 1245ին կը յետաձգէ այս նուիրատուութիւնը։

Ալիշան, (*Շնորհալի եւ պարագայ իւր* էջ 107) կը յիշատակէ 1299ին Խեդենիկ իշխան մը իբր *«տէր եւ իշխան Ամիւկ բերդի»* որ ապահովաբար ուրիշ մըն է եւ յաջորդ մը Խեդենիկ Բ.ի: Ասիկա թոյլ կուտայ ենթադրելու թէ այս իշխանութիւնը ամփոփուած Ամիւկ բերդին մէջ, շարունակուած է մինչեւ Լէնկթիմուրի շրջանը, ուր դեռ յիշատակուած կը տեսնենք թէ՛ Աղթամարը եւ թէ՛ Ամիւկը։



# Ե.

# ԵՕԶՊԷՔ ԹԱԹԱՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ

# (1380–1467)

## Ա.

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԹԻՄՈՒՐԵԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Արդէն բաւական մանրամասն խօսուած է Եօզպէք թաթարներու տիրապետութեան շրջանին Հայաստանի կացութեան վրայ (տես. վերը, էջ 75—81) ուստի աւելորդ է վերստին կրկնել այն շփոթ անցքերը որոնք այդ հազիւ ութսունամեայ խառնակ ժամանակամիջոցին պատահած են:

Այս շրջանը կերպով մը շարունակութիւնն է Մոնղոլականին կամ անոր մէկ մասը, վասնզի անոնց ցեղակից Եօզպէք Թաթարները ահարկու պետի մը՝ Լէնկ Թիմուրի առաջնորդութեամբ իրենց տափաստաններէն նոր գաղթաշարժով մը եկան արեւմուտք եւ նոր պետութիւն մը հիմնել փորձեցին քայքայուած Մոնկոլ պետութեան աւերակներուն վրայ:

Տեսնուեցաւ (վերը, էջ 332—7) թէ Մոնկոլ տիրապետութեան վերջին կիսադարեան ժամանակամիջոցին (1335—1380), զոր անիշխանութեան եւ խառնակութեանց շրջան կոչեցի, ինչ դառն վիճակի ենթարկուած էր Մոնկոլ տիրապետութեան տակ գտնուող Հայաստանը:

Բայց իրենց անկումէն վերջ տիրող դժբախտութիւնը շատ աւելի մեծ էր եւ անբաղդատելի:

Անիշխանութիւնը, յափշտակութիւնը, սովը, գերագոյն աստիճանի հասած էր. *«Ի թագաւորութեան զոր ոչ գոյ, այլ բարձրեալ է թագաւորութիւն, քանզի իշխանք են խռովարարք եւ տատանեալք, ի վերայ միմեանց, աղմկեալք, զոր ոչ կարէ բերան պատմել, զոր յայսմ ամի տեսին աչք մեր զաղէտ տարակուսանաց, զորս էրեսուն հազար մարդադէմ գազանաց ի վերայ երկրիս մերում յարձակեալք զնետս սրեալ եւ զաղեղն լարեալ եւ զթիւրս (զթույնս?) իւրեանց թափեալ, յարեան ի վերայ երկրիս մերում ... քանզի բազում գաւառս գերեցին եւ աւերելով կործանեցին, եւ զինչս արդիւնեաց զամենայնն յափշտակեցին եւ զամենեան զքրիստոնեայք կողոպուտ արարին, մերկ եւ բոկ եւ ոչ թողին ոչ մի ինչ վերա անձանց քրիստոնէից, այլ զանասունս տաւարաց ջոկս ջոկս առեալ տարան, զոչխարաց եւ զեզանց, զկովուց եւ զցլուց, զիշուց եւ զերիվարաց, զհանդերձս ի յանձնէ մերկացուցին ... որ յերէկ տան տանուտէր եւ ամենայն իրաւք լի, եւ այսաւր ... մերկ իվերա մոխրոյ նստեալ»*, հարուստ երկիրը աղքատացաւ, այն աստիճան որ շուները անօթութենէն կը սատկէին: (Համեմ. Գարեգին Կաթ. *Խաղբակեանք*, էջ 227—228)։

Եւ ինչպէս Գարեգին Կաթ. դիտել կուտայ, յիշատակարանին հեղինակը կը խօսի միայն իր գաւառին մասին, բայց պատկերը ընդհանուր էր: Մարդկային կարողութենէն վեր էր տանիլ այս հարստահարութիւնները այնպէս որ ինչպէս յիշատակագիրը կը շեշտէ ողջ մնացողները երանի կուտային մեռեալներու, որոնք ազատ էին *"յայսմ տանջանաց"*: *(Նոյն.)*:

Այս շրջանին վերաբերեալ բազմաթիւ յիշատակարաններ, գրեթէ ամէնքն ալ նոյնանման տողեր ունին պատկերացնող Հայաստանի այն օրերու վիճակը:

Այս կացութիւնը դժբախտաբար վաղանցուկ չեղաւ եւ աւելի քան դար մը տեւեց (Գարեգին Կաթ. *Խաղբ.* Ա. էջ 228):

Այսպէս, Մոնղոլական տիրապետութեան յաջորդող խռովութիւնները եւ պատերազմները մեծ վնաս հասցուցին Հայաստանի վասնզի քանդեցին տնտեսական եւ մշակութային կեանքը եւ վերջ տուին իշխանական տուներու գոյութեան:

Այդ իշխանական տուները անկարող զէնքի ուժով պահպանելու իրենց իշխանութիւնները, իրենք ալ ենթարկուեցան հալածանքներու, յափշտակութեանց, սպանութեանց, գաղթի, իրենց հպատակներուն պէս:

Լէնկթիմուրէն առաջ, բայց մանաւանդ անոր ժամանակ, հալածանքի կ՛ենթարկուին Զաքարեան, Օրբէլեան, Դոփեան եւ այլ իշխանական տուները, որոնցմէ ոմանք հայրենազուրկ կը դառնան եւ իրենց հողերը լքելով կը փախչին կամ իրենց ժողովուրդին հետ կը գաղթեն ուրիշ վայրեր:

ԺԴ. դարուն վերջերը Հայաստանի իշխող տարրը Հայը ըլլալէ դադրած էր:

Երկրին արեւմտեան մասին մէջ տեղաւորուած էին Թուրքմէնները, արեւելեան կողմը՝ Պարսիկները, իսկ հարաւային կողմը՝ Քուրդերը։

Հազիւ մի քանի Հայ իշխանական տուներ կը տոկային տակաւին երբ ահարկու աշխարհակալը Լէնկթիմուր, Հայաստանը նուաճելու եկաւ: Ան 1370էն 1380, շրջանին, Պարսկաստանը արիւնով ողողել, Հնդկաստանի մէջ մարդիկը անասուններու պէս մոր-

# ԷՕՋԴԷՔ ԹԱԹԱՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

Կարմիրով սահմանագծուած են չորս գլխաւոր պետութիւնները, և թուագրուած։

1. Ազգոյունլուներու կամ Պայընտրեանց իշխանութիւնը։
2. Գարագոյունլուներու կամ Եուսուֆեանց »
3. Պոնտոսի յոյն կայսրութիւնը։
4. Վրաստանի թագաւորութիւնը։

թելէ վերջ, իր իշխանութեան տասներորդ տարին, մտաւ Ատրպատականէն Հայաստան։

1382ին Հայաստանի սաստկասառոյց ցուրտին չտոկալով քաշուեցաւ, հոն վերստին երեւալու համար 1387ին, Միջագետքի եւ Սիւրիոյ տիրելէն վերջը (տես. վերը, էջ 76)։ Նուաճեց ամբողջ Ատրպատականը ու Արարատեան դաշտը, եւ ապա անցաւ Վրաստան։

Այս երկիրները առնելէ վերջ գրաւեց Վասպուրականը՝ Վան քաղաքով, որ այդ ժամանակ դարձած էր Գարագոյունլուներու իշխանութեան կեդրոնը (*Հայ ժողովրդի պատմություն* էջ 231)։ Ամբողջ հարաւային Կովկասը նուաճելէ վերջ, Լէնկթիմուր ասպատակեց նաեւ Միջագետք եւ Փոքր Ասիոյ արեւելեան գաւառները, եւ իր տիրապետութիւնը հաստատեց այդ վայրերուն վրայ։

Լէնկթիմուրի արշաւանքները իրենց վայրագութեամբ, աւերածութեամբ, բնակչութեան ընդհանուր ոչնչացումով եւ գերեվարութեամբ կը գերազանցէին մոնկոլական արշաւանքները։

Հայաստանն ալ ենթարկուեցաւ այս հարուածին։ Թովմա Մեծոբեցի իբր ականատես եւ ժամանակակից կ'ըսէ *«աւերեցաւ ամենայն երկիրս, զի յԱրճշոյ մինչեւ ի դուռն Վրաց եւ մինչ ի Կուր գետն Աղուանից շաղախեցաւ արեամբ անմեղաց երկիր ամենայն չարչարանօք, սպանմամբ եւ գերութեամբ» (Մեծ. էջ 32)*։

Լէնկթիմուր սակայն չկրցաւ նուաճել բոլոր Հայաստանը եւ պարտաւորուեցաւ հեռանալ, երկիրը նուաճելու գործը յանձնելով Ազտինի։

1395ին կրկին եկաւ Հայաստան, եւ անկէ անցնելով մտաւ Վրաստան, երկու երկիրներուն ալ շատ չարիք հասցնելով։

1395—1396ին գրեթէ Հայկական Բարձրաւանդակը ամբողջովին գրաւուած էր, եւ տեղական փոքր իսլամ եւ քրիստոնեայ իշխանները ընկճուած էին, երբ իր պետութեան կազմակերպութեան ձեռնարկեց։

Ինքն տարբեր կարգեր չհաստատեց։

Արաբներու, Սելջուկներու, եւ Մոնկոլներու պէս ինքն ալ աւատապետական կարգերով կառավարեց իր տիրապետած ընդարձակ երկիրները, զանոնք մասերու բաժնելով եւ անոնց գլուխը դնելով իր հաւատարիմներէն մէկ մէկ անձ։

Հայաստան եւ Ատրպատական միացեալ կը կազմէին բաժանում մը, որուն պետը կը նստէր Դաւրէժ, եւ իրեն ստորադրեալ ունէր ամիրաներ։ Այս բաժանումին առաջին իշխանապետը կամ արաբ բացատրութեամբ ամիրապետը, եղաւ իր Միրանշահ որդին, *«յոյժ ողորմած եւ բարեբարոյ»*։

Միրանշահ իր կարգին այս պաշտօնը փոխանցեց իր որդւոյն Օմարի, որ վերին իշխանութիւնը կը ներկայացնէր, եւ ունէր ստորադրեալներ։

Հայաստանի մէջ գտնուող թուրքմէն, եւ քուրդ եւ այլ իշխանութիւնները Լէնկ Թիմուրէն ընկճուեցան։

1395ին Թիմուր Լէնկ *«առաքեաց զՇէխ Ահմադ՝ անուն Զաղաթայն յաշխարհն մեր եւ նա եկեալ ի խնդրելոյ վարդապետացն մերոց մեծին Սարգիսի Սորբեցւոյ եւ Յովհաննէս վարդապետին՝ Մեծու-բայ վանիցն առաջնորդի, շինեացզաշխարհս մեր աստի եւ անտի ժողովելով, եւ յոյժ բարեբարոյ եւ քրիստոնեասէր գոլով։ Եկին ամենայն ցրուեալքն եւ սկիզբն արարին շինութեան։ Եւ ծաղկեցաւ ուսումնականօքն ի ձեռն խաղաղութեան ողորմութեամբն Աստուծոյ մետասան ամ ծովաբոլորս»* (Թովմա Մեծոբեցի էջ 49)։

Հոս անորոշ է թէ պատմագիրը «Աշխարհն մեր» ըսելով բովանդակ Հայաստանը կը հասկնայ թէ՞ իր գաւառը միայն։

Ամէն պարագայի մէջ որոշ է որ Թիմուր Լէնկէն նշանակուած Շէխ Ահմէտ Հայաստան եկած է եւ կառավարած է 11 տարի (1395—1406) եթէ ոչ ամբողջ Հայաստանը գէթ անոր կեդրոնական մասը, Վանի լիճին շուրջը։

Լէնկ Թիմուրի կենդանութեան ուրիշ որեւէ յիշատակութիւն չունինք Հայաստանի կառավարութեան համար եղած կարգադրութեան մը։

Արդէն Թիմուր կը մեռնէր 1405ին եւ իր ընդարձակածաւալ կայսրութիւնը կը քայքայուէր այնքան արագ որքան որ շուտով հիմնուած եւ տարածուած էր։

Իր զօրութեան առջեւ ահաբեկած եւ զինաթափ բոլոր իշխողները վերստին իրենց կորուսած երկիրները վերագրաւել փորձեցին։

Գարա Եուսուֆ որ 1396էն 1406 Ասորիք ապաստանած էր, դարձաւ Հայաստան եւ իր իշխանութիւնը վերականգնեց եւ նոյնիսկ արեւելք արշաւեց, տիրեց Ատրպատականին եւ միացուց իր հողերուն եւ Հայաստանի մեծ մասին տէր դարձաւ։

Միրանշահ, Լէնկ Թիմուրի որդին այս պատերազմներուն մէջ մեռաւ եւ իրեն յաջորդեց իբր Ատրպատական-Հայաստանի ամիրա Ապուպէքիր, որ չկրցաւ Գարա Եուսուֆին դէմ պաշտպանել երկիրը եւ փախաւ առանց կռուելու։

Լէնկ Թիմուրի չորրորդ որդին, Միրզա Մու-յին էտտին Շահ-Ռոխ կամ Շահրուխ (1405—1447), Հայաստանը վերագրաւելու համար, 1417ին մեծ պատրաստութեամբ եկաւ Եուսուֆի որդին Իսկէնտէրին (1417—1438) վրայ, որ իբրեւ *Շահի Արմէն* (Հայոց Թագաւոր) կը տիրէր Հայաստանի։ Ան անողոք եւ անընդհատ պատերազմեցաւ 17 տարի (1421—1437)։

Շահրուխի եւ իր որդւոյն Ջանկոյի բոլոր ջանքերը վանելու համար Իսկէնտէրը անօգուտ եղան, մինչեւ որ ան սպաննուեցաւ դաւաճանութեամբ, իր մօրմէն եւ իր որդիէն (տես. վերը, էջ 78)։

Շահրուխ՝ Հայաստանի կուսակալ նշանակած էր Ջեհան Շահը, որուն պաշտօնը գրեթէ անուանական էր քանի որ Իսկէնտէրն էր երկրին իրական տէրը։

Իսկէնտէրի մահէն (✝ 1435) վերջ անոր եղբայրը՝ Ջեհան կամ Ջահան՝ անոր յաջորդեց (1437—1467) եւ 1440ին Վրաստանը ընկճելէ վերջ, բոլոր Հայաստանի եւ Կովկասի բացարձակ տիրապետող դարձաւ եւ թէպէտեւ քրիստոնէից վրայ հարկերը խստացուց, զոնէ պատերազմին պատճառած աւերներուն եւ վնասներուն վերջ տուաւ։ Այսպէս երկիրը համեմատաբար հանդարտ վիճակ մը ստացաւ, որով ուրիշ գործերով ալ զբաղելու հնարաւորութիւն ներկայացաւ։

Խաղաղութիւնը աւելի ամրապնդուեցաւ երբ Ջեհանշահի իշխանութիւնը հաստատուեցաւ Շահրու-

խեն, երբ ան 1446ին հպատակութիւն յայտնեց Շահռուխի (*Մեծ* 103) որ անշուշտ քաղաքագիտութեամբ, զինքը նշանակեց Ատրպատականի եւ Հայաստանի ամիրա եւ անոր թոյլ տուաւ որ կիրարկէ իր եղբօրը *Շահի-Արմէն* տիտղոսը:

Ջիհանշահ Դաւրէժ կը նստէր եւ իր իշխանութեան տակ ունէր Պարսկահայքը, Կորնէքը, Սիւնեաց նահանգը Արդուինը, Այրարատը եւ Վասպուրականը, իրեն ստորադաս ունենալով ամէն տեղ ամիրաներ եւ պէկեր,— մեծ մասամբ քուրդ— որոնց պետն էր իր որդին Հասան Ալին, որ կը նստէր Նախիջեւան, իբր կուսակալ Հայաստանի, իրեն ստորադրեալ ունենալով Վանի, Երեւանի, Թիֆլիսի եւ այլ վայրերու մէջ պէկեր։

Ջիհան Շահ իր տիրապետութիւնը դէպի Արեւելք տարածեց եւ բովանդակ Պարսկաստանը իր իշխանութեան ենթարկեց, 1460ին, եւ այսպէս մեծ եւ ահարկու ասիական կայսրութեան մը հիմնադիրը եղաւ, որ հին պարսկական Շահնշահներու աթոռին ժառանգորդ դարձաւ, եւ իբր Պարսիկներու վեհապետ գործեց։

Ինչպէս տեսնուեցաւ, Եօզպէք Թաթարները Հայաստանի չկրցան տիրել բոլորովին եւ հոն բնաւ կարող չեղան հաստատելու կառավարական իւրայատուկ վարչութիւն մը: Աւելի անուանական եղաւ իրենց տիրապետութիւնը, վասնզի շարունակ ընդդիմադրութեան հանդիպեցան եւ իրենց տիրապետութիւնը հաստատելու համար մաքառեցան, եւ գրեթէ չյաջողեցան:

Հայաստանի մէջ այդ շրջանին միակ տիրող ոյժ մը գոյութիւն չունէր, եւ անիշխանութեան ժամանակամիջոց մըն էր, ուր մեծ ու պզտիկ իշխանութիւններ իրարու հետ կը մաքառէին, ոմանք իրենց գոյութիւնը պահելու եւ ուրիշներ երկրին տիրակալելու համար։

Այսպէս, Հայաստանի հողին վրայ գոյութիւն ունեցող Հայ, վրացի, քուրդ, թուրքմէն եւ թաթար իշխանութիւններ իրարու հետ կռուեցան անընդհատ, մինչեւ որ Օսմանեան եւ պարսկական երկու հզօր պետութիւնները կազմակերպուեցան եւ Հայաստանի տիրապետութեան համար երկարատեւ պայքար մը մղեցին իրարու հետ, բոլորովին ընկճելով Հայ բնակչութիւնը:

Այս բազմաթիւ տոհմերուն մէջ որոնք Հայաստանի զանազան մասերուն տիրացած էին, ամէնէն նշանաւորն թուրքմէն երկու իշխանութիւններն են, որոնք գրեթէ Հայաստանի մեծ մասին տէրը եղած են յաջորդաբար, Եօզպէք Թաթարներու տիրապետութեան շրջանին (1380—1467), որ Հայաստանի համար որեւէ նշանակելի դեր չէ ունեցած բացի աղէտալի աւերումներու պատճառ ըլլալէ:

Այս շրջանը աւելի պատշաճ պիտի ըլլար կոչել թուրքմէնեան անունով, բայց որովհետեւ Լէնկ Թիմուրի տիեզերական կոչուելու աստիճան ընդարձակ կայսրութեան գէթ անուանական տիրակալութիւնը Հայաստանի վրայ ալ տարածուած էր, ասոր համար իր առաջնորդած ցեղին անունով կոչուած է։

Ուստի Եօզպէք Թաթարական շրջանին Հայաստանի մէջ գոյութիւն ունեցող իշխանութիւններու վրայ խօսիլ պիտի սկսիմ ամէնէն առաջ այս երկու թուրքմէն իշխանութիւնները եւ անոնց կատարած դերը ցոյց տալով:

## Բ.

## ԹՈՒՐՔՄԷՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա. ԳԱՐԱԳՈՅՈՒՆԼՈՒՆԵՐ ԿԱՄ ԵՈՒՍՈՒՖԵԱՆՔ

### (1380—1469)

Թուրքմէն այս երկու տոհմերէն մէկուն դրօշակին վրայ նկարուած ըլլալով սեւ ոչխար մը, անիկա կոչուած է Գարագոյունլու, կամ պետութեան իսկական հիմնադիր Գարա-Եուսուֆի անունով Եուսուֆեան: Թուրքմէն այս տոհմը ըստ ոմանց 1375ին եւ ըստ այլոց 1380ին արդէն իր անկախութիւնը ձեռք կը բերէ Սասունի լեռներու վրայ:

Գարա-Եուսուֆ (1389—1399 եւ 1405—1421), որ չափազանց յանդուգն անձ մըն էր, այս իշխանութեան գլուխը անցնելէ վերջ զայն տարածեց եւ տիրեց Հայաստանի մէկ մասին, Տուրբերանի նահանգին մէջ, ինչպէս նաեւ դէպի հարաւ Աղձնիքի եւ Ամիթի շրջաններուն եւ Վանը կեդրոն ըրաւ:

Այս իշխանութիւնը, աւատապետական կարգերու համաձայն իրեն ստորադաս ունէր կարգ մը ճորտ իշխանութիւններ, որոնց ամէնէն գլխաւորներն էին Արճէշի, Խոյթի, Բաղէշի եւ Վանի ամիրաները (տես. վերը, էջ 75):

Երբ Լէնկ Թիմուր Հայաստան մտաւ Եուսուֆ անոր դէմ դնելու համար Օսմանցիներու օգնութեան վրայ յոյս դրաւ:

Լէնկ Թիմուր հիւսիսային Հայաստանը նուաճելէ վերջ իջաւ հարաւ եւ յարձակեցաւ Արճէշի վրայ որուն Գարա Ահմէտ Ամիրան, Եուսուֆի վասալն էր: Գարա Ահմէտ փախաւ Ճապաղջուր (Պուլանըգ), եւ ապա ետ դառնալով զարկաւ Լողմաղան զօրավարին բանակը (տես. վերը, էջ 76):

Լէնկ Թիմուրի մէկ ուրիշ բանակը յառաջացաւ Տարօն: Ճամբուն վրայ գտնուող Արճէշի, Մանազկերտի եւ շրջականերու ժողովուրդը Գլակայ վանքը ապաստանեցաւ (*նոյն.*)։ Եուսուֆ Մուշի դաշտին բնակիչներն ալ Սասուն եւ Խոյթ բարձրացնելու համար Խոյթի ամիրային՝ Շէյխ Շէրիֆին յանձնեց զանոնք առաջնորդելու գործը, եւ ինքն ճակատեցաւ Լէնկ Թիմուրի դէմ եւ անոր յաղթեց (*նոյն.*), սակայն եւ այնպէս իր ճորտերէն Մուշի, Բաղէշի եւ Արծկէի ամիրաները հպատակութիւն յայտնեցին Լէնկ Թիմուրի, որ Տարօնէն անցաւ Վասպուրական եւ 1387ին դարձաւ Պարսկաստան:

1395ին կրկին եկաւ Հայաստան եւ Վրաստան: 1396ին իր որդին Միրանշահ Արճէշ եկաւ եւ անկէ գնաց Բաղէշի վրայ որուն նոր Ամիրան Իպրահիմ, *«ատող քրիստոնէից»* յաջորդելով իր եղբօրը՝ *սիրող*

*քրիստոնէից»* Ամիր Շերիֆին, ապստամբած էր: Միրան Շահ բռնեց Իպրահիմը եւ սպաննեց, եւ անոր տեղը ամիրա նշանակեց Ամիր Շերիֆի փոքր որդին Շամշադինը։

Գարա Եուսուֆ գրաւեց վերստին Արճէշը որ Ոստանի Եզտին ամիրան չկրցաւ պաշտպանել, եւ համակերպեցաւ լքել զայն Գարա Եուսուֆի եւ հաշտութիւն կնքել:

Այս Էմիր Եզտին (Իզզէտտին?), 1392ին ըստ ժամանակակից Սիմէոն վրդ. Ոշտունցիի, իր եղբօրմէն առած էր Ոստան քաղաքը (*Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. էջ 15): Հաւանօրէն ծագումով Հայ էր, քանի որ *«յազգէն Սենեքերիմեանց»*, այսինքն Արծրունի էր: Իր նստոցն էր Ոստան բայց կը տիրէր նաեւ Վանի, այսինքն Վասպուրականի մեծ մասին (տես. վերը, էջ 77): Ասիկա երբ Գարա-Եուսուֆէն պարտուած հաշտութիւն կնքած էր, Թաթար զօրավար Աքալմիշ իշխանը օգնութեան եկաւ։ Բայց երբ տեղեկացաւ որ անիկա արդէն հաշտուած էր, Աղի գիւղը գերեց, իբր պատիժ, եւ մեկնեցաւ, սակայն Գարա Եուսուֆ եւ իր եղբայրը՝ Արայի վրայ հասան եւ յարձակեցան Աքալմիշի բանակին վրայ եւ անոր ամբողջ զօրքը կողոպտեցին եւ զինքն ալ ձերբակալելով Եգիպտոս ղրկեցին (*Մեծոփեցի*, էջ 47—48):

Սակայն Գարա Եուսուֆի յաջողութիւնը շատ կարճատեւ եղաւ: Թաթար ստուար բանակներ Հայաստան հասան եւ Գարա Եուսուֆը Հայաստանէն վանեցին։ Անոր հողերը (Ամիթ եւ Սեբաստիա) Լէնկ Թիմուր տուաւ իր հակառակորդին Աքքոյունլու Գարա Օսմանին:

Եուսուֆ Հայաստանէն հեռացաւ եւ ապաստանեցաւ Օսմանեան Սուլթան Պայազիտ Ըլտըրըմի քով (1399): Իսկ երբ Ըլտըրըմ Պայազիտ գերի ինկաւ Լէնկ Թիմուրի ձեռքը (1402), Գարա Եուսուֆ Դամասկոս փախաւ եւ հոն մնաց մինչեւ Լէնկ Թիմուրի մահը (1405)։

Գարա Եուսուֆ երբ իմացաւ աշխարհակալին մահը, եկաւ Հայաստան եւ երկրին հարաւային մասին նորէն տիրելով վերականգնեց իր պետութիւնը (1408):

Նոյնը ըրաւ Ջէլայիրեան Ղայասէտտին Ահմէտ Պահատուր Ղանը (1382—1385 եւ 1405—1409) *«Ղանն Թաւրիզու»* (Թովմա Մեծոփեցի էջ 13 եւ 72) որ Պաղտատ ապաստած էր Լէնկ Թիմուրի առաջին յարձակումներուն ատեն: Մեծոփեցի (էջ 13) կ'ըսէ թէ *«ելեալ գնաց փախստական ճանապարհաւն Ուշտունեաց Ոստանու, առաջնորդութեամբ ամիրային Մարաց Եղտնայ ի Բաբելոն քաղաք, որ այժմ Պաղտաա կոչի, առ ազգականս եւ զօրս իւր, զի ի նոյն ժամանակին եւ նոցա տիրէին»*: Լէնկ Թիմուրի մահէն վերջ *«եկն Սուլտան Ահմատ ի Պաղտատայ, մտեալ ի Թաւրէզ էառ զնա»* (*Մեծ.* էջ 72):

Գարա Եուսուֆ կռուեցաւ Լէնկ Թիմուրի որդւոյն Միրան Շահի, ինչպէս նաեւ Ահմէտ Պահատուր խանին դէմ եւ տիրեց Ատրպատականին եւ անոր մայրաքաղաքը Դաւրէժին եւ միացուց իր երկիրներուն եւ այսպէս Հայաստանի մեծ մասին տէր դարձաւ: *«Պատերազմեալ ընդ Սուլտանին Ղանին՝* (Ահմէտ Պահատուր) *ըմբռնեալ սպանանէին զնա խեղդամահ արարեալ զի տիարք էին տեղեացն, եւ ղան ասնէին եւ որդիս ղանի»* (*Մեծ.* էջ 72)։

Միրանշահ եւս այս պատերազմներուն մէջ սպաննուեցաւ Սուլթան Ահմէտ խանի պէս եւ իրեն յաջորդեց Ապուպէքիր, որ առանց կռուելու Եուսուֆի դէմ, փախաւ:

Եուսուֆ յետոյ գրաւեց Երզնկան առանց կռիւի, վասնզի քաղաքին իշխանը՝ Դարխաս մեռած էր։ Առաւ նաեւ Մերտինը, Ամիթը եւ Արզնը, եւ նոյնիսկ Պաղտատը ուր նստեցուց իր Իսկէնտէր որդին: 1421ին Եուսուֆ մեռաւ, եւ իրեն յաջորդեց իր որդին Իսկէնտէր (1421—1437) (տես. Թովմա Մինասենցի յիշատակարան. *Դիւան*. Ժ. 3), որ նախընտրեց գործածել *Շահի Արմէն* տիտղոսը: Իսկէնտէր իբր անհաշտ թշնամի Լէնկ Թիմուրի եւ Աքքոյունլու ընտանիքներուն սաստկութեամբ կռուեցաւ անոնց դէմ, ինչպէս բացատրուած է արդէն (տես. վերը, էջ 78—79) եւ բոլոր Հայաստանը հուրի եւ սուրի մատնեց եւ շատ անգթութիւններ գործադրեց թէեւ ժամանակակից պատմիչը զայն *«քրիստոնեասէր... եւ ողորմած ազգին մեր»* կը կոչէ (1)։

Իսկէնտէր կը տիրէ Խլաթի, Արճէշի, Տուրուբերանի (Բաղէշ-Մուշ), Վասպուրականի, Ատրպատականի, Քաջբերունիքի, Բասենի, Սիւնիքի, Դ. Հայքի, ինչպէս Փոքր Հայքի եւ նոյնիսկ Փոքր Ասիոյ զանազան մասերուն, գէթ պարբերաբար, առանց տեւականացնելու իր տիրապետութիւնը:

Շահռուխ, ինչպէս նաեւ Աքքոյունլու Օսման, եւ իրենց կողմնակիցները չկրցան զայն ընկճել:

1437ին Իսկէնտէրի եղբայրը՝ Ջիհանշահ, Շահռուխի դրդմամբ ապստամբելով իր եղբօր դէմ, պարտութեան մատնեց զայն եւ իշխանութիւնը խլեց անկէ։

Ջիհան-շահի (1437—1467) իշխանութիւնը ճանչցուեցաւ Շահռուխի կողմէ իբր օրինաւոր, իր գերիշխանութեան տակ: Այս պետութեան սահմաններուն մէջ էին Պարսկաստանի արեւելեան մասերը, Ատրպէճանը, Վրաստանը, եւ Հայաստանի մեծ մասը՝ Սիւնիք, Վասպուրական, Ոշտունիք, Արարատեան դաշտը, Շիրակ, Գուգարք եւ Բագրեւանդ: Իր մայրաքաղաքն էր Դաւրէժ:

(1) *Գարա Եուսուֆի մահուան եւ Իսկէնտէրի և յաջորդներու երկարատեւ կռիւներուն վրայ Թովմա Մեծոփեցի պատմագիրէն զատ բաւական կարեւոր մանրամասնութիւններ տուած են, իբր ժամանակակից գրիչներ, Թովմա Մինասենցի Ոստանի Եղիշէի վանքի Աւետարանին յիշատակարանը* (*տես.* Դիւան Հայոց Պատմութեան. *Ժ. հտ. էջ* 1-4), *Հ. Աճառեանի* Ցուցակ Ձեռագրաց Թաւրիզի *գործին մէջ ցուցակագրուած ձեռագիրներու երկու յիշատակարանները* (*տես.* 113) *մին կարճ և երկրորդը բաւական ընդարձակ և ոտանաւոր, Յակոբ Թոփճեանի* Ցուցակ Ձեռագրաց Դաղեան Խաչիկ վարդապետի *գործին մէկ յիշատակարանը* (*էջ* 55ա), *և մանաւանդ Ծիհանշահի պատերազմներուն վրայ գրուած շատ ընդարձակ յիշատակարանը, խիստ հետաքրքրական, Երուսաղէմի գրչագրաց մատենադարանին թ.* 1198 *ձեռագիրին* (*Գր. Տաթեւացիի* Հարմանց գիրք) *և Երուանդ Լալայեանցի* Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Վասպուրականի *գործին մէջ ցուցակագրեալ* 5-6 *ձեռագիրներու յիշատակարանները եւայլն։*

Ճիհան շահի յաջորդեց Հասան Ալի (1467—1468) իր որդին, որուն մահէն վերջը իր պետութիւնը բաժնուեցաւ իր երեք որդիներուն՝ Էլվէնտի, Մուհամմետի եւ Էպու Եուսուֆի միջեւ, որոնք հակառակորդ Թուրքմէն միւս իշխանութենէն, նուաճուեցան եւ այս իշխանութեան վերջ տրուեցաւ:

## Բ․ ԱԳԳՈՅՈՒՆԼՈՒՆԵՐ ԿԱՄ ՊԱՅԸՆՏՐԵԱՆՔ

Ինչպէս Գարագոյունլուները իրենց անունը առած էին իրենց դրօշին վրայ նկարուած սեւ ոչխարէն, Ագգոյունլուներն ալ այսպէս կոչուած էին իրենց դրօշակին վրայ նկարուած սպիտակ խոյի պատկերէն, թէեւ իրենց տոհմը կը կոչուէր նաեւ Պայընտրեան:

Այս տան տոհմապետն էր Գարա Օսման կամ Գարա Սուլուգ (= Սեւ Տզրուկ) որ նախապէս իբր ցեղապետ մը Լէնկ Թիմուրէն շնորհ կը գտնէ եւ անոր բարեկամութիւնը կը շահի: Անոր քաջալերութեամբ գրաւումներ կ՚ընէ եւ իբր վասալ կը գործէ։

Լէնկ Թիմուրի մահէն (1405) վերջ, ինքզինքը անկախ կը հռչակէ եւ տէր կը դառնայ իշխանութեան մը որ Փոքր Հայքի մէջ Եւդոկիոյ եւ Սեբաստիոյ շուրջը գտնուող հողամասին կը տիրէր:

Գարա Օսման կը տարածէ իր պետութիւնը դէպի հարաւ-արեւմուտք եւ կը տիրէ Հալէպի, Դամասկոսի եւ Մերտինի:

Գարա Օսման, Փոքր Ասիոյ մէջ կազմուած Օսմանեան կայսրութեան դէմ պաշտպանուելու համար նոյնպէս այդ կայսրութեան սպառնալիքին տակ գտնուող Տրապիզոնի Կոմնենէ կայսեր Ալէքսիոսի Տեսբինա աղջկան հետ ամուսնացաւ եւ անոր զինակիցը եղաւ:

Գարա Օսման հակառակ իր անգութ նկարագիրին, Հայոց բարեկամ էր:

Իսկէնտէրի դէմ երկար մաքառած է եւ Էրզրումի առջեւ սպաննուած է անկէ՝ 1434ին:

Իրեն յաջորդած է որդին՝ Նուրէտտին Համզա Իպն Գարա Օսման (1434—1444), եւ ասոր իր եղբօր (Ալի պէկ) որդին՝ Ճիհանկիր Իպն Ալի (1444—1467), որուն եղբայրն էր Ապու Նասր Մոզաֆֆէր Էտտին Ուզուն Հասան (1467—1478), որ յաջորդեց անոր եւ այս իշխանութեան ամէնէն մեծ դէմքը հանդիսացաւ:

Նախ Ճիհանկիրի ձեռքին տակ գործած եւ իր հօրեղբօր Հասանի վրայ գացած էր եւ զայն գերի բռնելով սպաննած էր (1451):

1453ին յանկարծակի եղբօրը Ճիհակիրին վրայ գալով Ամիթէն կը վանէ զայն եւ այդ քաղաքին տիրանալէ ետք, Օսմանեան երկիրներ կ՚արշաւէ:

Բայց երբ Սուլթան Մէհէմմէտ Բ. իր վրայ կուգայ հաշտութիւն կը կնքէ իր Սառա (1), մօրը միջնորդութեամբ, խոստանալով չէզոքութիւն պահել թուրք սուլթանին՝ Տրապիզոնի կայսեր վրայ յարձակած ատեն:

1467ին Ճիհանկիրի մահէն վերջ միակ տէրը դարձաւ իշխանութեան, եւ պատերազմիլ սկսաւ Գարագոյունլու Ճիհանշահի դէմ, որ պարտուեցաւ եւ սպաննուեցաւ:

Ուզուն Հասան կռուեցաւ Միրան Շահի որդւոյն Էպուսայիտի եւ Խորասանի Սուլդան Հիւսէյինին դէմ, որոնց ալ յաղթեց, եւ չափազանց ամբարտաւանացած, Օսմանեան Սուլթանին սպառնալ սկսաւ:

Սուլթան Մէհէմմէտ 1473 Յուլիս 26ին Դերջանի մէջ կը յաղթէ Ուզուն Հասանի որ կը քաշուի Պարսկաստան:

Կը մեռնի 1477ին, եւ իրեն կը յաջորդէ իր որդին Եագուպ Խան Իպն Հասան (1477—1490), որուն յաջորդած են կարգով՝

Ռուստէմ Իպն Մագսուտ Իպն Ուզուն Հասան (1491—1496),

Ահմէտ Իպն Ուղուրլու Մէհմէտ (1496—1497),

Էլվէնտ Իպն Եուսուֆ Իպն Ուզուն Հասան (1498—1504),

Գասըմ Իպն Ջիհանկիր Իպն Ալի Իպն Գարա Օսման (1502):

Այս վերջին վեհապետներուն ատեն Ագգոյունլուներու պետութիւնը տկարացած էր եւ դատապարտուած կործանելու երբ Ուզուն Հասանի աղջկան որդին, բուն պարսիկ ցեղէ սերած զօրաւոր մէկը՝ Շահ Իսմայիլ անունով, ինքն ձեռք առաւ իշխանութիւնը եւ պարսկական մեծ կայսրութիւնը վերահաստատեց։

## Գ․

## ՀԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Էօզպէք Թաթարներու տիրապետութեան շրջանին ուր այնքան կարճ ժամանակի մէջ այնքան բուռն տակնուվրայութիւններ պատահեցան, իրապէս շատ դժուար էր որ ազազուն եւ խեղճ Հայ իշխանութիւնները կարենային տոկալ եւ դիմադրել:

Հետեւաբար, բարբարոս ցեղերու իրարու դէմ մղած բուռն պայքարին զոհերը եղան Հայ իշխանութիւնները որոնք մաքառող կողմերուն ոտից կոխան եղան եւ իրենց հողերը կորսնցուցին եւ պատմութենէն անհետացան:

ԺԵ. դարուն սկիզբը Թովմա Մեծոբեցի պատմագիրը (✝ 1447) որ այս շրջանին վրայ խօսող գրեթէ միակ պատմագիրն է, տակաւին շրջանին վերջը 1404ին կը գրէ թէ Միրան Շահի որդին՝ Օմար— *«ատեցող ազգիս քրիստոնէից»*— իր իշխանութեան առաջին տարին *«երեք իշխան յազգէս մերմէ, որք իբրեւ զճիռ մի ողկուզաց էին մնացեալ ի մէջ ազգիս, դարձոյց բռնութեամբ ի յանհաւատութիւն» (Մեծ.* 67 եւ վերը, էջ 78)։

Ուրեմն պատմագիրը կը հաւաստէ թէ հազիւ քանի մը իշխանութիւններ *«մնացեալ էին ի մէջ ազգիս»* իբրեւ ճիռ մը ողկուզներու, այնքան սակաւաթիւ էին անոնք եւ անոնք ալ մի առ մի կ՚ընկնուէին եւ կը ջնջուէին:

(1) *Սառա Կոմնենեան յոյն իշխանուհի մըն էր։ Ուզուն Հասանի կինն ալ Կատարինէ, նոյնպէս Կոմնէն էր։*

Ասիկա շատ բնական էր, եւ ուրիշ կերպ չէր կրնար ըլլալ քանի որ այլեւս Վրաստան չափազանց տկարացած էր եւ անկարող հովանաւորելու Հայ իշխանները, որոնք իրենց կարգին առանձին թողուած չափազանց տկարացած էին եւ անկարող դիմադրելու Հայաստանը տակնուվրայ ընող բանակներուն:

Այսպէս, Մոնկոլական շրջանի Հայ իշխանութիւններէն միայն շատ քիչերը կը յիշուին այս շրջանին եւ անոնք ալ շատ անցողակի կերպով, վասնզի աննշան ոյժեր կը ներկայացնէին:

Անոնց հողերը կը յափշտակէին բարբարոսները, ինչպէս կը հաստատէ Գրիգոր Ծերենց խլաթեցին,

*«Իշխանք բազում ի տանց ելին*
*Եւ ի յընչից պարպեցին,*
*Ցերիւարացն զրկեցին*
*Եւ հետիոտս տանէին»*:

Իսկ երբ իրենց հողերը ուժէ կերպով կրցած էին պաշտպանել, յաճախ զրկուած էին իրենց իշխանութենէն եւ իբր կալուածատէր կը մնային:

## Ա. ԶԱՔԱՐԵԱՆՔ

Սելջուկներու եւ Մոնկոլներու շրջանին ամէնէն փայլունը Հայ իշխանական տուներուն, Զաքարեաններու տոհմն էր, որ տեսնուեցաւ թէ ինչ դեր կատարեց եւ ինչպէս հետզհետէ անշքացաւ: ԺԴ. դարուն կիսուն, իր հողերը գրաւուած էին Հայաստանի մէջ տեղաւորուած մահմետական իշխաններէն (տես. վերը, էջ 229), ինչպէս անոնց գլխաւոր կայաններէն մէկը Բջնին յափշտակուած էր Թաթարներէն 1357ին եւ կործանած (*Խաղբակեանք, Ա.* էջ 229):

Լէնկ Թիմուր զէնքի ուժով գրաւեց շատ մը իշխանութիւններու ստացուածքները, հաւանօրէն նաեւ Զաքարեանց հողերը վասնզի այլեւս այս տոհմին իշխանութիւնը բնաւ չի յիշուիր:

## Բ. ՕՐԲԷԼԵԱՆՔ

Օրբէլեանք Տարսայիճի որդւոյն Ելիկումի օրէն սկսեալ 3—4 հողատիրութիւններու վերածուած էին: Իրենց մայր ճիւղն՝ Որոտն մայրաքաղաքով կը շարունակուէր, իսկ Չէզարի ճիւղը չենք գիտեր թէ ինչ եղած էր. ինչպէս նաեւ Զալալեանք եւ Լիպարիտեանք (տես. վերը, էջ 351—355):

### 1. ՈՐՈՏՆԱՅ ՃԻՒՂ

Այս ճիւղը շարունակութիւնն էր բուն Օրբէլեանց, որոնց նստոցն էր Տաթեւի վանքին մօտ Որոտն ամրոցը, ուր Օրբէլեանք Մոնկոլական շրջանի ամէնէն ակնառու իշխանութիւնը կազմած, էին որ ինչպէս տեսնուեցաւ Սիւնեաց նահանգին մէջ ապաւէնի վայր մը հանդիսացած էր Հայերու համար, սակայն Մոնկոլներու Հայաստան մտնելէն քիչ առաջ, 1377ին, յիշատակագիրը կ'ըսէր թէ, «*իշխանութիւնս Հայոց նուազեալ էր*»:

Այս «նուազեալ» իշխանութիւնն ալ պիտի յափշտակուէր, եւ բոլորովին պիտի ջնջուէր:

Գարեգին Կաթ.ի համաձայն (տես. *Խաղբակեանք, Ա.* էջ 230), անյայտ ժամանակագիր մը 1386ին, կը գրէ «*Թուրքն էառ զբերդն Որոտան եւ մեծ վարդապետն Կախիկ* (Որոտնեցի) *գնաց փախստական ի Ծարայ եւ պարոն Գորգունէն դարդամահ եղեւ*» (*Սամուէլ Անեցիի* շարայարող էջ 170):

Որոտան բերդը Օրբէլեանց կը պատկանէր եւ Լէնկ Թիմուրի արշաւանքին ժամանակ սեփականութիւնն էր Իւանէ իշխանին եւ անոր որդւոց, որոնցմէ մէկն էր Յովհան Որոտնեցին (1), (*Խաղբակեանք, Ա.* էջ 230):

Այս յափշտակութիւնը ցոյց կուտայ թէ հալածանքը սկսած էր անոնց դէմ, ինչ որ կը հաստատուի նաեւ Էջմիածին պահուած ձեռագիրի մը (նոր ցուցակ թ. 1067) յիշատակարանէն, ուրուն գրիչը Որոտնեցիի աշակերտներէն Յակոբ անուն անձ մըն է, որ իբր ականատես կը վկայէ թէ «*մինչդեռ անճառ գնծութեամբ լցեալ կայաք, րաբունին (Յովհան Որոտնեցին) Կ* (= 60) *աշակերտօքն ի բնիկ գաւառն իւր յերկիրն Որոտան, կարդալով եւ գրելով, զաք. մատեանս, մեղքն իմ ծովացեալ եհան զգունտս անօրինաց ի վերայ քրիստոնէից՝ մանաւանդ ի վերայ տանն Բուրդելի, որ եկին եւ առին զբերդն Որոտան եւ հայրենազուրկ արարին Սպատն որդի Նանիկին. եւ կամէին ծերբակալ առնել զաք. րաբունիս մեր վասն հայրենեացն ժառանգութեան եւ սա կամօքն այ զերծաւ ինոցանէ եւ Բ. ամ բոլոր յայլեւայլ տեղիս շրջէր աշակերտօք հանդերձ՝ կարդալով եւ ուսուցանելով*» (*Խաղբակեանք, Ա.* 230):

Թովմա Մեծոբեցի ալ կը հաստատէ Օրբէլեանց դէմ գործադրուած հալածանքը:

Տեսնուեցաւ որ Օմար՝ Միրանշահի որդին եւ Լէնկ Թիմուրի թոռը երեք Հայ իշխաններ բռնի իսլամացուց:

Այս երեք իշխաններէն մին էր «*զորդին Իւանէի զթոռն Բուրթելին, զԲուրթել անուն՝ յազգէ Օրբէլեանց, զտէր Որոտան, եւ զեղբայրն նորին Սմբատ անուն,* (զորս) *տարան ի Սմրղանդ ընտանեօք իւրովք, որ յետոյ աստուածային ողորմութեամբն եւ աղօթիւք նոցա՝ դարձան ի հայրենիս իւրեանց եւ զտէրն Եղեգեաց Տարսայինճ անուն՝ զորդի Գորգոնին ուրացուցին*»: (*Մեծ.* 67):

Բուրթել Հայաստան դառնալէն վերջ վերստին քրիստոնեայ դարձաւ (*Մեծ.* 73):

Բուրթել մեռաւ ԺԵ. դարուն առաջին տարիներուն եւ իրեն յաջորդեց Սմբատ, իր եղբայրը,

Թիմուրի մահէն (1405) եւ Միրան Շահի՝ Գարա Եուսուֆէն սպաննուելէն վերջ, երբ անոր հա-

(1) *Մեծոբեցին՝ Որոտնեցին Սիւնեաց հին իշխանատոհմերու սերունդ կը կարծէ* (Թովմա Մեծոբեցի *էջ* 14—15), *բայց Օրբէլեաններու տիրապետութենէն վերջ անոնք ազատներու շարքը անցած էին. Գրիգոր Տաթեւացի կը հաստատէ իր ուսուցիչին իշխանական ծագումը*, (*Գարեգին Կաթ.* Խաղբակեանք, Ա. *էջ* 330):

կառակորդը Սուլթան Ղայաէտտին Ահմէտ Պահատուր (1382—1385 եւ 1404—1409), որ Պաղտատ փախած էր, Միջագետքէն կուգար գրաւել Դաւրէժը, «*Ամբատ ...գնաց առ նա, խաբեալ ի խրատուց իւրոց եւ նա մեծարեալ զնա՝ ետ զգեղն Անգեղակութ նմա պարգեւս*» (Մեծ. 72)։

Շուտով հասաւ Յուսուֆ եւ առաւ Դաւրէժը սպաննեց Ահմէտը եւ 1409ին առաւ Որոտն՝ Ամբատի կայանը։

Անկէ վերջ Ամբատ չի յիշուիր, բայց անոր որդին եւ յաջորդ Բեղգէն (Բ), կը թուի թէ նեղուած ասպատակներէ եւ Իսկէնտէրի եւ Շահռուխի (1421—1437) երկար պայքարէն, որոնք ոտքի կոխան ըրած են Սիւնիքը, երկու անգամ, «*առեալ զամենայն կողմն Սիւնեաց եւ զամենայն գաւառս շրջակայմերձ ի Սիւնիս, աւելի քան զ60000 քրիստոնեայ տունս, եւ ազատեալ ի Շահռուխէն՝ հասոյց ի կողմն Վրաց եւ թագաւորն (Աղեքսանդր Ա.) առ երեսս պատուեալ զնա՝ տայ նմա զդղեակն Լոռու։ Իսկ նա բարեպաշտ եւ երկիւղած գոլով, սիրող կարգաւորաց եւ աղքատաց ողորմած եւ խաղաղասէր առ ամենեսեան, ծայն տուեալ առ նա ժողովէին։ Եւ նա զամենեսեան պատուէր եւ մեծարէր հացով եւ սեղանով եւ հանդերձով, զամենայն դիմեալս առ նա յազգէս Հայոց։ Իսկ... անգութն երկուցեալ ի նմանէ սին եւ սնոտի կարծեօք, զի մի Հայք առ նա ժողովեսցին եւ աւերումն լինի կողմանն Վրաց... գաղտնի դեղ մահու տան յայր մի Ամիադին անուն յազգէս Հայոց...։ Եւ... տայ նմա յանպատրաստից դեղ մահու ի ժամ կերակրոյն։ Եւ նորա... աւանդեաց զհոգին ի ձեռս հրեշտակաց եւ տարեալ եդին առ հայրն իւր Ամբատ եւ եղբայրն իւր Ստեփանոս եպս. սուրբ ուխտին Տաթեւու... Եւ սուգ մեծ եղեւ ամենայն ազգիս Հայոց եւ յուսահատութիւն մերային ազանց վասնզի ճիռ մի կայր ի մէջ ողկուզաց եւ աստղ մի ի խաւար գիշերի, եւ տեղիք ապաւինի ամենայն քրիստոնէից ազգիս։ Եւ մնաց եղբայր մը նմա Շահ անուն, վարժեալ եւ սնեալ առ որովայնամոլ ազգին Վրաց։ Եւ անարի գտեալ, եւ ոչ ի խնդիր ելեալ հայրենի գաւառին։ Եւ որդի մի փոքրիկ մետասան ամաց աւելի եւ կամ պակաս, որոյ յիշատակն օրհնութեամբ եղեցի։... Եւ իշխանք նորա վրէժխնդիր եղեն, անօրէն Ամիադնին, ծայրակտուր արարեալ յոտից եւ ի մատանց, եւ ոչ կարացին ի խոստ ածել զտուողն մահաբերն դեղոյն՝ որ եհան զիշխանն մեր ի կենաց*» (Մեծոբեցի էջ 117—8)։

Ասիկա եղաւ 1438ին։

Կը յիշուի Ամբատի աղջիկը որ ինքն կարծեցեալ դաւանանը՝ Վրաց թագաւոր Ալեքսանդրը (1448—1444 ✝) առած էր կնութեան (Ալիշան, *Սիսական* էջ 97)։

Այս կերպով ինչպէս կը տեսնուի արդէն վերջ կը գտնէր Օրբէլեանց իշխանութիւնը։

## Զ· ԵՂԵԳԵԱՑ(1) ՃԻՒՂ

Վերոգրեալ բաժանումներուն մէկը կամ Որոտնայ ճիւղի մէկ նոր ստորաբաժանումը պիտի ըլլայ Օրբէլեանց այս ճիւղը, որուն ինչպէս տեսնուեցաւ կ'իշխէր 1404ին Տարսայիճ իշխան «*զորդի Գորգոնին*»։

Դժբախտաբար դժուար է ճշդել թէ Եղեգեաց Ձորի մէջ հաստատուած այս իշխանութիւնը Օրբէլեանց չորս երբեմնի բաժանումներէն մէկուն շարունակութի՞ւնն է թէ նոր է կազմուած։

Աւելի հաւանական է վերջինը, վասնզի Ամբատի (✝ 1273) իշխանութեան շրջանին Որոտն, Բորոտն, Տաթեւ եւ Եղեգիս կը պատկանէին Օրբէլեանց (տես. վերը, էջ 352), եւ Տարսայիճի որդին՝ Ելիկում (✝ 1300) Եղեգիս կը մնար։ Հետեւաբար, ուղղակի ժառանգութեամբ պէտք էր պատկանիլ Բուրթէլ եւ Ամբատ եղբայրներուն, մինչ կը տեսնենք թէ բոլորովին անծանօթ Գորգոնի որդին Տարսայիճ էր տէրը այս շրջանին։ Հետեւաբար, նոր բաժանում մը պատահած պէտք է ըլլայ։ Կարելի չէ Ջալալեան ճիւղին յաջորդութիւնը եւս համարել, ինչպէս կ'ենթադրուի ոմանց կողմէ (տես. *Բնաշխ. Բառարան* Բ. էջ 642)։

Տարսայիճ որ իսլամանալէ վերջ՝ տարուած էր Սմրղանդ (*Մեծոբեցի*, էջ 68) Բուրթէլի եւ Ամբատի հետ, եւ անոնց հետ ալ եկած է Սիւնիք, եւ դարձեալ քրիստոնեայ դարձած է (*Մեծոբեցի*, էջ 73)։

Այս անունով ուրիշ պայազատներ ալ եղած են, որոնց իշխանութիւնը տեւած է մինչեւ ԺԷ. դարուն սկիզբը, Շահ Աբասի ժամանակ, որ Եղեգեաց Ձորն ալ պարպած է իր բնակչութենէն։ (*Բնաշխարհիկ*, Ա. 642)։

## Գ· ԽԱՂԲԱԿԵԱՆՔ ԿԱՄ ՊՌՕՇԵԱՆՔ

Օրբէլեաններէն վերջ, ամէնէն պատկառելի իշխանութիւնն Խաղբակեանց կամ Պռօշեանց իշխանութիւնն էր որ ինչպէս տեսնուեցաւ անշքանալ սկսած էր երբ Եօզպէք Թաթարներու ահեղ առաջնորդը Լէնկ Թիմուր Հայաստան մտաւ։

Գրիգոր Տաթեւացիի «Հարցման գիրք»ին յիշատակարանէն գիտենք թէ 1387ին Լէնկ Թիմուրի զօրքերը պաշարած էին Խաղբակեանց կալուած Շահապօնք բերդը, ուր կը գտնուէր Տաթեւացի ինքն «*նստելով իբր ի մետաղս կամաւոր դիպահոջ*»։ Ան պաշարումը կը նմանցնէ վերջին դատաստանի օրուան իր անսպասելիութեամբ եւ ահաւորութեամբ. «*յաւուրս նոր Կրակէի յասացեալն կրկնոյ զատկի, յանկարծահաս ժամու շարժեալ հեղեղաց ուխից խռովութեանց. զօրաց, սաստկագին գոչմամբ եւ ահագնատեսիլ սուսերամերկ, կորովալի նետողանց,*

(1) *Եղեգեաց Ձորը Սիւնեաց Վայոց Ձոր գաւառին գեղեցկագոյն մասն է և հիմա Արագեազ կը կոչուի։*

որ պատեալ պահեալ, պաշարէին զմեզ»։ Շատերը գերի կ'իյնան նոյնիսկ բերդին դուռներուն առջեւ (*Խաղբակեանք*, Ա. էջ 230, հմմտ. նաեւ Տաթեւացի *Հարցմանց գիրքին* Էջմիածնայ մատենադարանի թ. 830 ձեռագիրին յիշատակարանը, (*Խաղբ.* Գ. էջ 100—101)։

Արշաւանքը որ 1386ին սկսած էր, մէկ տարի տեւած է, ուրեմն Սիւնիքի գրաւումը մէկ տարի առած է։ (Նոյն. էջ 231) եւ անկէ է որ անցած են Շահապունեաց գաւառը։

Ցայտնի չէ թէ Պռօշեանք որ անշուշտ հոն էին իբր տէր գաւառին, ի՞նչ եղան։

Գարեգին Կաթ. կ'ըսէ թէ հաւանօրէն բերդին անկումէն վերջը, անոնց մէկ մասը ամրացաւ Վայոց Ձորի լեռներուն մէջ եւ շարունակեց իր գոյութիւնը, թէեւ անծանօթ կը մնան իրենց իշխանները։ *Խաղբակեանք*, էջ 231)։

## Դ. ԱՐՑԱԽԻ ԿԱՄ ԽԱՉԷՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Արցախ կամ Խաչէն այն վայրն է որ հնուց ի վեր կայանը եղած է զանազան իշխանութիւններու Հայ եւ Աղուան, ինչպէս տեսնուեցաւ մինչեւ հոս ըսուածներէն։

Դժբախտաբար, յիշատակարաններ լիակատար տեղեկութիւն չեն տար այս իշխանութիւններուն վրայ, որոնցմէ Ջալալեանց, Դոփեանց, Դիզակի եւ Պռօշեանց վրայ գտնուած մասնակի ծանօթութիւնները տուեցանք նախորդ շրջանին, այսինքն Մոնկոլեանց ժամանակ։

Լէնկ Թիմուրի արշաւանքներէն վերջ սակայն այդ տեղեկութիւնները շատ աւելի ցանցառ կը դառնան։

Մասնաւորապէս Խաչէնի իշխող տուներէն ամէնէն աւելի փայլուն դիրք գրաւողը՝ Մոնկոլեան շրջանին, Դոփեանց տունը, ինչպէս կը տեսնուի, պահած է իր իշխանութիւնը, որուն պետերուն շարքը փոքր ի շատէ յայտնի են։

Իսկ անծանօթ կը մնան կամ ինծի ծանօթ չեն միւս իշխաններու գոյութիւնը։

Բայց վստահօրէն կրնանք ըսել թէ անոնք շարունակուած են, ոմանք իբր վասալ իշխանութիւններ եւ ոմանք սոսկ իբր հողատէր ազնուականներ, մասնաւոր դիրք մը ապահովելով։

Այս համոզումը ունենալու համար կը խորհիմ թէ կարեւոր ազդակ մըն է 1411 թուականին գրուած նաշոցի մը յիշատակարանը (Փիրղալէմեան Ղեւոնդ վրդ. *Նօտարք Հայոց* էջ 39) որ շատ կարեւոր տեղեկութիւններ կուտայ մասնաւորապէս Դոփեանց մասին։

## ԴՈՓԵԱՆՔ ԵՒ ԻՐԵՆՑ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ

Հայ իշխանական տուներու շարքին, բաւական կարեւոր տեղ մը ունէր Դոփեանց տունը որուն իշխող Հասան Ծարեցին, ինչպէս տեսնուեցաւ, 1387ին սպաննուեցաւ Լէնկ Թիմուրի արշաւանքին ատեն իր երեք զաւակներով, բայց Դոփեանց իշխանութիւնը շարունակուեցաւ, թէեւ շատ տկարացած։ Հասանի մահէն վերջ Դոփեանց իշխանութիւնը կը բաժնուի իր երեք որդիներուն միջեւ *«որք են այսոքիկ.*

*«1. Շահանշէն՝ Ուղուրբեկաց Պապ*
*2. Աղբուղէն՝ Այտինեցւոց "*
*3. Ջհանշէն՝ Ջհանշէցւոց" "*

*Եւ որդին Հասանայ Աղբուղէն եւ որդի սորա Տուրսունն եւ որդի սորա Այտինն եւ ի ժամանակի սորա, ի զօրանալ Իսմայելացւոց եւ ի նուազիլ տանս Հայոց, ցիր եւ ցան լինելն իշխանացն Հայոց, յարեան այլազգիքն, եւ զմուլքն (1) մեծ իշխանին Հասանայ պէյթալմոլ (2) արարին, գնաց Պարոն Այտինն ի դիւան եւ երեք ամ աշխատեաց, եւ բազում ինչ տուեալ ազատեաց ի ձեռաց այլազգեացն զվանօրայքն եւ զշինարէնքն, զոր տէրն ամենայնի տացէ վարձս վաստակոց իւրոց"* (Թօփնեան. *Ցուցակ Ձեռագրաց Խաչիկ վրդ. Դադեանի* Ա. էջ 89 նաեւ Մակար եպս. Բարխուտարեանց *Պատ. Աղուանից* էջ 137 եւ Հ. Աճառեան *Անձնանունների Բառարան* Դ. էջ 60)։

Այս տողերը բացորոշ ցոյց կուտան թէ ինչպէս Դոփեանց կալուածները պետականացուած, այսինքն գրաւուած են, սակայն իր որդին Այտին կրցած է երեք տարուան աշխատութեամբ փրկել, վանքերը եւ գիւղերը։ Շատ հաւանօրէն այս տոհմին իշխանութիւնը անշքացած է, հողային ստորաբաժանումներով, ինչպէս կը հաստատուի, իրենց հաւաքաբար Դատի, Խաթրի եւ այլ վանքերու ըրած նուիրատուութիւններէն (Մակար եպս. Բարխուտարեանց *Պատմ. Աղուանից*, Ա. էջ 135—137. եւ Մեսրոպ Մագիստրոս Արքեպս. Տէր Մովսիսեան *Հայկական երեք մեծ վանքերի Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները*, էջ 96—97)։

Արդէն վերոյիշեալ յիշատակարանը կը հաստատէ թէ Հասան իշխանի ատեն կամ անկէ վերջը երեքի բաժնուած էր այդ իշխանութիւնը։

### ա ԱՅՏԻՆԵՑԻՔ

Հասանի՝ Աղպուղէ կամ Աղբուղէ որդին (1411էն առաջ մեռած է) առաջին իշխանն է, որուն յաջորդած են որդւոց որդի Տուրսունն եւ Այտին (Մակար եպս. Բարխուտարեանց. *Պատմ. Աղուանից* Ա. էջ 135—137. Բ. 48—49 *Արցախ*, էջ 206—8, 205 եւայլն)։

(1) Մուլք *կամ* միւլք, *կալուած, ստացուածք, սեփականութիւն կը նշանակէ։*

*(2)* Պէթալմոլ *պէտք է կարդալ* պէյթիւլմալ։ *Առանց ժառանգորդի մեռնողներուն ստացուածքները երբ կառավարութեան կ'անցնի, կը կոչուի պէյթիւլմալ։*

որ վերոյիշեալ յիշատակարանին «Պարոն Այտինն» է, որ դիմած է «ի դիւան» Ջահան Շահի եւ երեք տարի աշխատելով եւ խոշոր կաշառքներ տալով ազատած է վանքերը եւ շէնորեայքը:

Ասիկա Դադի վանքին բրած է— իր ընտանիքին անդամներուն հետ— նուիրատուութիւններ (տես. *Հայկ. երեք մեծ վանքեր.* էջ 97):

Այտին երթալով Ջահան Շահի կ'ստանայ նաեւ իւզապաշութեան պաշտօն, այն է իրաւունք առանձին զօրք պահելու, եւ 1455ին կը դառնայ հայրենիք։

Այտին իր դիւանագէտ, ուժեղ, սրտոտ եւ հաստատակամ յատկութիւններով, ինչպէս սիրելի եղած էր Ջահան-Շահին նոյնպէս նաեւ սիրելի կ'ըլլայ անոր որդւոյն՝ Հասան Ալի խանին, որ իբր փոխարքայ կը նստէր Նախիջեւան։

Այտին իւզպաշին իբրեւ պարենական սեփականութիւն կ'ստանայ Շահէն, Նիժ եւ Սոլթան-Նուխի աւանները իրենց շրջակայքով եւ կը փոխադրուի ընտանեօք Նիժ, Շահին հրովարտակով եւ փոխարքային հաճութեամբ:

Տեղացիք մեծ սիրով կ'ընդունին նորընտիր իւզպաշին, անոր շուրջը կը հաւաքուին, շատ կը յարգեն զայն եւ կ'աջակցին անոր:

Այտին իր պաշտօնը կը կատարէ արժանաւորապէս: Իրեն կը յաջորդէ իր որդին Ղալա-Հասան, (տես. Մակար եպս. Բարխուտարեանց *Պատմութիւն Աղուանից*, 1907 Բ. հատոր, էջ 48—49):

Իսկ Ղարա-Հասանի յաջորդներու մասին պիտի խօսուի վարը:

## Բ ՈՒԼՈՒԲԷԿԵԱՆՔ

Ըստ վերի յիշատակարանին ասոնց պապն էր Շահանշէն կամ Շահանշա, որդի Հասանի:

1411էն առաջ մեռած պէտք ըլլայ (*Նոտարք*, էջ 40)։

Ասոր որդին է Սէյտի ըստ Բարխուտարեանցի որ յիշատակարանի մը մէջ հանդիպած է «*Ես Սէյտիս որդի Պարոն Շանշին* (Շահանշէն), *թոռն Պարոն Հասանայ*», (*Պատմ. Աղուանից* էջ 137. *եւ Հայկ. երեք մեծ վանքեր* էջ 97)։

Ասոր յաջորդ է իր որդին Շահանշահ, որուն զաւակներն էին Ուլուբէկ եւ Հախնազար։ Ասոնցմէ Ուլուբէկ բացառիկ դիրք մը պէտք է ունեցած ըլլայ վասնզի "Մէլիք" տիտղոսով կը յիշատակուի (*Նոյն*,):

Արդարեւ, Ուլուբէկ Մէլիք հաստատուած է Ջիհան Շահէն (1437—1467) Գեղարքունեաց եւ Ծար գաւառներուն վրայ եւ բնակութիւն հաստատած է Գեղարքունեաց Մեծ Մազրա աւանը: (*Պատմ. Աղուանից* Բ. էջ 25)։

Ասոնք կ'իշխէին Սօդ (հիմա Ջօտ), գաւառին, Գեղամայ լիճին արեւելեան կողմը:

## Գ ՋՀԱՆՇԷՅԻՔ

Ասոնց ալ պապը ցոյց կը տրուի Ջհանշէն կամ Ջհանշայ որդին Հասանի: Աս ալ մեռած պէտք է ըլլայ 1411էն առաջ, ըստ ծանօթ յիշատակարանին (*Նոտարք* էջ 40):

Դադի վանքին մէկ յիշատակարանին համաձայն (*Հայկ. երեք մեծ վանքեր* էջ 97) ասոր որդին էր Հասան եւ ասոր որդին Շահանշէ, որ իր ընտանիքին միւս անդամներու հետ նուիրատուութիւն բրած է Դադի վանքին (*Նոյն.*):

## Դ ԾԱՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Կը յիշատակուէր Հասան Ծարի իշխանին ծանօթ վեց որդիներէն զատ, եօթներորդ որդի մը եւս, որ էր Վահրամ որ 1411ին գրուած *Ճաշոց*ին յիշատակարանին մէջ յիշուած Ծարի իշխան «Պարոն Վահրամ»ն է (*Նոտարք*, էջ 39), որ այդ թուականին կ'երեւայ առաջին տեղը կը գրաւէր խաչէնի իշխաններուն մէջ, վասնզի նախապատուութիւն մը ունենալ կը թուի միւս իշխաններուն վրայ, ամէնէն առաջ յիշուած ըլլալով։

Ասիկա ունեցած է չորս զաւակներ որոնք էին 1. Գրիգոր, 2. Հասան, 3. Պէկ, 4. Ալթուն (*Հայկ. երեք մեծ վանքեր*, էջ 97)։

Ղեւոնդ վրդ. Փիրղալէմեանի կողմէ արտագրուած այն յիշատակարանը, որուն վերը ակնարկեցի թանկագին վաւերագիր մըն է Դոփեանց տան պատմութեան համար եւ կուտայ տեղեկութիւններ որոնք լուսաբանելու բնոյթ ունին Հայ իշխաններու իրական դիրքը:

Ահա այդ յիշատակարանը, դժբախտաբար պակասաւոր, ձեռագրէն թուղթ պակսած ըլլալով:

*«Գրեցաւ... ի թուաբերութեան հայկազեան տոմարիս ՊԿ (=1411) ի թագաւորութեան (Ղարայ) Եուսուֆին (1), ի հայրապետութիւն Հայոց Տէր Կարապետի (2), եւ յԱղուանից նորին անուակցի Տէր Կարապետի, եւ յեպիսկոպոսութեան նահանգիս Աթոռոյն Ադդէի (Դադի Վանից) Տէր Զաքարիայի, եւ յիշխանութեան տեղւոյս Պարոն Վահրամայ, Պարոն Տուրսունին, Պարոն Շրուանին, Պարոն Սատօյին, Պարոն Պռօշին, Պարոն Գրիգորին, յաստուածաշէն երկիրս Ծար կոչեցելոյ (3), ի Վանս Գետամէջ (4) ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս եւ այլ սրբոց նշանացս, զոր սօրօք ամրացեալ փրկեսցին յամենայն որոգայթից հոգւոյ եւ մարմնոյ ամէն:*

*Յիշատակ եղիցի եւ խմա հանգուցեալ իշխանացն այսմ նահանգին... Նախ մեծաշուք իշխանին Հասանայ որդւոյ Դաւրին եւ ամուսնոյն*

(1) *Ասոր վրայ խօսուած է վերը, էջ 360 Հիմնադիր Գարագոյունլուներու իշխանութեան. իշխած է* 1389—1399 *և* 1405—1427։

(2) *Կարապետ Կեղեցի, գահակալած է 1393էն 1407, Սիսի մէջ։ Հեռաւոր Սիւնիքի մէջ գրիչը 1411ին, տեղեակ չէ հաւանօրէն անոր մահուան կամ չուզեր ճանչնալ իրաւամբ անոր յաջորդ Յակոբը իբրեւ օրինաւոր Կաթողիկոս։*

(3) *Այս յիշատակարանին համաձայն ուրեմն Ծարի մէջ կ'իշխէին Վահրամ, Տուրսուն, Շրուան, Սադօ, Պռօշ, Գրիգոր Պարոնները, միայն անծանօթ կը մնայ թէ անոնք հաւաքաբար միեւնոյն հողերուն վրայ թէ՞ խաչէնի զանազան մասերուն վրայ կ'իշխէին։*

(4) *Գետամէջ գերեզմանատունն է Դոփեանց (Մեսրոպ Մագիստրոս եպս.* Հայկ. երեք մեծ վանքեր էջ 97)։

*իւրոյ Խոնձային, եւ զաւակացն իւրոց քաջ եւ արի պարոնացն Գրիգորայ, Սարգսի, Շանչի, Ջհանչի, Աղբուղին, Շրվանին (1), նաեւ Թագազարմ իշխանին Սաղունին, զոր Տէրն տէրանց եւ Թագաւորն թագաւորաց ընդ սրբոց թագաւորացն եւ բարեպաշտ իշխանացն դասեսցէ եւ պսակեսցէ զնոսա ամէն: Յիշատակ եղիցի եւ խմա ազատացն տանն Դաւբեան, նախ ամենայն օրհնութեանց արժանաւոր պարոն Աթապակին եւ այլ ամենայն ազատաց, նաեւ յիշել ի Տէր զամենայն տանուտեարսն աստուածաշէն երկրիս Ծարայ, նախ Ջադիկն... (թուղթ պակաս), գրեցաւ սուրբ տառս ձեռամբ Սիւնեցի Թովմա գրչի ի խնդրոյ Յովհաննէս քահանայի»: (Նօտարք, էջ 39—40):*

Ասկէ կ'երեւի թէ Դոփեանց Ծարի իշխանները որոշ չափով կը պահէին իրենց անկախութիւնը, սակայն 1411 թուականին, թէեւ երկիրը բաժնուած էր վեց մասերու իրենց յատուկ իշխաններով որոնք էին՝

1. Պարոն Վահրամ, որդի Հասան իշխանի
2. » Տուրսուն, թոռն Հասան իշխանի որդի Աղբուղէի
3. » Շրուան
4. » Սադօ (հաւանօրէն նոյն Սադունի հետ)
5. » Պռօշ
6. » Գրիգոր

Ծարի Դոփեան իշխանները իրենց ստորադրեալ ունէին ազատներ, որոնցմէ ձեռագիրը կը յիշատակէ հանգուցեալ *«ամենայն օրհնութեանց արժանաւոր»* պարոն Աթապակը։

Նոյնպէս այդ յիշատակարանը կը յիշէ Ծարի *«աստուածաշէն երկրիս»* տանուտէրները, որոնցմէ ինչպէս Ջագիկը, հաւանօրէն ուրիշներն ալ յիշուած պիտի ըլլային, եթէ էջ պակաս չ'ըլլար:

Ասիկա արդէն ցոյց կուտայ թէ Դոփեանք որոշ չափով մը կը պահէին իրենց ինքնավար դիրքը, Լէնկ Թիմուրի շրջանին։

## Ե. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Տեսնուեցաւ (վերը, էջ 356—357) թէ Վասպուրականի մէջ երկու որոշ վայրեր, Ամուկ եւ Աղթամար իրենց աշխարհագրական բացառիկ դիրքին շնորհիւ, հակառակ ամէն կողմէ մահմեդական իշխանութիւններով շրջապատուած ըլլալնուն, կրցած էին տոկալ եւ իրենց գոյութիւնը պահել:

Այնպէս որ երբ Լէնկ Թիմուրի արշաւանքը սկսաւ, անոնք կը շարունակէին մնալ տակաւին աննուաճ, հակառակ անոր որ պահ մը ենթարկուած էին Խլաթի Սուլթաններուն գերիշխանութեան եւ անոր վասալ դարձած էին:

Էօզպէք Թաթարներու արշաւանքէն առաջ Աղթամարի Կաթողիկոսը տակաւին տէրն էր կղզիին հողերուն եւ Ամուկ, ինչպէս կը թուի, կը պահէր դեռ իր անկախութիւնը, անշուշտ իսլամ տիրապետի մը պաշտպանութեան տակ:

Լէնկ Թիմուրի արշաւանքէն վերջ կը յիշատակուի նաեւ ուրիշ իշխանութիւն մը որուն կեդրոնը Ոստան քաղաքն էր եւ աւելի ուրիշ մը որ Մակուի մէջ հաստատուած էր։

Այս վերջին երկու իշխանութիւնները յայտնի չէ երբ հաստատուած էին, սակայն որոշ է թէ Ոստանը կը նկատուէր մին մեր աշխարհին անառիկ ամրոցներուն, *«զանմատչելիս եւ զանկոխ ոտից թշնամեաց եւ զտեղիս ապաստանի բոլոր աշխահացս»*, Աղթամարի եւ Ամուկի հետ (տես. Ոստանի Եղիշէ վանքին մէջ պահուած 1428ին Աղթամարցի Թովմա Մինասեանցէ գրուած Աւետարանին յիշատակարանը, *Դիւան Հայոց պատմութեան* Ժ. գիրք էջ 3, նաեւ վերը էջ 78—79) եւ Մակուն «անառիկ բերդ»ը, որ վերջինը կ'ըլլար քրիստոնեաներու ձեռքը մնացած բերդերուն *(նոյն)*:

Այսպէս, այս շրջանին Վասպուրականի մէջ կը հանդիպինք յիշատակութեան հայկական չորս իշխանութիւններու, որոնք դժբախտաբար կը ջնջուին, մասնաւորապէս Իսկէնտէրի կատարած արիւնահեղութիւններուն եւ կատաղի պայքարներուն միջոցին, ինչպէս Թովմա Մինասենց կը հաստատէ իբր ականատես վկայ, պատմելով այդ վայրերուն գրաւումը 1424—1431 թուականներուն (տես. վերը, էջ 78—79):

Լէնկ Թիմուր երբ Հայաստան մտաւ Ատրպատականէն, իր վայրագութեանց առաջին զոհերը եղան Վասպուրականը եւ Սիւնիքը: Ինչպէս յայտնի է Վանի նկատմամբ շատ խիստ եղած է Լէնկ Թիմուր, 1387 Սեպտ. 6ին, մօտաւորապէս 40 օրերու պաշարումէ մը վերջ քաղաքին տիրանալով եւ հոն գորադրելով ահարկու ջարդ մը։ *(Ազգապատում* էջ 1978 եւ *Մեծ.* էջ 30*)*: Զարմանալի է որ հակառակ ասոր Վասպուրականի մէջ իրենց գոյութիւնը կրցած են պահել Հայ իշխանութիւնները:

Ասիկա կը կարօտի մեկնութեան եւ թերեւս որոշ պատճառներ կան, որոնցմէ մին կրնար նկատուիլ այս շրջանակին մէջ տիրող քուրդ եւ հայ համերաշխութիւն մը, զոր կ'ենթադրեմ:

Լէնկ Թիմուրի մահէն (1405) վերջ, երբ Գարա Եուսուֆ, որ 1396էն 1406 նոյնիսկ Հայաստանի սահմաններէն հեռու մնացած էր, վերստին հոն երեւաց եւ իր պետութիւնը վերականգնեց, իր առաջին գրաւած վայրերէն մէկը եղաւ Վասպուրականը:

Անիկա նոյնիսկ յաջողեցաւ, ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 361) մաքառելով Միրանշահի եւ Ահմէտ Պահատուր խանի դէմ իր պետութիւնը ընդարձակել, Ատրպատականի ալ տիրապետելով:

Սակայն երկիրը չխաղաղեցաւ, վասնզի Մերան Շահէն վերջ, Շահրուխ (1425—1447) Լէնկ Թիմուրի մէկ ուրիշ որդին շարունակեց պայքարը Գարա Եուսուֆին դէմ, ինչպէս նաեւ անոր մահէն (1421) վերջ անոր որդւոյն կատաղի Իսկէնտէրի դէմ, որ իսկական պատուհաս մը հանդիսացաւ երկրին համար, վասնզի տեւական պատերազմի մը թատերաբեմ դար-

(1) *Տես. վերը էջ* 348 *ուր Հասանի և իր որդւոց վրայ խօսուած է։*

ձուց Հայաստանը եւ իր դրացի երկիրները (տես. վերը, էջ 78—79):

Վասպուրականն այս մշտատեւ պատերազմին աղէտէն ազատ չէր կրնար մնալ:

Արդարեւ 1423ին Իսկէնտէր *«աւերեաց զաշխարհն ամենայն եւ նստաւ չորս ամիս ի վերայ նորա* (Վանի) *եւ ի խսարին բերդին անթիւ եւ անհամար քրիստոնեայք մեռան ի սովոյ եւ ի ջրոյ, եւ փորացաւ եղեալ բազումք մեռանէին» (Մեծ.* 84)։

Բայց նոյն տարին չկրցաւ առնել Վան քաղաքը եւ Դուրէժ քաշուեցաւ (*Մեծ.* 84 եւ վերը՝ 78):

1425ին, Իսկէնտէր կրկին եկաւ Վանի վրայ եւ այս անգամ գրաւեց զայն (*Մեծ.* 84): Յիշատակագիր մը կ'ըսէ *«զՎանայ բերդն առին ի քրտուն Սքանտարամերզէն ի ՊՀԴ ամին (*=1425*) եւ շատ աւերութիւն արարին եւ զորբութիւնս զամէն գերի առին»* (Յակոբ Թոփճեան. *Ցուցակ Ձեռ. Դաղեան խաչիկ վրդ.ի*, էջ 55):

Նոյն տարին Իսկէնտէր գրաւեց նաեւ Աղթամար կղզին եւ Ռշտունեաց երկիրը (*Մեծ.* էջ 84):

1427ին Վասպուրական եւ Քաջբերունիք կողոպտուեցան Իսկէնտէրի փախստական զօրքերէն *(Ազգապատում.* 2051*)*:

1428—1430ին Իսկէնտէր եւ Օսման Ազգոյունլու Վասպուրականի մէջ իրարու հետ մաքառեցան Արճէշի, Արծկէի, եւ Վանի շուրջը, եւ նշանակելի է որ ժամանակակից պատմագիրը, Թովմա Մեծոբեցի, որ Իսկէնտէրի այս անվերջ պատերազմները կը պատմէ, զայն կը ներկայացնէ *«քրիստոնէասէր... եւ ողորմած ազգին մեր»*, վասնզի Արծկէի անձնատուր եղած ատեն (1430 Սեպտ. 17) Իսկէնտէր, սպաննած էր միայն քաղաքին տէրը՝ Սալթին եւ անոր խորհրդական Դանիշման մը եւ ուրիշ վնաս չէր հասուցած: Նոյնիսկ *«մազ մի ոչ կորեաւ...»* կ'ըսէ պատմագիրը (էջ 93):

Իսկէնտէր, իր որդին Արալին, Վանի իշխան կը դնէ։ Ասիկա սաստիկ հարկապահանջութեամբ կը նեղէ ժողովուրդը, եւ նշանակելի է որ Իսկէնտէր ժողովուրդին, այսինքն Հայոց, բողոքին վրայ զայն պաշտօնանկ կ'ընէ (*Մեծ.* էջ 99)։

Այնպէս որ բոլորովին անհասկնալի չէ թէ ինչպէս Վասպուրականի մէջ տոկացին Հայ մանր իշխանութիւնները, երբ Սիւնեաց մէջ գոյութիւն ունեցող Օրբէլեանց, Եգէգեաց, Աղցից, եւ Մակուայ իշխանութիւնները որոնք *«իբրեւ զճիռ մի ողկուզաց մնացեալ էին ի մէջ ազգիս»* ջնջուած էին արդէն:

Բայց Վասպուրականի մէջ ալ արդիւնքը ի վերջոյ նոյնը պիտի ըլլար, քանի որ Իսկէնտէրի բախտը փոփոխական էր միշտ եւ երկրին մէջ ստեղծուած էր խառնակութիւն մը ուր հնար չէր որ պզտիկ իշխանութիւններ, կարենային ապրիլ, առանց կռիւներու զոհ երթալու:

Արդարեւ չեն կրցած տոկալ Վասպուրականի Հայ իշխանութիւններն եւս, նման Սիւնեաց նահանգին իշխանութիւններուն եւ անոնք ալ ջնջուած են:

Թովմա Մինասենց 1428ին գրած իր մէկ յիշատակարանին մէջ, կը հաստատէ թէ ԺԵ. դարուն սկիզբը, քրիստոնէից բարեկամ եւ մանր մունր քրիստոնեայ իշխանութիւններ, աստ անդ ծուարած, կոխոտուած են. բարբարոս ասպատակներէն:

Ան կը պատմէ թէ *«ի հայրապետութեան տեառն Դաւթի (*1*), եւ իղանութեան ազգին Նետողաց* (իմա Թաթարաց) *Ամիրզա Սքանտարին Թուրք ազգաւ, որ տիրեաց աշխարհիս մերում, էառ բռնութեամբ զանառիկ ամրոցք աշխարհիս մերոյ, այս է զանմատչելիս եւ զանկոխ ոտից Թշնամեաց եւ զտեղիս ապաստանի բոլոր աշխարհացս, զկղզիս Աղթամարայ եւ զանառիկ ամրոցս եւ զմայրաքաղաքս երկրիս զՈստան եւ զպարանոցատանցն զԱմուկ... զբոլոր աշխարհն բռնակալեաց ընդ ձեռամբ իւրով եւ ընդ իշխանութեամբ»: (Դիւան Հայոց պատմութեան.* Ժ. գիրք, էջ 3*)*:

Ուրեմն Թովմա Մինասենց, որ Վասպուրականի մէջ ապրող ժամանակակից անձ մըն է, իբր քրիստոնեայ իշխանութիւններու վերջին կայաններ (2) կը յիշատակէ Աղթամարը, Ոստանը, Ամուկը եւ Մակուն, որոնք կը գրաւուին Իսկէնտէրի եւ այլ քանի մը բռնակալներու կողմէ եւ վերջ կը գտնեն այս Հայ իշխանութիւնները:

## 1. ԱՄՈՒԿ

Այս երեք իշխանութիւններէն հնագոյնը Ամուկն էր:

Տեսնուեցաւ թէ հոն կ'իշխէին Արծրունեաց շրջանէն մնացած Հայ իշխաններ, որոնք մինչեւ Լէնկ Թիմուրի շրջանը շարունակած են տիրել այդ *«պարանոցատանց»* անառիկ ամրոցին, որ ինչպէս կը թուի գրաւուած է Իսկէնտէրի կողմէ, որ ըստ Թովմա Մինասենցի *«էառ բռնութեամբ»* ինչպէս այլոց այս *«տեղի ապաստանի»* վայրը, որուն իշխողներուն յիշատակութեան այլեւս չենք հանդիպիր ԺԵ. դարէն վերջը: Ամուկ իսլամ տիրապետութեան ենթարկուած է 1420ական թուականներէն սկսեալ:

Այդ թուականներու Ամուկի կ'իշխէր Փիրալի որ մէկ տարուան մէջ երեք անգամ Արճէշ եւ Արծկէ քաղաքները կողոպտած եւ գերառութեան ենթարկած է (*Մեծ.* էջ 110):

Իսկ 1428 Սեպտ.ին Ամուկի իշխան կը յիշուի մահմետական մը՝ Հանի պէկ որ Իսկէնտէրի դէպի Քաջբերունիք կատարած արշաւին ատեն, երբ ժողովուրդը Լիմ ապաստանած, եւ նեղութեան մէջ էր, *"զորք բերդին Ամկայ, զոր եւ անօրէն պիղծ իշխանն նոցա Հաջիպէկ անուն նստեալ ի նաւ եկն ի կղզին եւ ըմբռնեալ զամենայն քրիստոնեայսն մեր պահանջէր ի նոցանէ ոսկի եւ արծաթ» (Մեծ.* էջ 87—88*)*:

(1) *Աղթամարի Կաթողիկոս* 1393—1423։

(2) *Աւելորդ չըլլայ յիշեցնել թէ Թովմա Մինասենց, ինչպէս բոլոր Վասպուրականի Հայերը, ունին այդ տեսակ մը տեղական հայրենասիրութիւնը, միայն Վասպուրականը նկատի ունէր այս տողերը գրած ատեն, վասնզի աշխարհ միայն իր աշխարհն է։ Վասպուրականէն դուրս ապրող Հայերը նկատի չունի։*

Թովմա Մեծոբեցի վարդապետ որ մէկն էր Լիմ կղզին ապաստանողներուն, կ'ըսէ *«եւ յերեկոյր ժամէն մինչեւ ի լոյս առաւօտուն* 40,000 *դահեկան էառ, բայց ի համարս աւելի* (քան) *զ*100,000: *Եւ յահէ նոցա կամէաք զի ծովն ընկղմէր զմեզ տեսանելով եւ լսելով զաղաղակ եւ զճիչ կանանց եւ որդւոց նոցա, վասնզի հարկանէին զամենեսեան եւ բրածեծ առնէին»* (*Մեծ.* էջ 88. հմմտ. Զամ. Գ. էջ 463):

Այսպէս, ուրեմն Լէնկ Թիմուրի շրջանին Ամուկ դադրած էր Հայ իշխան մը ունենալէ:

## Զ. ԱՂԹԱՄԱՐ

Լէնկ Թիմուրի Հայաստան գալէն առաջ Աղթամար իր կարեւորութիւնը կորուսած էր իբրեւ իշխանութիւն վասնզի անիկա անցած էր Սէֆէտտինեանց իբր սեփականութիւն, Ամուկէն անջատուելով:

Բայց անիկա կը մնար հողատիրութիւնը Աղթամարի կաթողիկոսներուն որոնք կղզին կը ժառանգէին հայրապետական աթոռի հետ միասին, եւ զայն կը կառավարէին:

Առաջին անգամ Աղթամարը գրաւած է Իսկէնտէր 1425ին (*Թովմա Մեծոբեցի* էջ 84): Ուրիշներ այս գրաւումը կը յետաձգեն 1431ին, եւ գրաւուած ցոյց կուտան Ամիր Փիրի բէկէն: Այսպէս, Թովմա Մինասենց կը գրէ 1431ի թուականով. *«էառ Փիր բէկն զԱղթամար կղզին եւ անպատմելի տրտմութիւն եհաս աշխարհիս եւ ազգիս Հայոց, եւ երկիրս աւերակ մնաց երկու տարի»* (Դիւան. Ժ. էջ 10):

Նոյն Թովման 1418 թուականով իր գրած մէկ Աւետարանին մէջ *«Յամի Պ եւ ութսուներրորդի* (=1431) *թուականութեան Հայկազեանն տումարիս, անհնարին աղէտ եւ մեծ կսկիծ դիպեցաւ աշխարհիս մերում: Վասնզի Ամիր Փիրի Բէկն, ազգաւ քուրդ թոռն Ամիր Եզդնին, էառ զԱստուածապահ եւ զանառիկ կղզին Աղթամար, որ տեղի էր ապաստանի ամենայն աշխարհացս եւ յառ եւ աւար գերութեան վարեաց զսպասք եւ զզարդք երկնանման տաճարին եւ զբոլոր ծովեզեր (ե)այս Վանորայից եւ Գեղորայիցս, զաստուածաշունչ մատեանքս եւ զայլ անաւթք սրբութեանցն. եւ ցան եւ ցրիւ ընդ ամենայն աշխարհ տարածեաց»* (Ե. Լալաեանց *Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Վասպուրականի* էջ 312):

Նոյն գրիչ իր 1433ին գրած ուրիշ մէկ Աւետարանին մէջ կը պատմէ թէ ինչպէս Փիրի բէկ *«եկեալ գաղտնաբար անաւրէնն... պաշարեաց եւ էառ զկղզին Աղթամար»* (*Նոյն.* էջ 365) եւ ինքն ապաստանեցաւ Ուրանց գիւղը, *«մերկ եւ թափուր ի հայրենի ընչիցն...»*: Իրեն հետ կը թուի ըլլալ Դանիէլ Քհ. որ կը պատմէ թէ *«եկեալ անաւրէն բռնաւորն Փիրի բէկ եւ առեալ զկղզիս Աղթամար. եւ յոյժ աւերեալ թալանեաց»* եւ իրենք փախան Ուրանց, ուր երկու տարի մնացին (տես. *նոյն.* էջ 374) եւ ապա Զաքարիա Կաթողիկոսի հրամանով դարձան Աղթամար: Բայց ինչպէս կը տեսնուի, նոյնիսկ այն Թումա Մինասենցի 1444ին գրած սա տողերէն թէ կ'ապրին *«ի դառն եւ փշոտ ժամանակի. յորում տառապեցուցանեն եւ նեղեն զազգս քրիստոնէից ազգի ազգի կեղեքմամբ եւ անողորմ հարկապահանջութեամբ եւ յաշխարհէ յաշխարհ վտարմամբ իբր զգերի, տամբ եւ ընտանեաւք, անիրաւ ազգն նետաւղաց, որք են տեարք եւ թագաւորք եւ իշխանք աշխարհաց մերոց, ազգաւ թուրք»*, երկիրը չէր խաղաղած (տես. *Ցուցակ Վասպուրականի* էջ 387):

Այս կերպով Աղթամար կը կորսնցնէր իր անկախ իշխանութիւնը, սակայն կը թուի թէ կրօնական իշխանութեանց ի յարգանս, մեծ միջամտութիւն մը չեն գործադրած տիրողները, եւ Աղթամարի կաթողիկոսները տէր մնացած են կղզիին:

Եւ այս վիճակը շարունակուած է ինչպէս Էօզպէք Թաթարներէն նոյնպէս նաեւ Գարա Եուսուֆէն, Իսկէնտէրէն եւ Ջիհան Շահէն կարգուած կուսակալներու ժամանակ, որոնք միշտ յարգալի եղած են Աղթամարի աթոռին հանդէպ:

Մասնաւորապէս ասոնցմէ Ջիհան Շահ, որ բացառիկ բարեացակամութիւն մը ցոյց տուած է Հայոց հանդէպ, այնքան ողոքիչ քաղաքականութեան մը հետեւած է որ Հայերը անոր *Շահի Արմէն* (Հայոց թագաւոր) տիտղոսը լուրջի առած եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը Էջմիածին փոխադրելով անոր հովանիին եւ պաշտպանութեան տակ դնել ուզած են (տես. վերը, էջ 79—80):

Աղթամարի Ստեփանոս Կաթողիկոսը (1465—1485), յաջորդը Ջիհան Շահի բարեկամ Զաքարիայի (✝ 1464) որուն հոգեւոր եւ մարմնաւոր կրկնակ իշխանութիւնները *«յոտն Վարագայ, ի կողմն հարաւոյ»* միակ մնացորդ փոքրիկ նշոյլներն էին *«բարեպաշտական»* ըստ Թովմա Մեծոբեցիի, զարմանալի փորձ մը ըրած է, իրեն հովանաւորեալ թագաւորութիւն մը ստեղծելու, կամ Աղթամարի կաթողիկոսներու վրայ ծանրացող իբր հայրապետ՝ հոգեւոր եւ իբր հողատէր՝ քաղաքային գործերը իրարմէ անջատելու: Այս նպատակով 1465ին իր ազգականներէն Սմբատը (որդի Ամիր Գուրջի բէկ Սէֆէտտինեանի) կ'օծէ Աղթամարի մէջ *«Հայոց թագաւոր»*, երբ երկիրին տիրապետող Ջիհան Շահ ալ նոյն տիտղոսը կը կիրարկէր: Անիկա յանդգնութիւն մըն էր, որ մեկնել կարելի չէ, վասնզի Կաթողիկոսը իբրեւ սեփականատէր կղզիին ազատ էր սեփականութիւնը կամ հողատէր տիրապետութեան իրաւունքը, փոխանցել ուրիշի մը սակայն Հայոց թագաւոր մը օծել, երբ Ջիհան Շահ իբր այն կը ներկայանայ, գրգռիչ էր:

Որչափ որ Սմբատի թագաւորութիւնը — որ երկու տարի տեւած է — ծիծաղելի էր եւ աննշանակ, քանի որ Աղթամար կղզեակը թագաւորութիւն մը չէր կրնար կազմել, բայց գործը կրնար աղէտալի հետեւանքներ ունենալ Հայոց համար: (Վերը, էջ 80—1) եւ եթէ չունեցաւ ասիկա սոսկ Ջիհան Շահի շնորհն էր, ինչպէս տեսնուեցաւ:

Այս փորձէն վերջ Աղթամար մնաց սոսկ հոգեւոր կեդրոն մը, սահմանափակ շրջանակի մը համար, վասնզի Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան

տրոյր էջմիածինի մէջ հետզհետէ աւելի մեծ կարե-ւորութիւն ստացաւ, իսկ Աղթամար անշքացաւ:

Ձեռագիրի մը մէջ կը կարդանք որ «*ի վեր-ջին տարիս եւ ի յայս դառն ժամանակիս, ի թիվ. ՋԽԸ* (=1499) *քուրթն չար զանառիկ կզլին զԱղ-թամար վասն ծովացեալ մեղաց մերոց եւ բազում աւերս արար եւ անչափ մալ եւ մանգրուն՝ հայի եւ տաճկի, աւարի եւ բնականի՝ թալանեաց եւ տարաւ*» (*Ցուցակ Վասպուրականի* էջ 318)։

## է· ՈՍՏԱՆ

Արծրունեաց թագաւորութիւնը երբ երեքի բաժ-նուեցաւ, ԺԱ. դարուն, անոր մասերէն մէկը կը ներ-կայացնէր Ռշտունեաց թագաւորութիւնը Ոստան մայ-րաքաղաքով։

Յաջորդ դարերուն հոն իշխանութեան մը յի-շատակութիւնը չկայ դժբախտաբար: Սակայն ԺԴ. դա-րուն վերջերը կը յիշուի Ռշտունեանց Ոստանի մէջ Եզդին կամ Ազդին ամիրայի մը անունը, որուն Թով. Մեծոփեցի կուտայ «*ամիրայ Մարաց*» տիտղոսը (*Մեծ.* էջ 13) եւ ուրիշ տեղ մըն ալ (էջ 30) «*յազգէն Մենե-քերիմեանց*» կը կոչէ:

Արդ, նկատելով թէ այս պատմագիրը,— *Մարք* բացատրութիւնը ինչպէս ուրիշներ— կը գործածէ *քուրդ* ըսելու տեղ, եւ կը հաւաստէ թէ Հայաստանի անտերնչութեան եւ թշուառութեան օրերուն անոնք որ «*անտերունչ մնացին, մեռանէին ի սաստկութենէ սովոյն եւ ոմանք գնացեալ խառնեցան ի քուրդն Բաղիշոյ, Մշոյ եւ Սասնոյ վասն աղքատութեան եւ սովոյն դառնութեան եղեալ ի հաւատոց դար-ձան յանհաւատութիւն*» (*Մեծ.* էջ 95), իրաւունք ունինք ենթադրելու թէ շատեր Հայերէն, զանազան ակնկալութիւններով իսլամացած եւ քուրդերուն խառ-նուած են:

Անոնցմէ էր հաւանօրէն Ռշտունեաց տէր Եզ-դինի տունը որ կ'ենթադրուի իր տանուտիրական իշ-խանութիւնը կը պահէր, Ռշտունեաց գաւառին մէջ, իբր վասալ Արեւելեան Հայաստանի տիրապետող Ճէ-լայերեան Մոնկոլ վեհապետներուն, որոնց մայրաքա-ղաքը Դաւրէժ էր:

Եզդին, երբ 1387ին Լէնկ Թիմուր մտաւ Ատր-պատական, Ջէլայիրեան Ղիյասէտտին Ահմէտ Պահատուր խանը (տես. վերը, էջ 335 եւ 361) Ոստան ապաստա-նեցաւ եւ անկէ անցաւ Պաղտատ (*Մեծոփեցի* էջ 13)։

Գուցէ ասիկա պատճառ եղաւ որ Լէնկ Թի-մուր, եկաւ Վանի վրայ, որուն կ'իշխէր Եզդին: Ան անմիջապէս հնազանդութիւն չյայտնեց «*այլ ապըս-տամբեալ ի նմանէ մնաց ի յամրոցին հանդերձ ամենայն զօրօքն եւ բազմութեամբ քրիստոնէից*» (*Մեծ.* 30), բայց երբ ճար չգտաւ դիմադրութեան գնաց Թիմուրի քով, հպատակութիւն յայտնելու, բայց կալանաւորուեցաւ: Վանի քաղաքացիք 40 օր դիմա-դրեցին բայց վերջապէս սովէն նեղուած անձնատուր եղան 4 Սեպտ. 1387ին, եւ ահարկու կոտորածի մը ենթարկուեցան:

Եզդին, ինչպէս կ'երեւի գերութենէ արձակը-ուած է, վասնզի Սիմէոն Ռշտունցի, ժամանակակից վարդապետը, կը գրէ որ «*ՊԽԱ* (=1392) *թուին Հա-յոց, չար ամիր Էզդին զՈստան քաղաք յեղբօ-րէն իւրմէ Նաւասարդի ամիս, ի յայտնութեան Պահոց Երեքշաբթի եւ շատ պակասութիւն էած քրիստոնէից*» (*Դիւան Հայոց Պատմութեան Ժ.* էջ 15, տես. նաեւ վերը, էջ 361)։

Յաջորդ տարին (1393) Աղթամարի Զաքարիա Կաթողիկոսը (1376—1393 Յունիս 26 ✝) իսլամու-թեան կը հրաւիրէ եւ երբ ան կը մերժէ, կը նահա-տակէ (Հ. Աճառեան եւ Յ. Մանանդեան *Նոր վկաներ* էջ 173—174. *Ազգապատում* 1993—4. *Թովմա Մե-ծոփեցի*, էջ 71):

1395ին Եզդին իբր ստորադրեալ Մոնկոլներու եւ իբր հաւատարիմ վասալ Լէնկ Թիմուրի, կը կռուի Գարա Եուսուֆի դէմ, որ Արճէշի վրայ յարձակած էր եւ կը պարտուի ու հաշտութիւն կը կնքէ (*Մեծ.* 47): Քիչ ետքը թաթար Աթալմիշ իշխանը Բասենէն օգնու-թեան կուգայ եւ տեսնելով որ Եզդին հաշտութիւն կնքած է, Աղի գիւղը գերի կը տանի (*Նոյն.* 48): Քրիս-տոնեաները կը հալածեն թաթարները: Գարա Եուսուֆ ալ իր եղբօրը Արալիի հետ հասնելով կը յարձակի Աթալմիշի բանակին վրայ եւ անոր ամբողջ զօրքը կը կողոպտէ եւ զինքն ալ գերի բռնելով Եգիպտոս կը ղրկէ (*Մեծոփեցի*, էջ 47—48):

Եզդին կը դառնայ Գարա Եուսուֆի ճորտը, բայց երբ Լէնկ Թիմուր Եուսուֆը կը վանէ Հայաստա-նէն Եզդին կը հնազանդի Թիմուրի եւ կը պահէ իր իշ-խանութիւնը, երբ 1396ին Միրան Շահ Բաղէշի Իպ-րահիմ ամիրային հետ— որ «*յոյժ ատեցող Քրիստոսի եւ քրիստոնէից ազգին*» էր— պատերազմի կը բռ-նուի, Եզդին կը միջամտէ եւ կռիւը կը դադրեցնէ եւ որովհետեւ Իպրահիմ սպաննուած էր անոր եղբօրը՝ «*սիրող ամենայն քրիստոնէից*» Ամիր Շարաֆին փոքր տղան Շամշատինը Բաղէշի ամիրա նշանակել կու-տայ (*Մեծ.* էջ 69):

18 Փետր. 1405ին երբ Լէնկ Թիմուր կը մեռնի եւ Գարա Եուսուֆ, որ Դամասկոս կը գտնուէր, Հայաս-տան կը դառնայ, Բաղէշի ամիրան Շամշատին անոր կողմը կ'անցնի եւ անոր կը տրամադրէ պարէններ, զրահներ եւ զէնքեր: Եզդին կը մնայ հաւատարիմ Մոն-կոլներուն:

Գարա Եուսուֆ՝ Շամշատինի օգնութեամբ Ռըշ-տունիք կուգայ եւ մինչեւ Վարագ կ'առաջանայ: Եզ-դին անոր դէմ կը ղրկէ 12,000 զօրքով իր Մելիք որ-դին որ «*բարեբարոյ եւ սիրողն եւ ողորմածն քրիս-տոնէից*» էր (*Մեծ.* 70): Դժբախտաբար քուրդերը կամ պատմագիրին բառերովը՝ «*ազգին Մարաց*», կը դա-ւեն, վասնզի «*խոյս ետուն եւ փախեան*» (*Նոյն.*):

Գարա Եուսուֆ երկիրը աւերեց եւ կողոպ-տեց: Ղեւոնդ վրդ. Փիրղալէմեանի կազմած ժամանա-կագրութեան մէջ, որ հաւաքում մըն յիշատակա-րաններու, գրուած է թէ «ՊԾԷ (=1408) *Ղարայ Իւ-սուֆն հանդերձ Շմշտինա արարին բազում ա-ւերս յԱրճէշ, յԱրծկէ, ի Վան եւ ի յՈստան, եւ ի միւս տարին* (1409) *Շմշտինի հեծեալքն եկին եւ այրեցին զԼատուան* (գուցէ Դատուան) *եւ բար-կացեալ ամիր Եզդին գնաց եւ այրեաց զվաթ-*

*սուն գիւղ ի Բաղիշոյ»* (տես. *Դիւան Հայոց Պատմութեան Ժ.* էջ 495)։

Բայց կ'երեւի թէ ի վերջոյ համաձայնած եւ հաշտուած են, վասնզի Թովմա Մեծոփեցի, իր վերոգրեալ տողերուն անմիջապէս կը յարէ *«եւ ապա եկեալ ի հնազանդութիւն Եզդին ամիրային եւ Մէլէք որդին»* (*Մեծ.* 70), որով կը յայտնուի թէ հայր եւ որդի ի վերջոյ հնազանդած են Գարա Եուսուֆի, որ զայն կուսակալ նշանակած է Վասպուրականի, ինչպէս կը հաստատէ ժամանակակից Թովմա Մինասեանց իր Ս. Յակոբայ վանուց պատմութեան մէջ, գրելով թէ *«ՊԿԱ (1412) ամի թուականութեան Հայկազեան տոմարիս, ի թագաւորութեան Թաղթին Ղարայ Յուսուֆին, եւ ի կողմնապետութեան մերոյ աշխարհիս Ամիր Եզդին, եւ որդւոյն իւրոյ Մելիքին, որ էր յոյժ խնամածու եւ բարեկամ քրիստոնէից...»* (*Դիւան Հայոց Պատմ. Ժ.* էջ 8)։

Ասոնց օրով վանքերը կը ծաղկին եւ նոր եկեղեցիներ կը կառուցուին (*նոյն.*)։ Այնպէս որ Հայերու համար քիչ շատ նպաստաւոր կացութիւն մը կ'ստեղծուի։ Այս բարօր շրջանին պէտք է կատարուած ըլլայ Ս. Վարդան վանքին նորոգութիւնը *«ի ղանութեան Ղարայ-Ուսուֆին եւ յամիրապետութեան Ոստան քաղաքին՝ Ամիր Եզդընին եւ որդւոյն իւրոյ Մելիք Մահմատին»* (*Ցուցակ Վասպուրականի* էջ 389)։ Նոյն Թովմա Մինասեանց գրիչը, Աւետարանի մը յիշատակարանին մէջ կը հաստատէ թէ 1419ին մարախին ատեն, *«ի գութ շարժեալ իշխան աշխարհիս մերոյ ամիր Եզդինն»* աշխատած էր ազատելու երկիրը, որով դեռ պաշտօնի վրայ էր (*Դիւան Հայոց Պատմ.* էջ 3)։ (1)։

Հաւանօրէն մինչեւ այդ թուականը պաշտօնավարած պէտք է ըլլայ վասնզի 1419 թուականով Աւետարան մը գրուած է *«յիշխանութեան... Մելիքի, որդւոյ Ամիր Եզդին մէլիքին»* (Ե. Լալայեանց. *Ցուցակ Ձեռ. Վասպուրականի.* էջ 320), իսկ 1420ին ուրիշ Աւետարան մը կայ գրուած՝ *«ի բռնակալութեան, նահանգիս մերոյ* (Ռշտունեաց) *բարձր անուն Մէլիքի»*։ (*Նոյն.* էջ 327)։ Ուրեմն 1419—1420 Եզդինի յաջորդած էր իբր Ռշտունեաց տէր կամ Ոստանի ամիրա, իր որդին Մելիք որ Լենկ Թիմուրի Պաղտասը գրաւած ատենը անոր բանակին մէջ էր (*Մեծ.* էջ 64)։

Անոր յաջորդած է Եզդինի միւս որդին՝ Ահմէտը, որ մինչեւ 1424, Ռշտունեաց երկիրը կառավարած է։

Ասոնք ինչպէս կը տեսնուի իսկապէս սրտով Հայ եւ քրիստոնէից պաշտպան անձեր եղած են թէեւ քրդացած (2)։ Ահմէտ, որուն Սուլթան տիտղոսն ալ տրուած է, կ'երեւի թէ Իսկէնտէրէն ապստամբած է, վասնզի 1424ին Իսկէնտէր, բռնեց Սուլթան Ահմէտը (3) Ոստանի մէջ եւ ապա եկաւ Վան եւ աւերեց եւ աւարեց երկիրը բայց քաղաքը չկրցաւ գրաւել հակառակ չորս ամիս պաշարելուն։

Յուսահատ մեկնեցաւ յաջորդ տարին գալու համար։

Իրեն հետ տարաւ Սուլթան Ահմէտը որ Երնջակի մէջ սպաննեց (*Մեծ.* էջ 84)։

Անոր յաջորդած է *«որդի քրդոյն Մելիք Աղա»* (*Մեծ.* էջ 84) որուն ատենն է որ Իսկէնտէր կրկին կուգայ Վանի վրայ եւ զայն կը գրաւէ (հմմտ. Յ. Թօփճեան. *Ցուցակ Դաղեան վրդ.ի* էջ 55) եւ Աղա կամ Լսաս *«նեղեալ» «ետ ինա զբերդն եւ ազատեալ՝ ելեալ գնաց կահիւք եւ ընչիւք ի Ջուլամերկ»* (*նոյն.*)։ Նոյն տարին Իսկէնտէր կ'սպաննէ նաեւ Աղայի հօրեղբայրը՝ Պահաթինը *«առեալ զերկիրն Ռշտունեաց եւ զկղզին Աղթամարայ եւ բազումք ի քրիստոնէից աստ եւ անդ շրջեալ ի լերինս եւ ի բլուրս սովալլուկ եւ սովատանջ եղեալ մեռանէին»*։ (*Մեծ.* էջ 84) (4)։

Այսպէս, վերջ կը գտնէ այս իշխանութիւնը որ թէպէտեւ քրդական է, բայց հայկական ծագում ունենալուն համար հաւանօրէն Թովմա Մինասեանց Հայ կը նկատէ եւ 1418ին Ոստանն ալ կը դնէ Աղթամարի եւ Ամուկի շարքին, իբր Իսկէնտէրէն բռնութեամբ գրաւուած (տես. վերը, էջ 79)։

Այս իշխանութիւնը 1425ին Մինասեանց Թովմայի յիշատակարանին համաձայն ունէր բաւական ընդարձակութիւն, պարունակելով *«զերկիրն Հայոց* (Հայոց Ձոր թերեւս?), *զԱղբակ եւ զԲարպահ եւ զՈստանայ երկիրս՝ մինչ ի Բաղէշ»* (*Ցուցակ Վասպուրականի* էջ 353)։

Այդ թուականէն վերջ այս շրջանակին մէջ Ջհանշահի ստորադաս 1437ին կը յիշուի իբր "պարոն" Աւտալ բէկը (*Ցուցակ Վասպուրականի* էջ 380) եւ 1439—1445ին իբր «կողմնապետ»՝ Դլըին Ասլան պարոնը (*նոյն.* էջ 390) եւ իր որդին Սէյիտ (*Դիւան Հայոց Պատմ, Ժ.* էջ 498 եւ էջ 6 եւ 12, եւ *Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի*, էջ 390) *«որք են ազգաւ թուրք՝ յոյժ հարկապահանջողք եւ կեղեքիչք քրիստոնէից»*։ Ասոնք կը թուին ըլլալ պարզ կուսակալներ եւ ոչ թէ ժառանգական իշխաններ։

1452ին *«եկն Ջհանշայ փաթշահն եւ ի յՈստան նստաւ՝ բոլոր ձմեռ մի՝ բազում զօրօք»* (*նոյն.* էջ 414), ինչ որ ցոյց կուտայ թէ այլեւս անկախութեան հետք գոյութիւն չունէր։

(1) 1419ի *մարախին վրայ կը խօսի նաեւ Աւետարանի մը յիշատակարանը* (տես. Ցուցակ Ձեռ. Վասպուրականի էջ 325)։

(2) *Թովմա Մեծոփեցի* (էջ 92) *կը յիշատակէ Բեկրիի տղը՝ Սեւդինը քուրդ* «պիղծ եւ անհաւատ» «ի տանէ եւ յազգէ բարբարոյ եւ աշխարհաւերն Ամիրայի Եզդինի եւ Մէլիքին»։ *Սեւդին ուրեմն նոյնպէս Արծրունի էր սակայն մոլեռանդ նորահաւատ մը, եւ Եզդինի պէս չէր։*

(3) *Թովմա Մինասեանց իր գրած բազմաթիւ Ձեռագիրներէն 1425ին Աղթամար գրած Աւետարանին ընդարձակ յիշատակարանին մէջ ունի սա տողերը.* «Զար բռնաւորն Ամիրզա Սքանտարն՝ տէրն Թաւրիզոյ, ազգաւ թուրք, զամիրապետն Ոստան քաղաքի՝ զՍուլթան Ահմատն՝ ըմբռնեալ է եւ երկաթի կապանաւք ի յԱլընջոյ բերդն ի բանտի է եղեալ, խնդրելով ի նմանէ զանառիկ ամրոցս նորա» (Ցուցակ Վասպուրականի *էջ* 353)։

(4) 1431ին Ամիր Փիրի բէկն, ազգաւ քուրդ, թոռն Ամիր Եզդինին» *կ'առնէ Աղթամար կղզին* (Ցուցակ Վասպուրականի *էջ* 312) *Ասիկա կը նշանակէ թէ Ռշտունեաց Ոստանի իշխանութեան վերջանալէն վերջ Եզդինի սերունդէն անձեր տակաւին փորձած են պահել մասեր այս իշխանութեան հողերէն։*

# 4 · ՄԱԿՈՒԻ ԻՇԽՈՂՆԵՐ

Դժբախտաբար այս իշխանութիւնը, որ մինչեւ ԺԵ. դար իր գոյութիւնը կը պահէր, երբ հիմնուած է, անծանօթ կը մնայ:

Մակու կը գտնուէր Վասպուրականի Արտազ գաւառին մէջ, որ արեւելեան կողմն է Կոգովիտի, եւ հարաւակողմն՝ Մասեաց Ոտն գաւառներուն, այնպէս որ կը փորձուիմ ենթադրելու թէ այս իշխանութիւնը շարունակութիւնն էր Կոգովիտի եւ Ծաղկոտնի վաղեմի իշխանութեան որ ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 156 եւ 368), աւելի երկարակեաց եղած էր քան Արծրունեաց եւ Բագրատունեաց թագաւորութիւնները:

Ասոր իշխանները թերեւս ի վերջոյ հոս ապաստանած են:

Ամէն պարագայի մէջ շատ պարզ չէ Մակուի մէջ քրիստոնեայ իշխանի մը գոյութիւնը ԺԵ. դարուն սկիզբները վասնզի Երուսաղէմի վանքը կը պահուի (թ. 327) ձեռագիր մը 1406 թուականով, գրուած ձեռամբ Մխիթարիչ քհ.ի մը „*ի գաւառին Արտազու ի Մակու գեղջ առ պարոնութեան Նուրատնի*”, որ ապահովաբար իսլամ էր:

Թովմա Մեծոբեցի 1404ին Միհրանշահի Ատրպատականին տիրակալութեան շրջանին վրայ խօսելով, կ'ըսէ թէ անիկա իր իշխանութիւնը տուաւ իր Եօմէր որդիին, որ առաջին տարին իսկ «*երեք իշխան յազգէս մերմէ, որք իբրեւ զճիռ մի ողկուզաց էին մնացեալ ի մէջ ազգիս, դարձոյց բռնութեամբ ի յանհաւատութիւն*» (էջ 67), ինչպէս վերը յիշուեցաւ: Բայց նշանակելի է որ երբ Ատրպատականի մէջ խաղաղութիւնը կը հաստատուի, անոնք որ Մոնկոլներու ատեն իրենց հաւատքը ուրացած էին հաւատքի կուգան: Ասոնց կարգին կը յիշուի նաեւ Մակուայ Սուրշաթմիշ իշխանը: (*Թովմ. Մեծ.* էջ 73): Բայց ինչպէս կ'երեւի Սուրշաթմիշ իսլամութեան չէր յարած այլ կաթոլիկութեան, վասնզի միւսներուն ուրացութեան վրայ խօսած ատեն, «*զտէրն Մակուայ հանին ի սուտ եւ յերկարնակ աղթարմայութենէն*» (*Մեծ.* 68), կ'ըսէ, միւս երկու իսլամացողներուն հետ եւ այսպէս երեքն եղան «*ճշմարիտ հաւատացեալք Քրիստոսի*» (*Մեծ.* էջ 68):

Ինչպէս ձեռագիրի մը մէջ (Երուսաղէմի թ. 1582) յիշատակարանին բովանդակութենէն կը մակաբերուի Մակուի Հայ բնակչութիւնը, ինչպէս իրենց իշխանը, մեծամասնաբար կաթոլիկութեան յարած էին ունիթոռներու ջանքերով, եւ տիրակալած էին երկիրին վասնզի այդ յիշատակարանին մէջ որ գրիչը Դաւրէժ գրել սկսած է եւ ապա շարունակած է Արտազու Ս. Թադէոս Առաքեալ վանքին մէջ եւ 1426ին աւարտած է, կ'ըսէ թէ “*իսոյն ամի որում, էառ Ըսքանտար անուն ոմն բռնաւոր որդի Ղարա Ուսուֆին, զանառիկ բերդն Մակուայ, եւ զերկարնակ ուրացող ազգս ախթարմայից տարագիր եւ տարաշխարհիկ արար ի վերայ երկրի եւ կատարեցաւ բան տեառն, զի չզարքն չարեաւ կորոյս, եւ զայգին ետ այլոց մշակաց...: Ես... Գրիգոր...: ի վաղուց հետէ փափաքէի շինութեան... առաքելական Ս. Աթոռոյս մերոյ եւ ոչ տային թոյլ նախանձացեալ ներհակքն բնակիչքն Մակվայ*”:

Ուրեմն այդ կաթոլիկներն էին որ կը բռնակալէին եւ նոյնիսկ կը հալածէին հայադաւանները եւ թոյլ չէին տար որ անոնք նոյնիսկ Հայոց համար մեծ նուիրականութիւն ունեցող Արտազու Ս. Թադէոս Առաքեալ վանքը նորոգեն:

Յիշատակագիրը կը պատմէ թէ այս կրօնական բռնակալութիւնը ջնջուած է Իսկէնտէրի գրաւումով:

Անիկա կը շարունակէ պատմել թէ «*կրկին վայ եկն ի վերայ նոցա եւ ԵԲԱՐՁ ԶԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ՆՈՑԱ Ի ՅԱՐՏԱԶ ԳԱՒԱՌԷՆ եւ ետ շխ (շէխ) Բայազիթ ոմն այլազգոյ եւ զոր յառաջ ասացեալ չարքն* (ակնարկ կաթոլիկներու) *բարձեալ էին ի դրանէ Ս. Առաքելոցս եւ տարեալ թուպութեամբ եւ նախանձու: Սա դարձեալ ի տեղի իւր եբեր մեծաւ յօժարութեամբ եւ հնազանդութեամբ սիրով, զդուռն եկեղեցւոյս եւ զմեծ զանկակն եւ զգերան ժամատանս եւ այլ ամենայն կերպիւ անխաթ եւ ողորմութիւն, զոր ի մարդապաշտ անիծեալ յազգէն յայն ոչ տեսաք ամենեւին զոր սա արար որ եւ ընդ հնազանդութեան իւրոյ զհատուցում ի մարմնաւորս առցէ, զառողջութիւն եւ զտաւլաթ...*»:

Մակուի իսլամներէ գրաւումը եւ հոն գտնուող քրիստոնեայ իշխանութեան մը վերջ դրուած ըլլալը կը հաստատէ վերոյիշեալ յիշատակարանին թուականէն տարի մը վերջը 1427ին Թովմա Մինասենց գրիչը, ձեռագիրի մը յիշատակարանին մէջ (տես. *Դիւան Հայոց պատմութեան* Ժ. գիրք էջ 3—5): Ան կ'ըսէ թէ «*էառ... Սքանտարն զանառիկ բերդն Մակուայ... (1) ի ձեռաց քրիստոնէից եւ տիրաց նմա... զի բոլոր աշխարհացս այն մին բերդն միայն մնացեալ ի ձեռն քրիստոնէից եւ այն եւս առաւ ի մէնջ*»:

Այսպէս կը վերջանար այս Հայ իշխանութիւնը, վերջինը բնիկ իշխանութիւններուն որոնք հինէն կը հասնէին: Անիկա տոկացած էր մինչեւ ԺԵ. դարուն առաջին քառորդէն քիչ վերջը:

(1) Մակուի *կամ* Մաքուի, *բերդին եւ քաղաքին վրայ Ալիշան ունի սա տեղեկութիւնները.* «բերդ կամ ամուր ահեղ եւ ընդարձակ քարայր, կարկառեալ ի վերայ շինին, որում բազում խնամով զգուշանան պարոնք, ոչ ումեք թողեալ մտանել ի ներքս: Այս տեղի Ծակ Մակուայ կոչի ի գիրս մեր, եւ թուի հնութեանց եւ արձանագրութեանց լինել իտես: Աւանն կամ քաղաքն ի ներքոյ բերդին կայ ի զառէջս լերին անշքացեալ վասն բնակչացն Հայոց գաղթելոց ի Ռուսս եւ քայքայեալ ի սասանութենէ Արարատայ յամին 1840» (*Ալիշան.* Տեղագիր Հայոց Մեծաց էջ 56):

## Դ․

# ՎՐԱՍՏԱՆ

Հայ եւ Վրացի ազգերու գործակցութիւնը Սելջուկեանց եւ Մոնկոլներու շրջանին արդէն այնքան սերտ էր որ ոչ միայն երկպետութիւն մը կազմած էին, այլ իրենց պատմութիւնները իրարու խառնուած էին:

Նոյնպէս Թաթարներու շրջանին տարբեր չէր երկու ազգերու դիրքը, թէեւ իրենց գործակցութիւնը այնքան հաստատուն չըլլար:

Տեսնուեցաւ թէ Մոնկոլները ուժգին հարուածներ տուած էին Վրաստանի եւ զայն բաժան բաժան ըրած, սակայն անիկա իր աշխարհագրական նպաստաւոր դիրքին շնորհիւ ԺԴ. դարուն, յաջողած էր վերականգնել իր աւերակները եւ նոյնիսկ ձգտիլ քաղաքականապէս միանալ Գէորգ Ե. թագաւորին (1318—1346) ատեն, եւ դիմադրել իր թշնամիներուն որոնք զինքը չկրցան ընկճել:

Նոյնպէս Թաթարներու ահեղ առաջնորդին՝ Թիմուր Լէնկի արշաւանքը նոր դժբախտութիւններու առջեւ կը դնէր այս երկիրը, 20 տարի շարունակ, եւ վերջապէս կը խորտակէր Վրաստանի ոյժը։ Բագարատ Ե. թագաւորի (1369—1395) ատենն էր որ Թիմուր յանկարծակի յարձակմամբ գրաւեց Թիֆլիսը, եւ այնքան անխնայ կոտորեց որ *«սպանեալն յոլով էր քան թէ ապրեալն» (Մեծ.* էջ 19*)*: Բագարատ Ե. ճարահատ փորձեց ողոքել Լէնկ Թիմուրը, գալով *«բազում ընծայիւք ի հնազանդութիւն»*: (*Մեծ.* էջ 20):

Բագարատ Ե. նոյնիսկ իսլամացաւ առերես։ Լէնկ Թիմուր զայն իր հետ Ղարապաղ (*Մեծ.* էջ 20) կամ Մուղան (*Սամուէլ.* էջ 171) տարաւ (1), ուր Բագարատ խաբէութեամբ հաւատացնելով թէ բոլոր Վրաստանը պիտի հնազանդեցնէ եւ իսլամացնէ, թաթար զօրք առաւ եւ եկաւ Վրաստան: Ան գաղտնի լուր ղրկեց իր Գորգի, Կոստանդին եւ Դաւիթ որդիներուն որ ծածուկ գալով զինքը ազատեն եւ ինքն ալ թաթար զօրքը առաջնորդեց կիրճերու մէջ, ուր անոնցմէ 12,000ը ջարդուեցան իր որդիներէն, եւ ինքն խոյս տուաւ Վրաստանի լեռները (*Մեծ.* 20. *Ազգապատում* 1972 եւ վերը, 77), եւ անկանոն արձակազէնի կռիւներով յաջողեցաւ 1395ին բնաջնջել Թիմուրի բանակը:

Բագարատ Ե.ի յաջորդեց իր անդրանիկ որդին Գորգի (1395—1406) որուն իշխանութեան ժամանակամիջոցին, 1402ին Լէնկ Թիմուր անշուշտ պատժելու համար Վրաստանը, Եըլտրըմ Պայազիտի դէմ գացած ատեն, *«եկն նախ ի վերայ տանն Վրաց գերել եւ կորուսանել զնոսա: Իսկ թագաւորն Վրաց Գորգի եւ երկու եղբարք Կոստանդին եւ Դաւիթ իմացեալ զչարութիւն նորա վաղվաղակի զօրաժողով եղեն, եւ զամենայն ազգն Վրաց եւ Հայոց յամրոցս արկեալ պահէին եւ ինքեանք զնեղ եւ զկածան տեղիսն ունէին: Եւ բանսարկուն սատանայ մտեալ յերեք չարազատ որդիք անօրէնք եւ անաստուածք՝ գաղտագողի բաժանեալ ի թագաւորէն՝ գնացին առ չար բռնաւորն, եւ ցուցին զճանապարհս մտանելոյ ի մայրիս նոցա։ Եւ յղեաց զօրս բազումս ի վերին կողմանէ, եւ ըմբռնեալ առին զամենայն բազմութիւն քրիստոնէական գնդին, զմեծամեծսն սպանանէին եւ զփոքունսն գերի առեալ տանէին աւելի քան* զ60,000 *ոգի*:

*Իսկ թագաւորն Գորգի մազապուրծ եղեալ՝* 100 *ոգի առեալ ընդ ինքեան եւ ի մէջ զօրացն մըտեալ յիշելով զանունն Յիսուսի Քրիստոսի զբազումս կոտորեցին, եւ ազատեալ գնացին ի տեղի ամրականին: Եւ նոքա սրով եւ հրով զամենայն աշխարհն Վրաց կործանեցին, զեկեղեցիսն քակեցին, զգերիսն առեալ հասուցին յաշխարհս մեր մերկ եւ բոկիկ, քաղցած եւ ծարաւած, ամէն հինգ Զաղաթայ* 20 *գերի ունելով:*

*Եւ բազում այն էր որ ի ճանապարհին մեռանէին, եւ նոքա քար առեալ ջախջախէին զգլուխս նոցա զի մի կենդանի մնասցեն եւ ինքեանք թողեալ գնացին ի ճանապարհն իւրեանց: Զոր տեսաք աչօք մերովք եւ լուաք եւ վայ եւ եղուկն բարձրացաւ ի վերայ քրիստոնէից ազգիս. տեսանէաք զգերիսն եւ օգնել ոչ կարէաք, այլ հեղձամղձուկ լեալ՝ ողբով եւ լալով խոյս տուեալ փախչէաք ի նոցանէ:*

*Եւ առեալ գնացին ի Խորասան:» (Թովմա Մեծոբեցի,* էջ 66—67, հմմտ. *Ազգապատում* 2034 (2):

Հաւանօրէն այս միջոցին է սպանուած Վրաց Կոստանդին թագաւորը որ յաջորդած էր Գորգիի։ (Տես. Տաշեան *Մայր Ցուցակ.* էջ 188—189):

Այսպէս. ականատեսի վկայութեամբ կը հաստատուի թէ Վրաստան մեծ աղէտի մը ենթարկուած է նոյնիսկ մատնութեամբ թագաւորին եղբայրներուն:

Լէնկ Թիմուրի մահէն (1405) եւ Ահմէտ Պահատուրի սպանութենէն (1409) վերջ խաղաղեցաւ պահ մը Հայաստան, Վրաստան եւ Աղուանից աշխարհը (*Մեծ.* 73) եւ վերաշինուեցաւ երկիրը, *«մարդիկ ի յաւեր ոչ բնակէին, այլ ի շէնս բնակէին եւ թէպէտ հարկապահանջութիւնն բազում էր, սակայն խաղաղութիւն առանց խռովութեան էր։ Եւ ծաղկեալ էին եկեղեցիք քահանայիւք եւ սարկաւագօք»* (*Մեծոբեցի* էջ 73):

(1) *Երուսաղէմի Ձեռագրաց մատենադարանին թիւ* 1801 *գրչագիրին յիշատակարաններէն մին կ'ըսէ թէ* «ի թվին Հայոց ՊԼԵ (=1386) Լանկ Թիմուրն եկն ի Թաւրէզ եւ ի Նախիջուան եւ առեալ ի միում աւուր Կարս, մինչեւ ի Կարբի, եւ ի Բջնի, ի Գառնի, ի Սուրմարի, ի Կողբ եւ անտի գնաց ի Վրաց տունն եւ արար Զաղայ զՏփղիս քաղաք եւ կալեալ զթագաւորն Բագրատ, տաճկացոյց եւ գնացեալ ձմեռեաց ի Մուղան եւ ի գալ տարոյն, յաւուրս Աւագ Զատկի, ել ի Սիւնիս եւ սփռեալ տարածեցաւ եւ գնաց հետ թուրքմանին մինչեւ ի Համբայ ջուրն...»:

(2) *Այս երկրորդ արշաւանքին վրայ ալ խօսած է Երուսաղէմի թ.* 1801 *վերոգրեալ ձեռագիրին յիշատակարանը, մէկ երկու տողով։*

Այս շրջանին է որ բռնութեամբ ուրացողները իրենց հայրենի կրօնին կը դառնային (*նոյն.*)։

Այս խաղաղութիւնը երկար չտեւեց ինչպէս Հայաստանի նոյնպէս Վրաստանի մէջ, ուր մասնաւոր դէպք մը մեծ հետեւանք ունեցաւ, եւ Ալխցխա կոտորուեցաւ 1410ին։

Ալխցխայի մէջ հետզհետէ ծաւալած էին պարսիկները, զի *«յիմար իշխան որդի Արղբուղին Իվանէի, բարձրացեալ էր զնոսա»* այնքան որ քրիստոնեաները նախանձիլ սկսան էին։

Վրացի եւ Հայ երիտասարդներու խումբ մը օր մը խոզի ոսկորներ կը նետէ անոնց մզկիթը, որուն վրայ պարսիկները վրէժխնդիր ըլլալու համար Գարա Եուսուֆի հրաւէր կ'ընեն եւ քաղաքը անոր կը մատնեն, եւ *«կատաղի եւ անողորմ»* կոտորածի կ'ենթարկեն։

Ոչ միայն *«իբրեւ զգառն անմեղ զենուին ի վեր քան զհամար եւ զթիւ մտաց մարդկան»* այլեւ *«գերի առեալ զկին եւ զտղայ... զկարգաւոր եւ զաշխարհական" (Մեծ.* էջ 77*)*, ծանր փրկանքներով ազատութիւն կուտային, որով կամաւորապէս կը թալուէին քրիստոնեաներ, *«կանայք զզարդարանս իւրեանց կողոպտէին»* եւ *«ում աշխարհիկ եւ ում տաւարիկ կայր՝ տային եւ գնէին»*։

Այսպէս մեծ թուով գերիներ ազատուեցան։

Այսպէս անօրէն արարքները ըստ Մեծոփեցիի պատճառ կ'ըլլան վերահաս պատիժի մը, եւ Եուսուֆ 1416ին կ'երթայ Տիարպէքիր եւ Դամասկոս *«իբրեւ աղուէս եւ (իբրեւ) ջղջկան տկար»* ետ կը դառնայ, վասնզի իր որդին որ *«ղան ետեալ էր ի վերայ ամենայն աշխարհին»* մեռաւ (*Մեծ.* 78. հմմտ. *Ազգապատում*, էջ 2044)։

Իսկ Իսկենտէրի կատարած արիւնահեղ եւ կատաղի պատերազմներուն միջոցին նոյնպէս Վրաստան ոտնակոխ եղաւ, բայց կրցաւ պահել իր անկախութիւնը, թէեւ տկարացած։

Երկրին բոլորովին քայքայման պատճառ եղաւ Աղեքսանդր թագաւորին (1418—1444 ✝) անխորհուրդ քայլերը։

Ան նախ Հայերը դառնացուց եւ ապա նոյնիսկ Վրաստանի միութիւնը եղծանեց։

Արդէն տեսնուեցաւ թէ ինչպէս ան անարժան թագաւորը, 1438ին թունաւորեց Պեղգինը՝ որդին Սմբատ Օրբէլեանի (տես. վերը, էջ 364) որ իր աներն էր (*Մեծ.* էջ 117)։ Պեղգին. 60,000 տուն Հայերով Սիւնիքէն փախած եւ Վրաստան ապաստանած էր՝ Շահրուխէն փախչելով։ Աղեքսանդր անոր տուած էր Լօռին, ուր իր շուրջը կը հաւաքուէին բազմաթիւ Հայեր։ Աղեքսանդր *«արեանարբու գազանն եւ անգութն»*, սա անտեղի կասկածով թէ *«մի՛ հայք առ նա ժողովեսցեն եւ աւերումն լինի կողման Վրաց"* կը թունաւորէ Օրբէլեան իշխանը (*Թովմա Մեծոփեցի*, 117—118), ինչ որ անշուշտ մեծ վնասութիւն եւ զարշանք կը պատճառէ Հայոց։ (Տես. վերը, էջ 79 եւ 364*)* եւ այս կերպով Ալեքսանդր կը զրկուի Հայոց անձնուէր գործակցութենէն։

Շուտով վերահաս պատիժը կը կրէ, վասնզի 1440ին *«Թագաւորն Թաւրիզու եւ բռնաւոր իշխանն Ջանանշահ անուն զօր ժողովեաց, գունդս կազմեաց, եւ զչար առաջնորդն Արտաւիլու եւ զամենայն* դասի եւ զմուտառիս *առեալ եկն ի վերայ տանն Վրաց, եւ բազում անգամ դեսպան առաքեաց գալ նմա ի հնազանդութիւն եւ զսովորական հարկն տալ նմա։ Եւ նա (Վրաց Թագաւորը՝ Ալէքսան) ոչ կամեցաւ, այլ խստութեամբ պատասխանեալ ընդդէմ նորա»։ (Մեծ.* էջ 120*)*։

Զատկի օրը (1440 Մարտ 27), յանկարծակի Ջհանշահ կը յարձակի եւ կ'սպաննէ ու կը գերէ, Շամշուլտէն կը պաշարէ 40 օր, եւ խաբէութեամբ կ'առնէ։ 1,664 մարդ կը ջարդուի եւ 9,400 գերի կ'առնուի եւ ուրիշ անգթութիւններ կը գործուին, (*Մեծ.* էջ 120)։

Պատմագիրը կ'ըսէ թէ գերիները մինչեւ *«ի Մար եւ ի Խորասան եւ ի Պաղտատ եւ ի Տաճկաստան եւ յամենայն երկիր ցրուեալ ցնդեցան» (Մեծ.* էջ 121*)*։

Թիֆլիսն ալ գրաւեց եւ քարուքանդ ըրաւ *(Մեծ.* էջ 122*)*, *«մինչ զի յահէ եւ յերկիւղէ նոցա սարսէր եւ դողայր ամենայն լեռնականք եւ դաշտականք, եւ սուր ի ձեռին արիք եւ անարիք եւ ջոկապանք մտանէին ի մայրիսն եւ ի ծերպս եւ ի ծակս վիմաց։ Եւ զկին եւ զորդիս նոցա հանեալ անտի՝ գերի վարէին ի բազում աւուրս։ Եւ անարի եւ որովայնամոլ, արբեցող եւ լապաստակակեր ազգն Վրաց, որ հանապազ ի գիներբուս նստեալ պարծէին յաղթող լինել ի վերայ ամենայն ազգաց, նետիւ միով մարդ մի խոցել ոչ կարացին, այլ տեսեալ զոմանս ի մէջ պրակի՝ գաղտագողի առ միմեանս ահիւ եւ դողութեամբ ասէին «ահա Թուրքման, ահա՛ Թուրքման»։ Եւ ահա ինքեանք մազապուրծ եղեալ՝ զորդիս իւրեանց ի ձեռս անօրինացն մատնէին։ Եւ ուստի մեք հանապազ յոյս ի Վրացիսն ունելով պարծէաք ի մէջ անօրինաց, յայմանէ յուսահատեալ՝ առաջի անօրինաց ափիբերան եղաք։» (Նոյն.)*։

Այս իրողութիւնը կը հաստատէ երբեմն Վանի Ս. Նշան եկեղեցին պահուած Յովհաննէս կրօնաւորի ժամանակագրութիւնը, իր գրած Աւետարանին սկիզբը։ Ան կը գրէ թէ *«ի ՊՁԹ (=*1440*) Թուականին Ջհանշայ ամիրզէն ի Վրաց տուն մտաւ եւ շատ աւեր արար եւ զեկեղեցիքն քակեց եւ քան զտասն երկու հազար աւելի ի հայոցս, զորս սպան եւ զորս գերի վարեաց»* (*Դիւան Հայոց Պատմ. Ժ.* էջ 17)։

Ալեքսանդրի երկրորդ յիմարութիւնը եղաւ 1442ին (1), Վրաստանը իր երեք որդիներուն միջեւ բաժնելը։ Այսպէս, ստեղծուեցաւ, փոխանակ միակ Վրաստանի, անոր կազմալուծմամբ երեք թագաւորութիւններ, Կախեթու, Քարտալինիայի եւ Գուրիոյ։

Այս բաժանումը բոլորովին տկարացուց Վրաստանը, եւ Թուրքերն ու Պարսիկները ԺԵ. դարէն սկսեալ նեղեցին Վրացիները եւ զայն անընդհատ հարուածեցին մինչեւ որ բոլորովին տկարացուցին եւ

(1) Ըստ *Հ. Մանուէլ Քաջունիի 1424ին (տես.* Աշխարհագրութիւն Հին եւ Նոր Հայաստանեայց *Վենետիկ.* 1857. էջ 192*)*։

ոյնիսկ անոր քաղաքական անկախութիւնը ջնջեցին։

Տկար պզտիկ իշխանութիւններու վերածուած Վրաստանի քաղաքակրթական չափանիշն ալ ինկաւ:

Վրաստանի անկումը եւ կործանումը, ինչպէս Մեծոբեցի մատնանիշ ըրած է, մեծ վնասութիւն պատճառած է Հայոց, որոնք Սելջուկեանց օրերէն սկսեալ Վրաց վրայ մեծ յոյսեր դրած էին:

Վրաստանի բաժանումէն վերջ Հայերը Թիֆլիս նստող թագաւորները միայն կը ճանչնան Վրաստանի վեհապետներ եւ ըստ այնմ ալ կը յիշատակեն (1):

## Զ.

## ԹՈՒՐՔ, ՊԱՐՍԻԿ ԵՒ ՌՈՒՍ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1467ԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

Այս շրջանը որ կրնանք կոչել իրաւամբ անտէրնչութեան ժամանակամիջոց, ներկայացուած է արդէն (վերը, էջ 81—88), այնպէս որ կրկին պիտի չխօսիմ Հայոց պատմութեան այս ամենամռայլ շըրջանին վրայ:

Թիմուրի աշխարհակալութեանց, ինչպէս նաեւ Թուրքմէն ցեղերու արշաւանքներուն եւ ասպատակութիւններուն, եւ Գարագոյունլու եւ Ագգոյունլու իշխաններու շրջաններուն կատարուած կոտորածներուն յաջորդող թուրք եւ պարսիկ պատերազմները, որոնք մօտաւորապէս երկուքուկէս դար տեւեցին, Հայաստանի բնակչութիւնը անօսրացուցին եւ երկիրը տնտեսապէս քայքայեցին, վասնզի այդ կռիւներու շրջանին կատարուեցան աւերածութիւններ, առեւտրական ճանապարհները փակուեցան, Օսմանցիք մանկաժողովներ կատարեցին եւ Պարսիկները տարագրութիւններ:

Տիրող տնտեսական ու քաղաքական ծանր կացութեան իբր հետեւանք Հայ բնակչութեան մէկ մասը թողուց Հայաստանը եւ գաղթեց հեռաւոր վայրեր:

ԺԵ—ԺԶ. դարերուն Հայաստանի ամէնէն արգաւանդ մասերուն բնակչութիւնը, ինչպէս Եւրոպացի կարգ մը ուղեւորներ կը հաստատեն, չափազանց պակսած էր, դաշտերը անմշակ մնացած էին եւ ամէն կողմ կը տեսնուէին աւերուած գիւղեր, խոպան դարձած այգիներ ու արտեր (*Հայ ժողովրդի պատմություն.* 1943 Երեւան էջ 239):

Հայաստանի բնակչութեան բաղկացութիւնը հիմնական փոփոխութեան ենթարկուած էր եւ անոր զուտ հայկական նկարագիրը որ ԺԱ. դարէն սկսեալ արդէն փոխուիլ սկսած էր բոլորովին այլափոխուած էր, վասնզի Հայաստան հաստատուած էին բազմաթիւ Թուրքեր, Պարսիկներ եւ Քուրդեր։

Ո՛չ Օսմ. կայսրութիւնը եւ ո՛չ Պարսկաստան կրցած էին Հայաստանի մէջ հաստատել կանոնաւոր վարչութիւն մը, որով բոլորովին ողբալի վիճակի մը մատնուած էր արդէն թշուառ երկիրը։

Օսմ. Կայսրութիւնը զինուորական կազմով, ոյժի վրայ հիմնուած իշխանութիւն մըն էր եւ աւելի կեդրոնացման կը միտէր, իսկ Պարսկաստան զինուորականապէս աւելի տկար, կեդրոնական զօրաւոր կառավարութենէ մը զուրկ էր: Հայաստան երկու պետութիւններու համար ալ ծայրագաւառ մըն էր: Հոն Հայերու անկախութեան վերջին հետքերը թէեւ ջընջուած էին, բայց մի քանի լեռնային գաւառներու մէջ կը մնային շրջաններ, որոնք տակաւին կատարելապէս նուաճուած չէին եւ ինչպէս ըսուած է (տես. վերը, էջ 84) անոնք թէեւ կը ճանչնային Օսմ. Սուլթաններու կամ Իրանի Շահնշահներու գերիշխանութիւնը բայց կը պահէին տեղական մասնաւոր առանձնաշնորհներ եւ կը կառավարուէին բնիկ ժառանգական իշխողներու կողմէն:

Թէ՛ Պարսկաստանի եւ թէ՛ Թուրքիոյ մէջ այդ աննուան շրջանները, իրարմէ տարբեր վիճակներ ունէին, բայց առհասարակ ամէնքն ալ տեղացի եւ ժառանգական պետէ մը կը կառավարուէին: Պարսկաստանի մէջ ասոնց ամէնէն նշանաւորը Վրաստանն էր, զոր կը կառավարէր Վրաց թագաւորական տունը։

Կային նաեւ աւելի փոքր ինքնավար շրջաններ, եւ կիսավայրենի վիճակի մէջ ապրող մի քանի ցեղեր (Պախտիար, Քուրդ եւ այլն) որոնք իրենց ցեղապետներու հրամանին տակ կ'ապրէին, առանց պետութեան ընդհանուր օրէնքներուն հնազանդելու:

Յետոյ կային նաեւ Հայ մելիքութիւնները, մի քանի տեղերու մէջ, որոնք պարզ հողատիրութիւններ էին, քիչ մը ընդարձակուած իրաւունքներով:

(1) *Կ'երեւի թէ Ալեքսանդրի որդին Գորգի յաջորդած է իր հօրը 1442ին եւ թագաւորած է մինչեւ 1460ական թուականները։ Աղջոյ վանքին մէջ 1447ին գրուած Աւետարանի մը և 1459ի Այրիվանուց մէջ գրուած Տարեգիրքի մը յիշատակարաններուն մէջ կը յիշատակուի այս թագաւորը (տես.* Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի Մխիթարեանց, *Ա. էջ* 687 *եւ* Խաղբակեանք, *Բ. էջ* 126 *եւ Գ. էջ* 141—144)։